ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

3

ՄԱՐՏ

ԵՐԵՎԱՆ 1957

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 3
ՄԱՐՏ
1957 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ XXXIV ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



# ԱՐՄԱՏԱՊԵՍ ԲԱՐԵԼԱՎԵԼ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ

*Լիբերալ նարոդնիկության օրգան «Նեդելյա» թերթը 1893 թվականին գրում էր՝ որպեսզի Ռուսաստանը գրագետ դառնա, հարկավոր է առնվազն 250 տարի։ Այն ժամանակ երկրի մանուկների միայն կեսն էր տեղավորված տարրական և մեկ քսաներորդը՝ միջնակարգ դպրոցներում։*

*Ռուսաստանի բոլոր ժողովուրդները հեծում էին ցարիզմի գարշապարի տակ, տանջամահ լինում սարկության ու խավարի մեջ։ Հազար անգամ ճիշտ էր մեծ ռևոլյուցիոն-դեմոկրատ Մ. Նալբանդյանը, երբ գրեթե մեկ դար առաջ ասում էր. «ստրկության մեջ, աղքատության մեջ չկա և չէ կարող լինել լուսավորություն»։*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան չորս տասնամյակ առաջ մեկընդմիշտ վերջ դրեց մեր երկրի ժողովուրդների դարավոր ստրկությանը և նրանց առաջ տնտեսական ու կուլտուրական բարգավաճման նոր, փայլուն հեռանկարներ բաց արեց։ Միլիոնավոր մասսաների կուլտուրական մակարդակի բարձրացման խնդիրը դարձավ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ամենօրյա հոգատարության առարկան։ Աշխատավոր մարդը դեն շպրտելով հարստահարիչների ծանր լուծը, շտկեց իր մեջքը և սկսեց տիտանաքայլ առաջ ընթանալ կոմունիզմի ճանապարհով։ Ռուսաստանը գրագետ դարձնելու համար 250 տարի սպասելու հարկ չեղավ։ Սովետական կարգերի պայմաններում այդ պատմական խնդիրը լուծվեց մի երկու տասնամյակների ընթացքում։ Ինչպես կասեր սովետահայ բանաստեղծ Համո Սահյանը.*

> *«Հողմերի միջով՝ մենք հազար տարվա*
> *Ճանապարհ անցանք քառասուն տարում»։*

*Այդ պատմականորեն կարճ ժամանակամիջոցում մեր անծայրածիր Հայրենիքի բոլոր անկյուններում կառուցվեցին ոչ միայն անհամար գործարաններ, ֆաբրիկաներ, էլեկտրակայաններ, այլև դպրոցներ, ակումբներ և կուլտուրական այլ հիմնարկներ։ Բավական է ասել, որ սովետական տարիներին սովորողների ընդհանուր թիվը ավելացավ 3,4 անգամ, իսկ միջնակարգ դըպրոցներում՝ 26 անգամ։ Այսօր Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի ամեն երեք բնակչից մեկը սովորում է։*

*Մեր երկրում կատարված կուլտուրական ռևոլյուցիայի շնորհիվ մեծ տեղաշարժեր եղան նաև հրատարակչական գործի բնագավառում։*

*Վերջերս Մոսկվայում վիճակագրական հրատարակչության լույս ընծայած «Կուլտուրական շինարարությունը ՍՍՌՄ-ում» ժողովածուի մեջ թվեր են բերված, որոնք պարզ պատկերացում են տալիս այն վիթխարի թռիչքի*

մասին, որ կատարել է մեր Հայրենիքը իր գոյության չորս տասնամյակների պատմության ընթացքում։ Մեզ մոտ հսկայական չափով ավելացել են գրքերի տիրաժները։ Այսպես, օրինակ, եթե 1923 թվականին հրատարակված գրքերի տիրաժը կազմում էր 84,7 միլիոն օրինակ, ապա 1955 թվականին այն հասավ 1015 միլիոն օրինակի։ Թերթերի տարեկան տիրաժը 1927 թվականի համեմատությամբ ավելացավ ավելի քան հինգ անգամ, երկու միլիարդից հասնելով 10,3 միլիարդի։

Սովետական տարիներին հրատարակչության և մամուլի զարգացման ասպարեզում մեծ փոփոխություններ տեղի ունեցան նաև մեր ռեսպուբլիկայում։ Անցած երեք ու կես տասնամյակների ընթացքում Հայկական ՍՍՌ-ում հրատարակվել է 18 935 անուն գիրք և բրոշյուր 106,374 հազար ընդհանուր տիրաժով։ Թերթերի և ամսագրերի տարեկան տիրաժը այժմ կազմում է 243,9 հազար օրինակ։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը վերջին տարիներին մի շարք կոնկրետ միջոցներ ձեռնարկեցին ռեսպուբլիկայում հրատարակչության ու մամուլի արագ զարգացման ուղղությամբ։ Մեզ մոտ ստեղծվեցին մի շարք նոր թերթեր ու ամսագրեր, որոնց թվում՝ աշխարհում առաջին քրդական թերթը՝ «Ռեա թազա»-ն, «Ոզնի», «Հայաստանի կոլտնտեսական», «Սովետական արվեստ», «Առողջապահություն» ամսագրերը և այլն։

Վերջին տարիներին զգալիորեն ավելացավ քաղաքական, գեղարվեստական, տեխնիկական, գյուղատնտեսական գրականության թողարկման ծավալը։ Հայաստանի պետական հրատարակչությունը մասսայական տիրաժով հրատարակեց հայերեն լեզվով մարքսիզմի-լենինիզմի կլասիկների առանձին երկերը, «ՍՄԿՊ-ն բանաձևերում» ժողովածուները, պարտիայի XX համագումարի նյութերը։ Վերահրատարակվեցին հայ գրականության մի շարք կլասիկների՝ Րաֆֆու, Նար-Դոսի, Ռ. Պատկանյանի, Հ. Պարոնյանի, Հով. Թումանյանի, Ավ. Իսահակյանի, Վ. Տերյանի և այլոց լավագույն երկերը։ Վերահրատարակվեցին նաև սովետահայ ականավոր գրողներ Ե. Չարենցի և Ա. Բակունցի ժողովածուները։ Սովետահայ արձակն ու պոեզիան հարստացան ժամանակակից գրողների և բանաստեղծների մի շարք հաջողված գործերով։ Զգալի աշխատանք է կատարված հայ ընթերցողներին մայրենի լեզվով ռուս կլասիկ և ժամանակակից, ինչպես նաև արևմտաեվրոպական, ժողովրդա-դեմոկրատական երկրների գրողների լավագույն երկերին ծանոթացնելու ուղղությամբ։

Արժանի է ուշադրության մեր գրականագետների, պատմաբանների, տնտեսագետների, փիլիսոփաների ստեղծագործական ակտիվությունը։

Սակայն, չնայած այս հաջողություններին, մեզ մոտ հրատարակչական գործի վիճակը անբավարար է։ Մեր ռեսպուբլիկայի հրատարակչության արտադրանքը շատ է ետ մնում նրա խոշոր տեխնիկական բազայից։ Պետք է ասել, որ մեր հրատարակչությունները, և ամենից առաջ նրանցից ամենամեծը՝ Հայպետհրատը, դեռ չեն կարողանում լրիվ օգտագործել իրենց տրված բոլոր հնարավորությունները։

Մեզ մոտ տարեց տարի աճում ու ավելանում են հրատարակվող գրքերի քանակը, մամուլները, բարելավվում է տպագրական տեխնիկան, ձևավորումը, բայց գրական արտադրանքի որակը դեռ մեզ չի բավարարում։



Լույս տեսնող գրքերի զգալի մասը գիտական, քաղաքական և գեղարվեստական իր ցածրորակության հետևանքով պատշաճ տարածում չի գտնում ընթերցողների լայն շրջաններում։ Քիչ չեն այն գրքերը, որոնք լույս աշխարհ են գալիս իրենց վրա կրելով թե հեղինակների և թե հրատարակչությունների անփույթ, անորակ և երբեմն էլ ուղղակի անպատասխանատու գործելակերպի կնիքը։

Մեծ է հրատարակչական աշխատողների պատասխանատվությունը ժողովրդի առջև։ Նրանք են կոչված խնամքով և բանիմաց սրտացավությամբ մարմնավորելու սովետական վարպետների հոյակապ մտահղացումները, մեր առաջավորների ստեղծարար իղձերն ու ազնիվ ձգտումները։ Չկա ավելի պատասխանատու բան, քան միլիոնավոր մարդկանց գաղափարների և աշխարհզգացման կոմունիստական ձևավորման պատվավոր գործը, որի հատու և անփոխարինելի զենքերը կոփվում են հրատարակչական դարբնոցներում։

Մեր ստեղծագործ ժողովրդի հոգեկան սննդի անսպառ շտեմարաններն են մեր հրատարակչությունները, որոնց աշխատողների ջանքերի պտուղները միշտ էլ թանկ են գնահատվում ընթերցող զանգվածների, Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության կողմից։

Արդյո՞ք բոլոր հրատարակչություններում ամենքն են գիտակցում այդ վիթխարի պատասխանատվությունը։ Արդյո՞ք բոլոր հեղինակները, խմբագիրները և հրատարակիչներն են խորը կերպով հարգում և սիրում իրենց գործը՝ որպես համաժողովրդական պարտականություն։ Դժբախտաբար՝ ո՛չ։

Մեր ռեսպուբլիկայի հրատարակչությունների ներկա վիճակը վկայում է այն մասին, որ տպագրական գործի հույժ պատասխանատու ասպարեզում հաճախ տեղ են գտնում անպատասխանատու, անբարեխիղճ և մանավանդ՝ ապաշնորհ մարդիկ, որոնց գրավոր խոսքի տնայնագործական արդյունքները թե նյութական և թե մանավանդ գաղափարական առումով, լուրջ վնաս են հասցնում մեր ընդհանուր գործին։ Ակներև է, որ մեր հրատարակչություններում անողոք պայքար չի մղվում գրական խոտանի դեմ, որի պատճառով լույս աշխարհ են գալիս գաղափարապես ցածր մակարդակի, գեղարվեստական տեսակետից անմշակ վեպեր, պոեմներ ու բանաստեղծություններ, մակերեսորեն գրված գիտական աշխատություններ։ Եվ պատահական չէ, որ այդ ցածրորակ գործերը, որոնց հրատարակման վրա հսկայական գումարներ են ծախսվում, քիչ սնունդ են տալիս ընթերցողի սրտին ու մտքին, չեն նպաստում նրա քաղաքական-կուլտուրական զարգացմանը։

Վերջին տարիներում հրատարակված առանձին գործերում տեղ են գտել գաղափարական սխալներ, պատմական փաստերի աղավաղումներ, մեր իրականության միակողմանի վերարտադրման փաստեր։

Բնական է, որ իդեոլոգիական մեր աշխատանքի այդ անփոխարինելի զինանոցի՝ հրատարակչական գործի նման վիճակը չէր կարող անհանգստություն չպատճառել։ Վերջերս ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեն քննության առավ Հայպետհրատի գործունեությունը, որը գտավ անբավարար։ Հայպետհրատի ղեկավարությունը չապահովելու, հրատարակվող գրականության նկատմամբ գաղափարական և գեղարվեստական առումով թույլ հսկողություն կիրառելու և հոնորարի ֆոնդի ծախսման գործում իր պաշտոնը ի չարը գործադրելու

համար՝ Կենտրոնական Կոմիտեի բյուրոն պարտիական տույժի ենթարկելով
Հայպետհրատի դիրեկտոր Ա. Ղազարյանին՝ հանեց նրան իր պաշտոնից:

Մեր հրատարակչությունների գործունեության ուսումնասիրությունը ցույց
է տալիս, որ նախ և առաջ շատ սահմանափակ է լույս ընծայվող գրականու-
թյան թեմատիկան: Հատկապես քիչ աշխատանք է կատարվում ռեսպուբլի-
կայի ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի ակտուալ հարցերին, ար-
դյունաբերության ու գյուղատնտեսության առաջավոր փորձի ընդհանրաց-
մանը, պարտիական կազմակերպությունների աշխատանքին, երիտասարդու-
թյան դաստիարակությանը նվիրված գրքերի ու բրոշյուրների հրատարակման
ուղղությամբ: Բավական է ասել, որ արդյունաբերության ու գյուղատնտեսու-
թյան առաջավորների փորձի մասին վերջին երեք տարում Հայպետհրատը
լույս է ընծայել ընդամենը 5—6 բրոշյուր, որոնցից երկուսը՝ միևնույն կոլ-
տնտեսության վերաբերյալ:

Հրատարակչական պլանները կազմվել են ինքնահոսով, առանց նախա-
պատրաստական և մտածված աշխատանքի: Ահա թե ինչու այդ պլանները
հաճախ զուրկ են լինում նպատակասլացությունից, լրիվ չեն արտահայտում
կյանքի պահանջները: Օրինակ, Հայպետհրատի ընթացիկ տարվա պլանի գե-
ղարվեստական գրականության բաժնում նախատեսված էր մոտ 15 վեպ,
որոնցից 12-ը միևնույն թեմատիկան ունեին: Իհարկե, թեմաների կրկնու-
թյունը ինքնին սարսափելի չէ: Միևնույն թեմայի մասին կարելի է գրել և
հրատարակել մի շարք ոչ միայն գեղարվեստական, այլև քաղաքական ու այլ
գրքեր: Իսկ ինչպե՞ս վարվել, երբ ոչ միայն թեման է նույնը, այլև բովանդա-
կությունը, փաստերը, նույնիսկ շարադրման ձևը: Ռուսական առաջին ռևոլյու-
ցիայի 50-ամյակի կապակցությամբ մեզ մոտ երկու տասնյակ ուսումնասի-
րություններ հրատարակվեցին վերջին ժամանակներս: Այդ գրքերի մի մասի
տիրաժները չեն սպառվում: Եվ դա գլխավորապես այն պատճառով, որ այդ
թեմայով լույս տեսած շատ գրքեր գրեթե իրարից չեն զանազանվում: Արդյոք
լավ չէ՞ր լինի հրատարակել քիչ, բայց ավելի բարձր որակով աշխատություն-
ներ, իսկական գիտական երկեր:

Իսկ ո՞րն է այն գլխավոր պատճառը, որի հետևանքով մեր ռեսպուբլի-
կայում հաճախ հրատարակվում են հետաքրքրազուրկ, գորշ և անընթերցելի
գրքեր ու գրքույկներ: Այդ պատճառը մեկն է. այն, որ հրատարակչություն-
ների ղեկավարները, բաժինների վարիչները և խմբագիրները աններելի
հանդուրժողականություն և անսկզբունքայնություն են հանդես բերում ձե-
ռագրերի ընդունման և մշակման ընթացքում: Նրանք հեղինակներից չեն պա-
հանջում բարձր գաղափարայնություն, շարադրանքի և ոճի գրավչություն,
լեզվական վարպետություն և մշակվող թեմայի լուրջ իմացություն: Հրատա-
րակչությունների պատասխանատու ընկերները հաճախ անտեսում են այն, որ
տպագրության ներկայացվող երկը իր գաղափարական, գիտական և գեղար-
վեստական մակարդակով պետք է լիովին համապատասխանի սոցիալիստա-
կան մեր առաջընթացի պահանջներին: Դեռ ավելին, այն պետք է առաջ
անցնի այդ պահանջների այսօրվա աստիճանից և մեզ տա վաղվա,
առավել պայծառ օրվա վառ պատկերները:

Փոխանակ ձեռագրերի վերամշակման աշխատանքը դարձնելու ողջ հրա-
տարակչական գործի գլխավոր առանցքը, Հայպետհրատի ղեկավարները փաս-



տորեն այդ գործին մոտեցել են աշտառ, մակերեսորեն և նույնիսկ՝ յուրա-
յիններին սոլիդ վաստակ ապահովելու տեսանկյունից: Էլ չենք խոսում այն
բյուրոկրատական քաշքշուկների և ոչ պետական վերաբերմունքի մասին, որը
բնորոշ է Հայպետհրատի գործունեության համար ձեռագրերի մշակման բնա-
գավառում: Ասենք ավելի պարզ, որ Հայպետհրատի ստեղծագործական դաշ-
տում բավականին շատ մոլախոտեր են սնուցվել հենց ղեկավարության կողմ-
նակալ և խոտելի ջանքերով, հրատարակչության պարտիական կազմակեր-
պության և Հայպոլիգրաֆհրատի ղեկավարների թողտվությամբ: Ուստի, պա-
տահական չէ, որ հրատարակչական գործում աշխատող պարտիական ընկեր-
ների նշանակալի մասը հանդես չի գալիս մերկացնելու հրատարակչական
գործում տեղ գտած վատառողջ ընտանեկանության, համապարտ երաշխա-
վորության արգահատելի պրակտիկան:

Հայտնի է, որ մեր ռեսպուբլիկայի պոլիգրաֆ բազան շատ է ընդարձակ-
վել: Մենք ունենք այժմ լավ պոլիգրաֆ մասնագետներ: Բայց այդ գործի ղե-
կավարները աչք են փակում այն իրողության հանդեպ, որ շատ վատ է օգ-
տագործվում տպարանների տեխնիկական կարողությունը, ընկած է աշխա-
տանքի կարգապահությունը մի շարք տպարաններում, որովհետև չկա պատ-
շաճ հսկողություն, մի շարք գործեր (ամսագրեր, դասագրքեր, բրոշյուրներ
և այլն) տպագրվում են անթույլատրելի վատ որակով: Միանգամայն ան-
մխիթար վիճակում է գտնվում ռեսպուբլիկայի տպարանների տառային
տնտեսությունը և տարիներով ձգձգվում է նոր, կատարելագործված տառա-
նմուշների կիրառումը: Պետք է ենթադրել, որ Պոլիգրաֆհրատի ղեկավարները
լավ գիտեն, որ համապատասխան հիմնարկներին ուղարկվող սիգնալային
նմուշահատերի և մասսայական տիրաժների որակների միջև խոշոր տարբե-
րություններ կան:

Ժամանակն է, որպեսզի Կուլտուրայի մինիստրության և Հայպոլիգրաֆ-
հրատի ղեկավարները արմատական միջոցներ ձեռք առնեն տպագրական
գործի որակը բարձրացնելու և նորագույն տեխնիկական նվաճումները կի-
րառելու հրատարակչական գործում:

Հայպետհրատի աշխատանքի ուսումնասիրությունը ցույց տվեց, որ գրա-
խոսությունների մի զգալի մասը գրված է ոչ սկզբունքային դիրքերից, ճիշտ,
օբյեկտիվ չեն գնահատում այս կամ այն ձեռագիրը: Քիչ չեն պատահում, երբ
գնահատականի չափանիշ է ծառայում ոչ թե օբյեկտիվ ճշմարտությունը, այլ
այն, թե գրախոսը ինչպիսի փոխհարաբերությունների մեջ է գտնվում հեղի-
նակի հետ: Այդ պատճառով հաճախ թույլ գրքերը դրական գնահատական են
ստանում և հրատարակվելու իրավունք ձեռք բերում:

Գրեթե նույն արատավոր պրակտիկան է տիրում խմբագրական աշխա-
տանքի կազմակերպման բնագավառում: Խմբագիրը հրատարակչության գոր-
ծում մեծ դեր ունի կատարելու, նրա աշխատանքից շատ բան է կախված:
Բայց մեր հրատարակչություններում թերագնահատված է նրա դերը, որի հե-
տևանքով հաճախ խմբագիրներ են նշանակվում այնպիսի մարդիկ, որոնք
պարզապես ընդունակ չեն այդ գործի համար: Խմբագիրը վատ է աշխատում
հեղինակի հետ, նա երբեմն ոչ միայն չի օգնում հեղինակին, այլև խանգա-
րում է նրան: Պետհրատի վերջին տարիների գրական արտադրանքի ուշադիր
քննությունը ցույց է տալիս, թե ինչքան շատ գրքեր են լույս տեսել, որոնք

կարող էին մեծապես շահել, չունենալ թերությունների մի զգալի մասը, եթե նրանք բանիմաց և հոգատար խմբագրի գրչին արժանանային:

Հայտնի է, որ մեր հրատարակչական արտադրանքի մի զգալի մասը կազմում են թարգմանությունները: Անշուշտ երկար տարիների ընթացքում մեզ մոտ աճել են թարգմանիչների բարձրորակ կադրեր: Բանն այն է, որ այդ կադրերի փորձը լրիվ չափով չի օգտագործվում: Ավելին, երբեմն նույնիսկ որակյալ թարգմանիչներին դժվարությամբ է հաջողվում գործ ստանալ Հայպետհրատից, որովհետև «գործը» հաճախ արդեն բաժանված է լինում մինչև հրատարակչական պլանի հաստատումը:

Չի կարելի չնշել այն, որ Հայպետհրատի ղեկավարները թարգմանությունների կարևոր գործում ունեցել են ո՛չ գործարար, ո՛չ պարտիական մոտեցում: Ո՞վ ասես, որ Հայպետհրատում թարգմանիչ չէ: Հայպետհրատի ղեկավարները թարգմանչական աշխատանքի ոլորտն են ներգրավել այդ գործի հետ որևէ առնչություն չունեցող և բացարձակորեն անկարող ու պատահական մարդկանց: Իրենց կարողության և ժամանակի մեծ մասը թարգմանության վրա են ծախսել նաև Հայպետհրատի պատասխանատու աշխատողները, որի հետևանքով նրանք զրկվել են թողարկվող գրական արտադրանքի վրա հարկ եղած հսկողություն կիրառելու հնարավորությունից:

Հայպետհրատի ղեկավարության արատավոր պրակտիկայի համար լուրջ պատասխանատվություն է կրում սկզբնական պարտիական կազմակերպությունը, որի անդամների զգալի մասը շահագրգռված նյութական նկատառումներով՝ լռությամբ է մատնել հրատարակչական գործի խոշոր բացերը, սքողել է գոյություն ունեցող սխալները:

Անհրաժեշտ է նշել, որ ՀԿՊ Կիրովյան շրջանային կոմիտեն անբավարար է զբաղվում Պետհրատի սկզբնական կազմակերպության աշխատանքով, չի օժանդակում նրա մարտունակության բարձրացման գործին:

Անշուշտ չէին լինի այս սխալներն ու թերությունները, եթե Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրությունը և նրա Պոլիգրաֆհրատարակչության վարչությունը թափանցեին Պետհրատի գործունեության մեջ, անհրաժեշտ ղեկավարություն ցույց տային նրան:

Լուրջ սխալներ ու թերություններ կան նաև Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի, Երևանի Պետական համալսարանի և Ուսմանկհրատի հրատարակչությունների վերջին տարիների արտաաշխատանքներում: Այս հրատարակչությունների վերջին տարիների արտադրանքի մեջ նույնպես քիչ չէ խոտանը, նրանք ևս հրատարակել են ցածրորակ և այլ կարգի աղավաղումներ պարունակող գրքեր, որոնց կողքից չի կարելի լռությամբ անցնել:

Հրատարակչական գործի ղեկավարների մոտ շատ թույլ է արտահայտվում ստեղծարար նախաձեռնությունը: Այսպես, օրինակ, ինչո՞ւ մեր ռեսպուբլիկայի խոշոր գիտնականները չեն գրում հանրամատչելի բրոշյուրներ լայն ընթերցողների համար: Չէ՞ որ դա մեծ չափով կնպաստի մեր կադրերի գիտական մակարդակի բարձրացմանը:

Հասունացած է տարբեր հրատարակչությունների պլանների միջև սերտ կապ հաստատելու հարցը: Պետք է վերջ տալ այն արատավոր պրակտիկային, երբ միևնույն աշխատությունը տարբեր փոփոխակներով լույս է տեսնում զանազան հրատարակչություններում:

Այս կամ այն ձեռագիրը ընդունելիս պետք է խստորեն հաշվի առնել և



այն հանգամանքը, թե գրական շուկան որքանով կարող է սպառել տվյալ երկը: Ուրեմն, տիրաժների սահմանման գործին հարկավոր է նայել պետական և միայն պետական շահերի տեսակետից: Դժբախտաբար Հայպետհրատի ընկերները նման մոտեցում միշտ հանդես չեն բերել:

Հրատարակչություններին լիակատար իրավունք է վերապահված հոնորարների սահմանման խնդրում նախ և առաջ ղեկավարվել ներկայացված աշխատության որակով, այլ ոչ թե մամուլների և տողերի քանակով: Հրատարակչությունների ղեկավարները կոչված են իրենց գործունեության մեջ գիտական և գեղարվեստական պահանջկոտությունը զուգորդելու լավագույն տնտեսվարության և բարձր ճաշակի հետ: Տվյալ պարագային հարկ չի լինի առանց ընթերցողների պահանջմունքը հաշվի առնելու, զանազան վերնագրերով վերահրատարակել այնպիսի գործեր, որոնք լուրջ անհրաժեշտություն չեն ներկայացնում:

ՍՄԿՊ XX համագումարը խնդիր դրեց բոլոր պարտիական կազմակերպությունների առաջ՝ «...բարձրացնել զգոնությունը իդեոլոգիական աշխատանքում, խստիվ պահպանել մարքսիստական թեորիայի անաղարտությունը, վճռական պայքար մղել բուրժուական իդեոլոգիայի ռեցիդիվների դեմ, ուժեղացնել հարձակումը մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների դեմ, մերկացնել նրանց կրողներին»:

Համագումարի այս պահանջի կատարման գործում մեծ դեր ունեն կատարելու մեր հրատարակչությունները, որոնք գաղափարական ներգործման կարևորագույն միջոցներից մեկն են: Գիրքը վաղուց մտել է մեր ժողովրդի կենցաղի մեջ, կենսական պահանջ դարձել միլիոնավոր մարդկանց համար:

Այդ պատմական փաստը չեն կարողանում հերքել նույնիսկ բուրժուական հասարակության ջատագովները: Նրանցից մեկը վերջերս ստիպված էր հայտարարել, որ սովետական ժողովուրդը «դարձել է անհագ ընթերցողների մի ազգ»:

Սովետական մարդկանց ընդհանուր կուլտուրական մակարդակի աննախընթաց բարձրացման շնորհիվ բարձրացել է և նրանց ճաշակը: Նրանք լույս տեսնող ամեն մի գրքի նկատմամբ ցույց են տալիս իրենց վերաբերմունքը, ցնծությամբ ընդունում են լավ գրքերը, մերժում վատերը:

Մեր հրատարակչությունների արտադրանքը մասսաների հսկողության տակ է գտնվում. մենք պարտավոր ենք նրանց լավորակ գրական արտադրանք տալ:

Պարտիական կազմակերպությունների, հրատարակչություններում աշխատող բոլոր ընկերների խնդիրն է՝ ամեն կերպ բարձրացնել հրատարակվող գրականության գիտական, գեղարվեստական ու գաղափարական մակարդակը, հրատարակել այնպիսի գրքեր, որոնք արժանանան սովետական բարձրաճաշակ ընթերցողների ջերմ գնահատականին:

# ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱՎՈՐ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆ

Մ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

Մեր երկրի տարեգրության մեջ պատմական խոշոր իրադարձություն է 1917 թվականի Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան։ Քառասուն տարի առաջ, 1917 թվականի մարտի 12-ին (փետրվարի 27-ին), Ռուսաստանի պրոլետարիատը՝ գյուղացիության հետ դաշնակցած կործանեց աշխարհի մեծագույն բռնակալություններից մեկը՝ ցարական ինքնակալությունը և անմիջական ուղի հարթեց դեպի սոցիալիստական ռևոլյուցիան։ Փետրվարյան ռևոլյուցիան դարձավ կարևորագույն էտապ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ճանապարհին։

Ցարիզմի տապալմամբ ստեղծվեց աշխարհի ամենադեմոկրատական բուրժուական ռեսպուբլիկան, որպիսին կարելի էր պատկերացնել այն ժամանակվա պայմաններում։ Ժողովրդական մասսաները, որոնք զենքի ուժով խորտակեցին Ռոմանովների 300-ամյա արյունոտ կայսրությունը, համակված էին ռևոլյուցիոն պաթոսով։ Նրանք ստեղծեցին բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների Սովետներ, որպես ռևոլյուցիոն իշխանության օրգաններ։ Սակայն Փետրվարյան ռևոլյուցիայի յուրօրինակությունը երկիշխանության մեջ էր, երբ գլուխ բարձրացրեց նաև ռուսական բուրժուազիան և օգտագործելով մենշևիկների ու էսէռների դավաճանությունը աշխատավոր մասսաների գործին ու նրանց ծառայակամ գործունեությունն իր նկատմամբ, ստեղծեց կոնտրռևոլյուցիոն ժամանակավոր կառավարություն և սկսեց քայլ առ քայլ իրեն ենթարկել ռևոլյուցիայի նվաճումները։ Բայց հաշվված էին նաև ռուսական բուրժուազիայի տիրապետության օրերը։

Փետրվարյան ռևոլյուցիայից հետո Ռուսաստանում ստեղծված բարդ իրադրության մեջ պրոլետարիատին ու աշխատավոր մասսաներին առաջնորդում էր Կոմունիստական պարտիան։ Մեծ Լենինի խորաթափանց հանճարով լուսավորվեց ռուսական ռևոլյուցիայի զարգացման հետագա ուղին և բանվորների ու գյուղացիների նոր գրոհով Ռուսաստանում կործանվեց նաև կապիտալիզմը։ Դա Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակն էր, որը մարդկության պատմության մեջ բացեց նոր դարագլուխ՝ կապիտալիզմի կործանման և կոմունիզմի կառուցման դարագլուխը։

* * *

Փետրվարյան ռևոլյուցիան ո՛չ պատահական երևույթ էր և ո՛չ էլ հրաշք։ Այն արդյունք էր Ռուսաստանի տնտեսական ու քաղաքական զարգացման, երկրում աճող սոցիալական հակասությունների, զարգացող արտադրողական ուժերի ու ետ մնացող արտադրական հարաբերությունների միջև հասունացող կոնֆլիկտի։



Դեռ 19-րդ դարի վերջից, երբ կապիտալիզմը մտավ իր զարգացման վերջին փուլը՝ իմպերիալիզմի էպոխան, ռևոլյուցիոն շարժման կենտրոնը արևմուտքից փոխադրվեց Ռուսաստան, որը դարձել էր իմպերիալիզմի հակասությունների հանգուցակետը։ Ցարիզմը իր տնտեսական հետամնացությամբ ու քաղաքական ռեակցիայով անտանելի պայմաններ էր ստեղծել աշխատավոր մասսաների համար։ Ռուսաստանի ժողովուրդները ենթարկվում էին ֆեոդալական ու կապիտալիստական շահագործման, սոցիալական ու ազգային ճնշման, տեղական ու օտարերկրյա կապիտալի հարստահարման, մեծ ու փոքր չինովնիկների, ոստիկանների ու ժանդարմների կամայականության։

Այդ բոլորի հետևանքով ծայր աստիճան սրվեցին դասակարգային հակասությունները և արդեն 1905—1907 թ. թ. Ռուսաստանում պայթեց իմպերիալիզմի դարաշրջանի առաջին ժողովրդական ռևոլյուցիան, որը պետք է կործաներ ցարիզմը։ Սակայն պատմական հանգամանքների բերումով ու մի շարք պատճառներով այդ ռևոլյուցիան վերջացավ պարտությամբ։ Ռևոլյուցիայի պարտությունը ինքնըստինքյան վկայում էր, որ Ռուսաստանը պետք է կանգներ նոր ռևոլյուցիայի առաջ, որովհետև ռևոլյուցիա ծնող օբյեկտիվ պայմանները ոչ միայն շարունակում էին գոյություն ունենալ, այլև գնալով ավելի ու ավելի էին սրվում։ Եվ, իրոք, 1907—17 թվականներին Ռուսաստանի ժողովուրդները ենթարկվեցին նոր անլուր կեղեքման ու արհավիրքների, և այդ բոլորի պատճառը ցարական ինքնակալությունն էր, երկրում հաստատված սոցիալ-տնտեսական ու քաղաքական կարգը։

Առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմը խորապես ցնցեց ցարիզմի հիմքերը։ Պատերազմը յուրաքանչյուր օր երկրին նստում էր 50 միլիոն ռուբլի, և արդեն 1915 թվականին Ռուսաստանի առանց այն էլ հետամնաց էկոնոմիկան ընդհանուր քայքայում էր ապրում։ Երկիրը չէր հասցնում նույնիսկ մինիմալ չափով ապահովելու բանակի ռազմական հանդերձանքի ու պարենի մատակարարումը, էլ չենք խոսում ժողովրդական մասսաների թեկուզ նախկին, առանց այն էլ ցածր կենսամակարդակի պահպանման մասին։

Պատերազմն իր ողջ ծանրությամբ ընկած էր աշխատավոր մասսաների վրա։ Նրանք էին անթիվ զոհեր տալիս ռազմաճակատներում և աներևակայելի նյութական զրկանքներ կրում։ Պատերազմը ողբերգական էր հայ ժողովրդի համար և նրա մի մեծ հատվածը զանգվածաբար հոշոտվեց թյուրքական ջարդարարների կողմից, որոնց հովանավորում էին գերմանական և այլ իմպերիալիստներ։ Բնական է, որ պատերազմը իր թալանչիական բնույթով ու ծանր հետևանքներով ոչ մի ժողովրդականություն չէր կարող վայելել աշխատավորության մեջ։ Ընդհակառակը, գնալով ավելի էր բացահայտվում ցարական կարգերի նեխվածությունը, և ժողովրդական մասսաների ատելությունը շուտով վերածվում էր ակտիվ պայքարի։ Հենց պատերազմի ժամանակ սկսվեցին գործադուլներ, գյուղացիական շարժումներ, զինվորական հուզումներ և այլն։ Ժողովրդական ցասումը տիրող կարգերի դեմ նոր թափ ստացավ, երբ մեկը մյուսի հետևից սկսվեցին ցարական զորքերի պարտությունները ռազմաճակատներում։

Պատերազմը մեծ փորձություն էր ժողովուրդների կյանքում և սոցիալիստական շարժման համար։ Երկրորդ Ինտերնացիոնալը ցուցաբերեց իր կատարյալ սնանկությունը և կրախի մատնվեց։ Նրա սոցիալ-շովինիստական

պարտիաներն անցան իրենց բուրժուական պետությունների կողմը և ակտիվորեն մասնակցեցին իմպերիալիստական պատերազմին։

Ինչպես միշտ, այնպես էլ առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ, սոցիալիզմի գործին ու պրոլետարական ինտերնացիոնալիզմին հավատարիմ մնացին միայն բոլշևիկների պարտիան և բոլոր երկրների մարքսիստները։ Բոլշևիկների թեորիան ու տակտիկան պատերազմի, խաղաղության ու ռևոլյուցիայի հարցերում մշակեց Լենինը։ Նա ցույց տվեց, որ բոլոր երկրների կոմունիստների ու աշխատավոր մասսաների խնդիրն է՝ ներկա իմպերիալիստական պատերազմը վերածել քաղաքացիական պատերազմի ու հասնել սեփական շահագործողական, բուրժուական կառավարության տապալման. «Ռևոլյուցիոն դասակարգը ռեակցիոն պատերազմում չի կարող իր կառավարության պարտությունը չցանկանալ, չի կարող չտեսնել նրա ռազմական անհաջողությունների կապը նրա տապալումը հեշտացնելու հետ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 399)։ Անհրաժեշտ էր պատերազմից դուրս գալ ռևոլյուցիոն ճանապարհով։ Կոնկրետ՝ Ռուսաստանի բոլշևիկների խնդիրը դարձավ — մոբիլիզացնել աշխատավոր մասսաներին, զինվորներին, կազմակերպել համաժողովրդական պայքար և հասնել ցարիզմի պարտությանն ու կործանմանը։

Բոլշևիկների և բոլոր երկրների մարքսիստների համար գործողության ուղեցույց դարձավ մի երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության մասին լենինյան հանճարեղ եզրակացությունը։ Զինված միակ ճիշտ թեորիայով ու տակտիկայով պատերազմի. խաղաղության ու ռևոլյուցիայի հարցերում, բոլշևիկյան պարտիան եռանդուն գործունեություն ծավալեց իմպերիալիստական պատերազմը քաղաքացիական պատերազմի վերածելու համար։ Չորրորդ Պետական Դումայի բոլշևիկյան ֆրակցիան դատապարտեց սկսված իմպերիալիստական պատերազմը և ծավալեց ռևոլյուցիոն ակտիվ գործունեություն։ Եռանդուն աշխատանք էր տանում Պետերբուրգի բոլշևիկյան կոմիտեն, որը կապված էր Մոսկվայի, Կիևի, Իվանովո-Վոզնեսենսկու, Նիժնի-Նովգորոդի, Սամարայի, Տալլինի, Բաքվի և այլ վայրերի պարտիական կազմակերպությունների հետ։

Պատերազմի տարիներին ռևոլյուցիոն ակտիվ աշխատանք էին տանում նաև Անդրկովկասի բոլշևիկները, որոնց մարտական ղեկավարն էր Լենինի
Շահումյա-
հավատարիմ աշակերտ ու մերձավորագույն զինակից Ստեփան
նը։ 1915 թ. հոկտեմբերին տեղի ունեցավ Անդրկովկասի բոլշևիկների խորհրդակցությունը, որի ընդունած բանաձևերը շնչում են լենինյան ոգով։ Ստ.
Շահումյանը Վ. Ի. Լենինին և Ն. Կ. Կրուպսկայային ուղարկած ծածկագիր նամակում նշում էր. «Ընդհանրապես ասած, թույլ եմ տալիս կարծելու, որ
ընտա-
ես և մեր բոլոր ազգականները [բոլշևիկները] բարձր ենք պահում մեր
ռեալու-
նեկան [բոլշևիկյան պարտիայի] դրոշակը, և որ դուք կարող եք մեր
տացիայի համար հանգիստ լինել» (Ստ. Շահումյան. Ընտիր Երկեր, էջ 422, Երևան, 1948 թ.)։

Բոլշևիկները մեծ աշխատանք կատարեցին նաև բանակում։ Հատկապես եռանդուն գործունեություն ծավալեցին Մ. Վ. Ֆրունզեն, Ա. Ա. Ժդանովը, Ալ. Մյասնիկյանը, Ա. Ջափարիձեն, Գր. Կորգանովը, Ս. Հովսեփյանը և ուրիշներ։

Բոլշևիկների ազդեցությամբ ու ղեկավարությամբ ուժեղացան ռևոլյու-



ցիոն շարժումները թիկունքում ու ռազմաճակատում։ Արդեն 1916 թվականին
գործադուլների թիվը հասավ 1300-ի՝ ավելի քան մեկ միլիոն մասնակիցներով։
Բանվորները հանդես էին գալիս ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական
պահանջներով։ Աճեց նաև գյուղացիական շարժումը, ապստամբություններ
բորբոքվեցին ճնշված ժողովուրդների մեջ։ Հատկապես ուժեղացավ ռևոլյուցիոն շարժումը բանակում։

Երկրի տնտեսական փլուզումը, զորքերի պարտությունները, ռևոլյուցիոն
շարժումների անշեղ աճումը ցարիզմի համար մահացու ճգնաժամ ստեղծեցին։ Ռուսաստանը նորից թևակոխեց ռևոլյուցիոն սիտուացիայի ժամանակաշրջան, և բոլշևիկների, աշխատավոր մասսաների խնդիրն էր՝ ռևոլյուցիոն իրադրությունը վերածել հաղթական ռևոլյուցիայի։

Ցարը՝ իր պալատական կամարիլիայով, և ռուսական բուրժուազիան՝
անգլո-ֆրանսիական իմպերիալիզմի աջակցությամբ փորձում էին դավադրական պլաններով կանխել ռուսական ռևոլյուցիան։ Սակայն ձախողվեցին այդ
պլանները, որովհետև ժողովուրդն իր ակտիվ գործողությամբ առաջ անցավ
կոնտրռևոլյուցիայից։ Այլևս ոչ մի ուժ չէր կարող կասեցնել վերահաս ռևոլյուցիայի անխուսափելիությունն ու նրա հաղթանակը։

***

1917 թվականի հունվարի 9-ին Վ. Ի. Լենինը Ցյուրիխի ժողովրդական
տանը՝ շվեյցարական բանվորական երիտասարդության ժողովում զեկուցում
կարդալով 1905 թվականի ռևոլյուցիայի մասին, մարգարեաբար ասաց, որ
շուտով Եվրոպայի մեռելային լռությանը կհաջորդի մեծագույն ցնցումների
շրջանը։ Լենինյան այս իմաստուն խոսքերը իրենց առաջին հաստատումը
գտան Ռուսաստանում։ 1917 թվականը Ռուսաստանում սկսվեց հունվարի 9-ի՝
«արյունոտ կիրակիի» տարեդարձի առթիվ կազմակերպված բանվորական խոշոր գործադուլներով ու ցույցերով։ Ցարական ժանդարմական գրագրությունների մեկում ուղղակի ասված էր, որ Պետրոգրադում դրությունը տագնապալից է և հիշեցնում է 1905 թվականի նախօրյակը։

Երկրում սկսված գործադուլային շարժումը մասսայական բնույթ ստացավ, և միայն 1917 թվականի հունվարին գործադուլավորների թիվը հասավ
500 հազարի։ Խոշոր ելույթներ սկսվեցին նաև բանակում։ 1917 թվականի
հունվարին ապստամբեց 223-րդ Օդոևյան գունդը՝ Հարավ-արևմտյան ռազմաճակատում։

Ռուսաստանում ծավալվող ռևոլյուցիոն շարժման գլուխ էր կանգնած
բոլշևիկների պարտիան։

Ահաբեկված ցարական կառավարությունը շտապ միջոցների դիմեց՝
ռևոլյուցիոն վերելքը կասեցնելու համար։ Փետրվարի 5-ին առանձնացվեց
պետրոգրադյան ինքնուրույն ռազմական օկրուգ և նրա հրամանատար գեներալ Խաբալովը ստացավ արտակարգ լիազորություններ։

Իր հերթին՝ բուրժուազիան փորձեց մասսաների ռևոլյուցիոն շարժումը
դնել իրեն հարմար շրջանակների մեջ։ Դրանում նա ստացավ մենշևիկների ու
էսեռների աջակցությունը, որոնք առաջարկեցին 1917 թվականի փետրվարի
14-ին՝ Պետական Դումայի բացման օրը բանվորների խաղաղ երթ կազմակերպել դեպի Տավրիկյան պալատը և Դումային «ժողովրդի փրկության» կառավարություն ստեղծելու պահանջ ներկայացնել։ Բոլշևիկները վճռականորեն մերկացրին այդ ոճրագործ քաղաքականությունը, և բանվորները գնացին

բոլշևիկների հետևից: Կազմակերպվեց հզոր ցույց՝ «Կորչի ցարական ինքնակալությունը», «Կորչի պատերազմը» լոզունգներով: Հասունանում էր բացահայտ կռվի ժամանակը և Կենտկոմի Ռուսական Բյուրոն 1917 թվականի փետրվարին վճռական պայքարի կոչ արեց:

Փետրվարի 18-ին գործադուլ սկսվեց Պուտիլովյան գործարանում, որին շուտով միացան Վիբորգյան ու Նարվայի ռայոնների արդյունաբերական ձեռնարկությունների բանվորները: Փետրվարի 23-ին (մարտի 8-ին)՝ կանանց միջազգային օրը Պետրոգրադում գործադուլ արին 90 հազար բանվոր, իսկ հետևյալ օրը՝ արդեն 200 հազար: Ցարական իշխանությունները փորձեցին սիրաշահել և ավելի շատ հաց դուրս բերել վաճառքի: Բայց շուտով նրանք համոզվեցին, որ պայքարը միայն հացի համար չէ, այլև ցարիզմի տապալման: Ինքը՝ արյունռուշտ Խաբալովը հետագայում հարկադրված էր խոստովանելու, որ «երբ ասում էին «Հաց տվեք»,—հաց տվինք, և վերջացավ: Բայց երբ դրոշների վրա գրված էր «Կորչի ինքնակալությունը»,— այստեղ ի՞նչ հաց կարող էր հանգստացնել»: Բանակը փաստորեն այլևս չէր ենթարկվում ցարական հրամանատարությանը:

Կենտկոմի Ռուսական Բյուրոն՝ Պետրոգրադի Կոմիտեի հետ միասին որոշեցին շարժումը ավելի ծավալել, ողջ զորքը գրավել ժողովրդի կողմը և խորտակիչ հարված հասցնել ցարիզմին: Փետրվարի 25-ի առավոտյան տարածվեց հատուկ թռուցիկ, որը կոչում էր. «Բոլորս դեպի պայքար, դեպի փողոց»: Այդ օրը Պետրոգրադում գործադուլը դարձավ ընդհանուր, և բանվորական հոծ մասսաները երգում էին «Մարսելյոզ», «Վարշավյանկա», «Համարձա՛կ, ընկերնե՛ր, ոտքի՛» ռևոլյուցիոն երգերը: Երեկոյան գեներալ Խաբալովը ցարից հրաման ստացավ՝ «Վաղը ևեթ մայրաքաղաքում դադարեցնել անկարգությունները»: Ռազմաճակատից նրա տրամադրության տակ ուղարկվեցին զորամասեր: Ցարական շրջաններն արդեն զգում էին, որ տանուլ են տալիս ամեն ինչ, և դիմում էին բոլոր հնարավոր միջոցներին՝ ռևոլյուցիան ճնշելու համար: Միապետական Շուլգինը գրում էր. «Գնդացիրներ, ահա ինչ ես կուզենայի, որովհետև զգում էի, որ միայն գնդացիրների լեզուն է մատչելի ամբոխին և որ միայն նա՝ կապարը կարող է ետ մղել իր որջը՝ ազատության դուրս եկած ահավոր գազանին... Ավա՜ղ, այդ գազանը... նորին մեծության ռուս ժողովուրդն էր... Այն, որից այնպես վախենում էինք, որից ամեն գնով ուզում էինք խուսափել — արդեն փաստ է: Ռևոլյուցիան սկսվեց»: Ակնհայտ է մոնարխիստ բուրժուայի կատաղությունն ու ատելությունը ժողովրդի և ռևոլյուցիայի նկատմամբ:

Սակայն ցարիզմի հուսահատական ճիգերը անզոր էին խափանելու ռևոլյուցիան: Զորքը իր հիմնական մասսայով անցավ ժողովրդի կողմը և վերջնականապես վճռվեց ռևոլյուցիայի բախտը: Ճիշտ է, փետրվարի 26-ի կիրակի օրը կարծես թե սկսվեց խաղաղ կերպով և նույնիսկ գոռոզամիտ Խաբալովը ցարին հեռագրեց թե «քաղաքում հանգստություն է»: Բայց արդեն ժամը 12-ից սկսվեց բանվորական նոր հզոր ցույց, որը ստացավ զինվորների պաշտպանությունը, իսկ երբ ոստիկանական ջոկատները հարձակվեցին ցուցարարների վրա, Պավլովյան գնդի պահեստի գումարտակի չորրորդ վաշտը կրակ բաց արեց հեծյալ քաղաքապահների վրա: Բանվորական ցույցը վերածվեց բացահայտ քաղաքացիական կռվի:

Վրա հասավ փետրվարի 27-ի նշանավոր օրը, երբ Պետրոգրադի կայա-



զորը սկսեց մասսայաբար անցնել ապստամբ ժողովրդի կողմը: Եթե առավոտյան կար միայն տաս հազար ապստամբ զինվոր, ապա երեկոյան դրանց թիվը հասավ մոտ 67 հազարի: Ապստամբ բանվորներն ու զինվորները ձերբակալեցին ցարական մինիստրներին ու գեներալներին, և արդեն փետրվարի 27-ի երեկոյան Պետրոգրադը գտնվում էր նրանց ձեռքում:

Գլխավորելով ռևոլյուցիոն գրոհը՝ բոլշևիկների Կենտրոնական Կոմիտեի Ռուսական Բյուրոն հատուկ մանիֆեստով դիմեց Ռուսաստանի բոլոր քաղաքացիներին և կոչ արեց կործանված ցարական ինքնակալության փոխարեն ստեղծել ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարություն, որը պետք է պաշտպաներ ժողովրդի իրավունքները, ապահովեր կալվածատիրական հողերի բռնագրավումը, ութժամյա բանվորական օրվա սահմանումը և այլն: Մանիֆեստը, Պետրոգրադի օրինակով, համաժողովրդական պայքարի կոչեց Ռուսաստանի բոլոր աշխատավորներին. «Քաղաքացինե՛ր, ռուսական ցարիզմի ամրոցներն ընկան: Ժողովրդի ոսկորների վրա կառուցված ցարական շայկայի բարօրությունը խորտակվեց... Բոլորս դեպի պայքար... Ողջ Ռուսաստանում բարձրանում է ապստամբության կարմիր դրոշը... Ձեր ձեռքը վերցրեք ազատության գործը, տապալեցեք ցարական ծառաներին... Ստեղծեցեք ռևոլյուցիոն ժողովրդական կառավարություն» (Листовки петербургских большевиков 1902—1917 г. г., т. II, стр. 251—252):

Ռևոլյուցիայի հաղթանակը Պետրոգրադում լայն արձագանք գտավ ամբողջ երկրում և ամենուրեք բանվորները, զինվորները և գյուղացիները սկսեցին տապալել ցարական իշխանության օրգանները տեղերում:

Ամբողջ Ռուսաստանում հաղթանակեց ժողովրդական ռևոլյուցիան, և Լենինի դիպուկ արտահայտությամբ՝ շուռ եկավ «Ռոմանովների միապետության արյունով ու ցեխով լցված սայլը»: Դա ռուսաստանյան պրոլետարիատի ու աշխատավոր գյուղացիության ռևոլյուցիոն սխրագործությունն էր: Պատմական մեծագույն հաղթանակով պսակվեց Ռուսաստանի ժողովուրդների դարավոր պայքարը ցարիզմի դեմ, որն այնքան տանջանքներ էր պատճառել բոլոր աշխատավորներին:

***

1917 թվականի Փետրվարյան ռևոլյուցիան հանդիսացավ իմպերիալիստական պատերազմը քաղաքացիական պատերազմի վերածելու բոլշևիկյան լոզունգի առաջին փուլի կենսագործումը: Փետրվարյան ռևոլյուցիան իր բնույթով բուրժուա-դեմոկրատական էր, այսինքն՝ ուղղված էր ֆեոդալական կարգերի դեմ, և նրա առաջին ու գլխավոր խնդիրը դարձավ ցարական միահեծանության տապալումը: Ռևոլյուցիա կատարողները ժողովրդական մասսաներն էին՝ պրոլետարիատը որպես հեգեմոն և գյուղացիությունը՝ որպես նրա դաշնակից: Բնութագրելով ռևոլյուցիայի շարժիչ ուժերը՝ Լենինը գրել է. «Ռևոլյուցիան կատարեց պրոլետարիատը, նա հերոսություն ցուցաբերեց, նա արյուն թափեց, նա իր հետևից տարավ աշխատավոր և ամենաչքավոր բնակչության ամենալայն մասսաներին» (Վ. Ի. Լենին. Երկեր, հ. 23, էջ 414): Բանվոր դասակարգի և գյուղացիության ռևոլյուցիոն պայքարի, նրանց դաշինքի անմիջական կազմակերպիչներն ու ղեկավարները բոլշևիկներն էին: Առանց այդպիսի նախապայմանների չէր հաղթանակի ռևոլյուցիան Ռուսաստանում:

1917 թվականի փետրվար-մարտյան ռևոլյուցիայի հաղթանակը նախապատրաստվել էր դեռևս ռուսական առաջին ռևոլյուցիայով, որը, Լենինի ար-

տահայտությամբ, խորապես փորեց հողը, արմատախիլ արեց դարավոր նա-
խապաշարումները և քաղաքական ակտիվ պայքարի կոչեց միլիոնավոր
մասսաների: Եթե ռուսական առաջին ռևոլյուցիան տվեց դասակարգային
մարտերի մեծ և ուսանելի փորձ, ապա նրանից հետո եկող կոնտրռևոլյուցիոն
ժամանակաշրջանը ծայր աստիճան մերկացրեց ցարիզմի նեխվածությունն ու
նողկալիությունը, իսկ համաշխարհային պատերազմն էլ, «ամենակարող ռե-
ժիսյորի նման», արագացրեց պատմության ընթացքը:

1917 թվականի ռևոլյուցիայի հաղթանակը արագացվեց նաև այն յուրօրի-
նակ պատմական սիտուացիայով, որի շնորհիվ ցարիզմի դեմ մղվող պայքա-
րում միմյանց ձուլվեցին տարբեր հոսանքներ ու ձգտումներ և, ամենակարևո-
րը, սեղծվեց ընդհանուր պրոլետարական, ժողովրդական մասսայական
շարժում՝ հանուն ազատության, հացի ու խաղաղության:

Հայտնի է, որ ամեն մի ռևոլյուցիայի գլխավոր հարցը իշխանության
հարցն է: Փետրվարյան ռևոլյուցիան այդ հարցը լուծեց բավականին յուրօրի-
նակ ձևով: Ստեղծվեց Երկիշխանություն, պատմության մեջ խիստ հազվա-
գյուտ վիճակ:

Իրերի տրամաբանությունն ասում է, որ նա, ով ռևոլյուցիա է կատա-
րում, պետք է անցնի նաև իշխանության գլուխ: Եվ ահա, ռևոլյուցիայի առա-
ջին օրերից երևան եկան բանվորների ու զինվորների դեպուտատների Սո-
վետներ: Այդպիսիք ստեղծվեցին Պետրոգրադում, Մոսկվայում, Կիևում,
Մինսկում, Սամարայում, Բաքվում և այլն: Սովետներ ստեղծվեցին նաև Հա-
յաստանի կարևորագույն վայրերում — Երևանում, Ալավերդում, Ղափանում,
Ալեքսանդրապոլում և այլն: Աշխատավոր մասսաները Սովետները դիտում էին
որպես նոր, ռևոլյուցիոն իշխանության օրգաններ: Բայց ամբողջ դժբախտու-
թյունն այն էր, որ սկզբում Սովետների մեծ մասում ղեկավարությունը գրա-
վեցին մանր բուրժուական պարտիաները՝ մենշևիկներն ու էսեռները:

Դա բացատրվում է նրանով, որ նախ՝ երբ բոլշևիկներն անմիջականորեն
ղեկավարում էին մասսաների ռևոլյուցիոն պայքարը, մենշևիկներն ու էսեռ-
ները զավթում էին դեպուտատական տեղերը Սովետներում, երկրորդ՝ մեր
պարտիայի առաջնորդը և մյուս ականավոր գործիչները գտնվում էին էմիգրա-
ցիայում կամ աքսորում, մինչդեռ մենշևիկներն ու էսեռները ազատ գործում
էին. երրորդ՝ պատերազմի հետևանքով լուրջ հարված էր հասցվել պրոլե-
տարիատի կադրային կազմին, և ռևոլյուցիայի ժամանակ քաղաքական հոր-
ձանուտի մեջ էին քաշվել միլիոնավոր մարդիկ՝ մանրբուրժուական խավերից:

Սովետների մանրբուրժուական ղեկավարությունը հանձին մենշևիկների և
էսեռների խիստ վնաս հասցրեց այդ օրգանների մարտունակությանը: Այնու-
ամենայնիվ, շատ դեպքերում բանվորները, գյուղացիներն ու զինվորներն
իրենց կամքն էին թելադրում: Պետրոգրադի Սովետը, չնայած իր էսեռա-
մենշևիկյան ղեկավարության, մասսաների ճնշման տակ, 1917 թվականի
մարտի 1-ին ընդունեց առաջին ռևոլյուցիոն հրամանը, որով բանակում
ստեղծվում էին զինվորական ընտրական կոմիտեներ և նրանց տրամադրության
տակ էր դրվում զենքը, վերացվում էր սպաների տիտղոսավորումը և պահանջ-
վում էր կուլտուրական վերաբերմունք զինվորների նկատմամբ: Ակնհայտ
է այդ հրամանի մոբիլիզացնող ու ռևոլյուցիոնականացնող նշանակությունը
զինվորների համար, և պատահական չէր, որ Կերենսկին հետագայում ասաց.
«Կտայի կյանքիս տասը տարին, որպեսզի բոլորովին չստորագրվեր հրամանը»:



Ռևոլյուցիոն պաթոսը ամբողջովին համակում էր այն Սովետներին, որ-
տեղ մեծամասնություն էին կազմում բոլշևիկները, ինչպիսիք էին Իվանովո-
Վոզնեսենսկու, Կրասնոյարսկի և այլ Սովետները:

Սովետների մեծ մասում մենշևիկների ու էսեռների գերակշռությունը և
նրանց հակաժողովրդական քաղաքականությունը բարենպաստ պայմաններ
ստեղծեցին ռուսական բուրժուազիայի գիրքերի ամրացման համար, որն իր
հերթին ձգտում էր և նախապատրաստվել էր քաղաքական իշխանության: Եվ
ահա Սովետների կողքին կազմվեց բուրժուական ժամանակավոր կառավարու-
թյուն, որի մեջ մտնում էին բուրժուազիայի և բուրժուականացած կալվածա-
տերերի ներկայացուցիչները: Որպես «դեմոկրատիայի» ներկայացուցիչ ժա-
մանակավոր կառավարության մեջ մտցվեցին էսեռ Կերենսկին, իսկ ավելի
ուշ՝ մենշևիկներ Սկոբոլևը, Ծերեթելին և ուրիշներ: Լենինը դրանց անվանեց
ֆրազի հերոսներ, խաղալիքներ Գուչկովների ու Միլյուկովների ձեռքին, ռու-
սական Լուի Բլաններ, որոնք մասսաների մեջ պատրանքներ էին սերմանում
այն մասին, թե բուրժուազիայից կարելի է ստանալ ազատություն ու բարե-
կեցություն: Բուրժուական ժամանակավոր կառավարությունը իր գոյության
հենց սկզբից կոնտրռևոլյուցիոն էր, հակաժողովրդական, ռեակցիոն:

Այսպիսով, ռևոլյուցիայից հետո ստեղծվեց երկիշխանություն, երկու
դիկտատուրաների յուրահատուկ միահյուսում — բուրժուազիայի դիկտատու-
րայի՝ հանձին ժամանակավոր կառավարության, և պրոլետարիատի ու գյու-
ղացիության դիկտատուրայի՝ հանձին Սովետների: Պետք է նշել, որ Սովետ-
ները վիթխարի ուժ էին ներկայացնում, նրանց կողմն էր զորքը, զինված ժո-
ղովուրդը, և սկզբում ժամանակավոր կառավարությունը չէր կարող ոչ մի
լուրջ քայլ անել՝ առանց նրանց համաձայնության: Դրանով իսկ Փետրվարյան
ռևոլյուցիան դուրս եկավ սովորական բուրժուական ռևոլյուցիաների շրջա-
նակներից, որոնք իշխանությունն անբաժան կերպով հանձնում են բուրժուա-
զիային: Լենինը բացահայտելով երկիշխանության դասակարգային աղբյուրն
ու նշանակությունը՝ գրել է, որ «1917 թ. մարտի ռուսական ռևոլյուցիան ո՛չ
միայն սրբեց-տարավ ամբողջ ցարական միապետությունը, ո՛չ միայն ամբողջ
իշխանությունը բուրժուազիային հանձնեց, այլև հասավ ընդհուպ մինչև պրո-
լետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատու-
րային» (Վ. Ի. Լենին. Երկեր, հ. 24, էջ 53):

Բնական է, որ Ռուսաստանում ստեղծված երկիշխանությունը չէր կարող
երկար շարունակվել և այն պետք է վերջանար մեկի կամ մյուսի հաղթանա-
կով: Պրոլետարիատի ու աշխատավոր մասսաների շահը պահանջում էր՝ իշ-
խանությունը կենտրոնացնել ռևոլյուցիոն Սովետներում: Դրա համար ամենից
առաջ պահանջվում էր՝ մշակել ճիշտ տակտիկա և պարտիային ու մասսանե-
րին տալ կողմնորոշման ուժ, հետագա գործունեության պարզ ծրագիր:

Փետրվարյան ռևոլյուցիայից հետո Ռուսաստանը դարձավ ամենադեմո-
կրատական երկիրը՝ բոլոր բուրժուական պետությունների համեմատությամբ.
այստեղ, մասսաների ռևոլյուցիոն վերելքի պայմաններում իրականացվում
էին դեմոկրատական ազատություններ: Ծանր ու երկարատև ընդհատակից
հետո բացահայտ աշխատանքի անցավ բոլշևիկյան պարտիան: 1917 թ. մար-
տի 5-ից վերսկսվեց «Պրավդա» թերթի հրատարակությունը: Ամենուրեք եռում
էր բոլշևիկների ռևոլյուցիոն աշխատանքը: Բայց ժամանակի կարևոր հարցե-
րում բոլորը չէ, որ ճիշտ էին կողմնորոշվում: Ոմանք նույնիսկ պահանջում

էին՝ ժամանակավոր կառավարությանը պայմանական օժանդակություն ցույց տալ:

Դրությունը բարդ էր և ավելի մեծ ուժով էր զգացվում պարտիայի առաջնորդի բացակայությունը: Եվ ահա, երկարատև տարագրությունից հետո, 1917 թ. ապրիլի 3-ին Ռուսաստան վերադարձավ Վ. Ի. Լենինը: Դեռ Շվեյցարիայում ստանալով Փետրվարյան ռևոլյուցիայի լուրը՝ նա ողջունեց ցարիզմի կործանումը և իր «Նամակներ հեռվից» աշխատության մեջ դիմելով Ռուսաստանի պրոլետարիատին, ասաց. «Բանվորնե՛ր, դուք պրոլետարական, ժողովրդական հերոսության հրաշքներ ցուցաբերեցիք ցարիզմի դեմ մղված քաղաքացիական պատերազմում, դուք պետք է պրոլետարական և համաժողովրդական կազմակերպության հրաշքներ ցուցաբերեք, որպեսզի նախապատրաստեք ձեր հաղթանակը ռևոլյուցիայի երկրորդ էտապում» (Վ. Ի. Լենին. Երկեր, հ. 23, էջ 411):

Հենց այս ստրատեգիական պլանն է դրված Լենինի հռչակավոր Ապրիլյան թեզիսների հիմքում: Պարտիայի առաջնորդն ընդգծեց, որ Ռուսաստանն ապրում է ռևոլյուցիայի առաջին էտապից երկրորդին անցնելու շրջան, և բոլշևիկյան պարտիայի խնդիրն է՝ կազմակերպել բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի վերաճումը սոցիալիստական ռևոլյուցիայի: Գլխավոր ստրատեգիական լոզունգն է՝ «Ամբողջ իշխանությունը Սովետներին»: Ո՛չ մի աջակցություն բուրժուական ժամանակավոր կառավարությանը, որը դարձել է ցարիզմի օրինավոր հաջորդը, արևմտյան իմպերիալիզմի դաշնակիցը և չի լուծում ո՛չ հողի, ո՛չ խաղաղության, ո՛չ ազգային և ո՛չ էլ սոցիալական ազատության հարցերը: Պետք է ամրապնդել Սովետները և մեծամասնություն շահել այնտեղ, անդուլ կերպով մերկացնել մանրբուրժուական պարտիների դավաճանական քաղաքականությունը, նրանց վաճառվածությունը բուրժուազիային: Լենինը հանգամանորեն կանգ առավ նաև բոլշևիկների տնտեսական պլատֆորմի վրա՝ պահանջելով հողի ազգայնացում, միասնական ազգային բանկի ստեղծում, բանվորական վերահսկողության հաստատում արտադրության ու բաշխման վրա: Ամփոփելով կատարվելիք քաղաքական ու տնտեսական միջոցառումների նպատակն ու իմաստը Վ. Ի. Լենինը գրել է. «Ռուսաստանում ընթացիկ մոմենտի առանձնահատկությունը անցումն է ռևոլյուցիայի առաջին էտապից, որը պրոլետարիատի բավականաչափ գիտակից և կազմակերպված չլինելու պատճառով իշխանությունը տվեց բուրժուազիային, դեպի նրա երկրորդ էտապը, որն իշխանությունը պետք է տա պրոլետարիատի և գյուղացիության ամենաչքավոր խավերի ձեռքը» (Նույն տեղում, հ. 24, էջ 4): Այդ իշխանությունը պետք է դրսևորվեր Սովետների ռեսպուբլիկայի ձևով:

Լենինյան հանճարով գծվեց ռուսական ռևոլյուցիայի զարգացման ուղին և Ապրիլյան թեզիսները դարձան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու թեորիապես հիմնավորված կոնկրետ պլան: Բոլշևիկների պարտիան ստացավ ճիշտ կողմնորոշում, ապա ստեղծեց ու կոփեց ռևոլյուցիայի քաղաքական բանակը և կազմակերպեց ժողովրդական մասսաների վճռական գրոհը կապիտալիզմի դեմ: Հաղթանակեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, որը լուծեց նաև Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի չիրականացրած խնդիրները: Մեր երկրում հաստատվեց Սովետական իշխանություն, և բոլոր ժո-



ղովուրդները ձեռք բերին սոցիալական ու ազգային ազատություն, խաղաղություն, ազատ ու երջանիկ կյանք:

Այսպիսով, Փետրվարյան ռևոլյուցիան կործանելով ցարիզմը, նոր թափ հաղորդեց Ռուսաստանի ժողովուրդների ռևոլյուցիոն վերելքին՝ ընդհուպ մինչև ազատարար Հոկտեմբերի հաղթանակը: Ամենայն իրավամբ, 1917 թվականի փետրվարը դարձավ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի անմիջական նախերգանքը, նրա հաղթանակի կարևորագույն էտապը: Դրա մեջ է Փետրվարյան ռևոլյուցիայի գլխավոր պատմական նշանակությունը:

Այդ ռևոլյուցիան ունեցավ նաև համաշխարհային նշանակություն ու ազդեցություն: Հայտնի է, որ ցարիզմը միջազգային ռեակցիայի պատվարներից մեկն էր, և նա, ով ձեռք էր բարձրացնում ռուսական բռնակալության վրա՝ հարված էր հասցնում նաև իմպերիալիզմին: Եվ, իրոք, ցարիզմի տապալումից հետո նոր լիցք ստացան ռևոլյուցիոն ու ազգային-ազատագրական շարժումները Արևելքում ու Արևմուտքում: Հոկտեմբերյան ռևոլյուցիան վճռական ազդեցություն ունեցավ այդ շարժումների վրա և դարձավ ջրբաժան գիծ՝ մարդկության նախապատմության (այդպես էին անվանում Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը մարդկային հասարակության զարգացումը՝ մինչև սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը) և իսկական պատմության միջև, երբ աշխարհի մեծագույն երկրներից մեկում աշխատավոր մասսաները թռիչք կատարեցին անհրաժեշտության թագավորությունից դեպի ազատության թագավորությունը: Ցարիզմի ու կապիտալիզմի տապալումը և սոցիալիզմի կառուցումը մեր երկրում ոգեշնչող օրինակ է աշխարհի պրոգրեսիվ մարդկության համար:

Սովետական ժողովուրդը՝ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ անցնելով ռևոլյուցիոն պայքարի հերոսական ուղի, այժմ հաղթականորեն կոմունիզմ է կառուցում և մեծագույն նվաճումներով դիմավորում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասնամյակը:

Նախկին շահագործողական-բռնակալական ռուսական միապետության փոխարեն ստեղծվել է սոցիալիստական բազմազգ պետություն, որի բոլոր ժողովուրդները իրավահավասար են ու եղբայրակից: Ահա Սովետական Միության ուժի ու հզորության աղբյուրներից մեկը, նրա անպարտելիության գրավականը:

Ցարիզմի ու կապիտալիզմի տապալումից հետո անցած քառասուն տարիների ընթացքում Սովետական Միությունը դարձել է աշխարհի ամենահզոր տերություններից մեկը և գլխավորում է սոցիալիզմի, դեմոկրատիայի ու խաղաղության լագերը: Օրեցօր աճում ու ամրապնդվում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմը և դեպի կործանում է գնում կապիտալիստական սիստեմը: Ահա արդի միջազգային զարգացման գլխավոր օրինաչափությունը, որն ազատագրություն կբերի բոլոր ժողովուրդներին:

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՏՆՏԵՍԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՄԵԹՈԴՆԵՐԸ

*Օ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

Սոցիալիստական հասարակության տնտեսական հիմքը ժողովրդական տնտեսության սոցիալիստական սիստեմն է՝ խարսխված արտադրամիջոցների հանրային սեփականության վրա։

ՍՍՌՄ սոցիալիստական արտադրությունը ամենախոշոր և ամենահամակենտրոնացած արտադրությունն է ամբողջ աշխարհում։ Խոշոր արտադրությունը մեր երկրում տիրապետում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։ Նա ընդգրկում է բովանդակ Սովետական Միության 15 միութենական ռեսպուբլիկաների, բազմաթիվ ավտոնոմ ռեսպուբլիկաների, երկրամասերի և մարզերի արդյունաբերությունը, տրանսպորտը և գյուղատնտեսությունը, որպես մեկ միասնական տնտեսության անբաժանելի մասեր։ Կազմակերպելով և ղեկավարելով Սովետական Միության տնտեսությունը՝ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը կենսագործում են տնտեսության ղեկավարման դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքը։

Ի՞նչ է նշանակում այդ։ Ի՞նչ է ցենտրալիզմը և ի՞նչ է դեմոկրատիզմը ժողովրդական տնտեսության ղեկավարման գործում։

Տնտեսության ղեկավարման այդ սիստեմը մշակել է Վ. Ի. Լենինը սոցիալիստական տնտեսության ստեղծման արշալույսին, որն անցած մոտ չորս տասնյակ տարիների ընթացքում լիովին արդարացրել է իրեն։

Տնտեսության ղեկավարման մեջ ցենտրալիզմը և դեմոկրատիզմը մեկ միասնություն են կազմում։ Նրանց չի կարելի բաժանել միմյանցից, առավել ևս չի կարելի հակադրել միմյանց։ Տնտեսության ղեկավարման միայն ցենտրալիզմը առանց դեմոկրատիզմի՝ տանում է դեպի տնտեսության ղեկավարման բյուրոկրատական մեթոդը, իսկ դեմոկրատիզմը առանց ցենտրալիզմի՝ տանում է դեպի տնտեսության ղեկավարման անարխիզմը։ Մարքսիզմ-լենինիզմը ժխտում է և՛ մեկը, և՛ մյուսը։

Դեմոկրատական ցենտրալիզմը, երբ շեշտը դրվում է ցենտրալիզմի վրա, նշանակում է ՍՍՌՄ բոլոր ռեսպուբլիկաների, ավտոնոմ ռեսպուբլիկաների, երկրամասերի ու մարզերի, ազգային օկրուգների, տնտեսական բոլոր կազմակերպությունների և օբյեկտների, ինչպես և հասարակական բոլոր կազմակերպությունների՝ միահամուռ ջանքերի կենտրոնացումը ամբողջ Սովետական Միության առաջ դրված տնտեսական միասնական խնդիրների իրագործման վրա։ Միասնական տնտեսական այդ խնդիրները իրենց արտահայտությունն



են գտնում Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից ընդունված կարևորագույն որոշումների մեջ և ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հնգամյա և տարեկան պլաններում։ Գերագույն Սովետի կողմից այդ պլանների և որոշումների ընդունումը և հաստատումը օրենքի ուժ ունեն և նրանց կատարումը պարտադիր է մեր բոլոր տնտեսական կազմակերպությունների համար։

Դեմոկրատական ցենտրալիզմը, երբ շեշտը դրվում է դեմոկրատիզմի վրա, նշանակում է միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների, երկրամասերի ու մարզերի և առհասարակ տեղական տնտեսական կազմակերպությունների առանձնահատկությունների հաշվառում և տեղական նախաձեռնության, ինքնագործունեության, մասսաների ստեղծագործական էներգիայի կազմակերպում տնտեսական խնդիրների լուծման ընդհանուր նպատակին հասնելու համար՝ կոնկրետ ուղիների, եղանակների և միջոցների մշակման միջոցով։

Դեմոկրատական ցենտրալիզմը մասսաների լայն շերտերի ստեղծագործական աշխատանքի, տնտեսավարման այն եղանակն է, որը կիրառվում է կոմունիզմի կառուցման բոլոր բնագավառներում։ «Մասսաների կենդանի ստեղծագործություն,— ասում էր Վ. Ի. Լենինը,— ահա՛ նոր հասարակության հիմնական գործոնը... Սոցիալիզմը չի ստեղծվում վերևից ստացված ցուցումներով։ Կազյոննի-բյուրոկրատական ավտոմատիզմը նրա ոգուն խորթ է. կենդանի, ստեղծարար սոցիալիզմը հենց ժողովրդական մասսաների ստեղծագործությունն է» (հատ. 26, էջ 346)։

Ժողովրդական տնտեսության ղեկավարման դեմոկրատական ցենտրալիզմը բխում է հենց սոցիալիստական արտադրության բնույթից, սոցիալիստական տնտեսության՝ որպես առավել համակենտրոնացած և պլանային տնտեսության բնույթից, սովետական իրավակարգի բնույթից, իրավակարգ, որը պատմության մեջ առաջին անգամ բարձրացրել է միլիոնավոր աշխատավոր մասսաներին մինչև համապետական շահերի ըմբռնման մակարդակը, մինչև պետական և տնտեսական շինարարության կառավարման, ղեկավարման մակարդակը։

Պետական և տնտեսական ղեկավարման այս սկզբունքը կապիտալիզմի պայմաններում անիրագործելի է։ Արտադրության կապիտալիստական եղանակը՝ հիմնված արտադրամիջոցների մասնավոր սեփականության և անմիջական արտադրողների շահագործման վրա՝ անընդունակ է իրագործելու կառավարման դեմոկրատական ցենտրալիզմը։ Մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում արդյունաբերության կենտրոնացումը և համակենտրոնացումը ամենից առաջ համապետական մասշտաբով չեն ընդգրկում երկրի ամբողջ արդյունաբերությունը, հետևապես, արտադրության համապետական ցենտրալիզմի և պլանային ղեկավարության մասին խոսք լինել չի կարող։ Այնուհետև, այդ կենտրոնացումը տեղի է ունենում բանվոր դասակարգի և ժողովրդական լայն մասսաների շահագործման հիման վրա, նրանց շահերին հակառակ, բանվոր դասակարգի և բուրժուազիայի, կապիտալիստական արտադրության և անմիջական արտադրողների շահերի անտագոնիստական հակասության հիման վրա։ Հետևապես, կապիտալիզմի օրոք տնտեսության ղեկավարման դեմոկրատիզմի մասին առավել ևս խոսք լինել չի կարող։

Կապիտալիստական երկրներում արտադրության ղեկավարումը կարող է իրագործվել միայն տնտեսական հարկադրանքի օգնությամբ։ Անմիջական ար-

տադրողները ոչնչով շահագրգռված չեն ավելացնելու կապիտալիստների շա-
հույթը և գերշահույթը: Աշխատել կապիտալիստների օգտին՝ դա ծանր բեռ է
պրոլետարիատի համար: «Իր ձևով կապիտալիստական ղեկավարությունը
դեսպոտիկ է»,— նշում է Մարքսը «Կապիտալ»-ում: Իսկ հարկադիր աշխա-
տանքը և ղեկավարման դեսպոտիկ ձևը չեն կարող նախաձեռնություն և ստեղ-
ծագործական էներգիա ծնել:

Իրագործելով տնտեսական ղեկավարության դեմոկրատական ցենտրա-
լիզմի լենինյան սկզբունքը և այդ սկզբունքի համաձայն կազմակերպելով ար-
տադրության կառավարումը, Կոմունիստական պարտիան և Սովետական
կառավարությունը ամեն անգամ հաշվի են առնում սոցիալիստական էկոնո-
միկայի զարգացման տվյալ էտապի կոնկրետ խնդիրները:

Արդյունաբերության կառավարման յուրաքանչյուր էտապին համապա-
տասխան ձևեր ստեղծելով, Կոմունիստական պարտիան և Սովետական կա-
ռավարությունը իրագործում են մեր երկրի ծանր արդյունաբերության՝ սոցիա-
լիզմի էկոնոմիկայի հիմքի անշեղ զարգացումը:

Պարտիայի XX համագումարը և ժողովրդական տնտեսության 6-րդ
հնգամյա պլանը նոր, մինչև այժմ չտեսնված վիթխարի խնդիրներ առաջադրե-
ցին ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում: Այդ խնդիրներն
իրագործելու համար պահանջ դրվեց կազմակերպական նոր եղանակներ կի-
րառելու միջոցով բարելավել ժողովրդական տնտեսության կառավարումը:
Ստեղծագործորեն զարգացնելով սոցիալիստական տնտեսավարության և ղե-
կավարման լենինյան սկզբունքներն ու դրույթները, ՍՄԿՊ-ն և Սովետական
կառավարությունը արդեն մի շարք կարևոր միջոցառումներ են կենսագործել
այդ ուղղությամբ: Ամենից առաջ դրանց շարքը պետք է դասել կենտրոնական
պլանավորող օրգանների աշխատանքների բարելավումը, պլանային օրգան-
ների վերակառուցումը՝ հեռանկարային և ընթացիկ պլանավորման ղեկավա-
րության անջատումը միմյանցից — Պետպլանի և Պետտնտեսական հանձնա-
ժողովի կազմակերպումը: Պլանավորման այս երկու օրգանների ստեղծումը
հնարավորություն է տալիս ավելի հաջող մշակելու ժողովրդական տնտեսու-
թյան զարգացման հեռանկարային պլանները և ավելի լավ կազմակերպելու
դրանց կատարման ընթացիկ վերահսկողությունը: Այնուհետև, դրանց շարքը
պետք է դասել երկրի տնտեսական ղեկավարության մեջ միութենական ռես-
պուբլիկաների իրավունքներն ընդարձակելու և պլանավորման չափից դուրս
կենտրոնացումը վերացնելու միջոցառումները, որոնք կաշկանդում էին ռես-
պուբլիկաների ինքնուրույնությունը և ինքնագործունեությունը, ինչպես և տե-
ղական սովետական, պետական և պրոֆմիութենական օրգանների դերի բարձ-
րացումը: Այդ նշանակում է տեղական պայմանների ամենաուշադիր և համա-
կողմանի հաշվառում և տեղական պետական, տնտեսական և հասարակական
կազմակերպությունների գործունեության քաջալերում, մեր տնտեսության ղե-
կավարման դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի հետագա
զարգացում և կոնկրետացում՝ ՍՍՌՄ ամբողջ ժողովրդական տնտեսության և
միութենական ռեսպուբլիկաների տնտեսական զարգացման ներկա մակար-
դակին համապատասխան:

Որպես այդ որոշումների կենսագործման արդյունք՝ այժմ ընդարձակվել
է միութենական ռեսպուբլիկաների գործունեությունը տնտեսական շինարարու-
թյան և ժողովրդական տնտեսության պլանավորման գործում: Վերջին երեք



տարիների ընթացքում ՍՍՌՄ ենթակայության մոտ 15 հազար ձեռնարկություն
անցել են ռեսպուբլիկաների ենթակայությանը: Դրա շնորհիվ ռեսպուբլիկա-
ների արդյունաբերական համախառն արտադրանքի տեսակարար կշիռը
ՍՍՌՄ արդյունաբերության ընդհանուր համախառն արտադրանքում 1953
թվականի 31 տոկոսից 1956 թվականին բարձրացավ մինչև 55 տոկոսի: Նույնը
վերաբերում է նաև Հայկական ՍՍՌ-ին:

Պարտիայի և կառավարության վերոհիշյալ միջոցառումների կիրառումը
միաժամանակ լենինյան ազգային քաղաքականության ամենավառ դեմոնս-
տրացիան է:

Հասունացե՞լ են արդյոք ՍՍՌՄ ազգային ռեսպուբլիկաները տնտեսա-
կան ղեկավարության այդպիսի բարդ խնդիրների իրագործման համար: Այո՛,
նրանք միանգամայն հասունացել են: Այդ ակնառու կերպով երևում է Սովե-
տական իշխանության տարիներին ՍՍՌՄ ազգային ռեսպուբլիկաների արդյու-
նաբերության և գյուղատնտեսության վիթխարի աճմամբ, ազգային կադրերի
ստեղծմամբ, կուլտուրական շինարարության նվաճումներով, տնտեսության և
պետական կառավարման հսկայական փորձի կուտակմամբ: 1913 թվականի
համեմատությամբ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը
1955 թվականին ավելացել է՝ ՌՍՖՍՌ-ում 27 անգամ, Ուկրաինական ՍՍՌ-ում՝
16 անգամ, Բելոռուսական ՍՍՌ-ում՝ 19 անգամ, Ուզբեկական ՍՍՌ-ում՝ 14
անգամ, Ղազախական ՍՍՌ-ում՝ 33 անգամ, Վրացական ՍՍՌ-ում՝ 27 անգամ,
Ադրբեջանական ՍՍՌ-ում՝ 12 անգամ, Կիրգիզական ՍՍՌ-ում՝ 38 անգամ,
Տաջիկական ՍՍՌ-ում՝ 24 անգամ և այլն: Ինչ վերաբերում է Հայկական
ռեսպուբլիկային, ապա նրա արդյունաբերության համախառն արտադրանքը
նույն ժամանակամիջոցում ավելացել է 41 անգամ:

Է՛լ ավելի նշանակալից են ՍՍՌՄ ազգային ռեսպուբլիկաների նվաճում-
ները արդյունաբերության համախառն արտադրանքի գծով հետպատերազմյան
տարիներին: Այսպես, օրինակ, 1956 թվականին ՍՍՌՄ արդյունաբերության
համախառն արտադրանքը ամբողջությամբ վերցրած, 1940 թվականի համե-
մատությամբ, աճեց 3,5 անգամ, իսկ Կիրգիզական ռեսպուբլիկայում՝ 4,3
անգամ, Ղազախականում՝ 4,5 անգամ, Հայկականում՝ 5,2 անգամ, Լիտվա-
կանում՝ 5,7 անգամ, Մոլդավականում՝ 5,8 անգամ, Լատվիականում՝ 6,7 ան-
գամ և Էստոնականում՝ 7,5 անգամ:

Ազգային ռեսպուբլիկաներում արդյունաբերության զարգացման այսպիսի
բուռն տեմպերը պերճախոս կերպով վկայում են, որ երբեմնի ցարական
Ռուսաստանի հետամնաց ագրարային ծայրամասերն իրենց արդյու-
նաբերության զարգացմամբ ոչ միայն հասել են առաջավոր ազգերի զարգաց-
ման մակարդակին, այլև դարձել են ժամանակակից զարգացած ինդուստրիալ
և ինդուստրիալ-ագրարային ռեսպուբլիկաներ:

Այնուհետև, այդ նշանակում է, որ ՍՄԿՊ ազգային ճիշտ քաղաքականու-
թյան շնորհիվ անդառնալի կերպով վերացվել են ՍՍՌՄ ազգությունների՝
ցարական Ռուսաստանից ժառանգած տնտեսական անհավասարությունը:
Այժմ իրենց տնտեսական զարգացմամբ ՍՍՌՄ բոլոր ռեսպուբլիկաները հա-
մաքայլ և միասնական ուժերով առաջ են շարժվում կոմունիզմի կառուցման
ուղիով:

Բայց այս դեռ ամենը չէ: Արդյունաբերության և էկոնոմիկայի բուռն
զարգացումը և դրա հիման վրա ձևով ազգային, բովանդակությամբ սոցիա-

*լիստական կուլտուրայի ուղղակի բարգավաճումը ազգային ռեսպուբլիկաներում, նշանակում են ազգային բարձրորակ մասնագիտական կադրերի ստեղծում, որոնք իրենց ձեռքն են վերցրել և հաջողությամբ կենսագործում են ռեսպուբլիկաների տնտեսական և կուլտուրական ողջ կյանքի վարումը։ Միայն 15 տարվա ընթացքում՝ 1940—1955 թվականներին, Ղազախստանում բարձրագույն կրթություն ունեցող մասնագետների թիվն ավելացավ 3,8 անգամ, Կիրգիզիայում՝ 4,8 անգամ, Տաջիկստանում և Մոլդավիայում՝ 3,4 անգամ, Թուրքմենիայում՝ 3,3 անգամ, Էստոնիայում գրեթե 3 անգամ և այլն։ Մեծ են Հայկական ռեսպուբլիկայի նվաճումները բարձրագույն կրթությամբ կադրեր պատրաստելու ուղղությամբ։ Մինչռևոլյուցիոն շրջանում հայ ժողովուրդը չուներ ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, իսկ այժմ ռեսպուբլիկայում գործում են տասնչորս ստացիոնար և հեռակա բարձրագույն ուսումնական հաստատություններ, որտեղ սովորում և մասնագիտություն են ձեռք բերում մոտ 20 հազար ուսանող։ Հայկական ՍՍՌ բուհերն ավարտած հազարավոր մասնագետներ այժմ աշխատում են ռեսպուբլիկայի արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի և այլ բնագավառներում։ Բավական է ասել, որ միայն 2 տարվա ընթացքում՝ 1953—1955 թվականներին, ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատությունները տվել են 4444 մասնագետ։*

*Ազգային ռեսպուբլիկաներում կուլտուրայի վերելքը և ինտելիգենցիայի ստվար բանակի ստեղծումը հնարավորություն տվեց վերացնելու նաև ազգությունների միջև եղած փաստական անհավասարությունը այդ բնագավառներում։ Միութենական ռեսպուբլիկաներն այժմ իրենց բարձրագույն կրթությամբ մասնագիտական կադրերի առատությամբ և կուլտուրայի բարձր մակարդակով առաջ են անցել Եվրոպայի շատ կապիտալիստական երկրներից։*

*Ի՞նչ նշանակություն ունեն այս բոլորը տնտեսության ղեկավարման դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի կենսագործման տեսակետից։ Այն նշանակությունը, որ այդ սկզբունքի կիրառման արդյունքներն այժմ շատ ավելի արդասալի կլինեն։ Որքան բարձր լինի միութենական ռեսպուբլիկաների տնտեսական հզորությունը, ազգային կադրերի կուլտուրական և մասնագիտական մակարդակը, նրանց արտադրական և տնտեսության կառավարման փորձը, այնքան ավելի կաճի Սովետական Միության հզորությունը։ Այնպես, ինչպես մեծ սիմֆոնիկ նվագախմբի հզորությունը, նրա բարձր երաժշտական կատարողականության մակարդակը, ձայների ներդաշնակությունը կախված են ամեն մի երաժշտի կատարելության աստիճանից, այդպես էլ ամբողջ Սովետական Միության տնտեսական արագ զարգացումը կախված է միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների, երկրամասերի և մարզերի տնտեսական և կուլտուրական բարձր զարգացումից և նրանց միահամուռ գործողությունից։ Իսկ Սովետական Միության հզորությունը հենց վիթխարի չափով խթանում է ազգային ռեսպուբլիկաների և մարզերի վերելքը։*

*Միութենական ռեսպուբլիկաների տնտեսական համաչափ գործունեությունը զարգացնելու նպատակով, ՍՄԿԿ XX համագումարի ընդունած կարևոր որոշումներից մեկն էլ՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Ազգությունների Սովետում Տնտեսական հանձնաժողովի ստեղծման պահանջն էր։ Գերագույն Սովետի 1957 թվականին կայացած 6-րդ սեսիան ստեղծեց Ազգությունների Սովետի Տնտեսական այդ հանձնաժողովը, բաղկացած հանձնաժողովի նախա-*



*գահից և 30 անդամներից՝ երկուական ներկայացուցիչ միութենական ամեն մի ռեսպուբլիկայից։ Տնտեսական հանձնաժողովի նպատակն է իր գործունեության ընթացքում, հաշվի առնելով ռեսպուբլիկաների առանձնահատկությունները, մշակել բոլոր ռեսպուբլիկաների հավանությունը գտնող, նրանց սպեցիֆիկ և ՍՍՌՄ ընդհանուր շահերն արտահայտող տնտեսական և կուլտուրական միջոցառումներ և դրանք ներկայացնել Գերագույն Սովետի քննությանը։ Այս միջոցառումը, որ Սովետական Միության պետական, տնտեսական և կուլտուրական գործունեության դեմոկրատիայի ավելի լայն ընդարձակում է, Պարտիային և Սովետական կառավարությանը հնարավորություն կընձեռի ավելի լավ կոորդինացնելու բոլոր ռեսպուբլիկաների տնտեսական և կուլտուրական շահերը և դրանով իսկ խթանելու ՍՍՌՄ ամբողջությամբ վերցրած էկոնոմիկայի և կուլտուրայի նոր վերելքը։*

*Էկոնոմիկայի և կուլտուրայի ասպարեզում Սովետական Միության ձեռք*
*բերած պատմական խոշոր նվաճումները չեն կարող դափնիների վրա հանգ-*
*չելու տրամադրություններ ստեղծել սովետական մարդկանց մեջ։ Պատմու-*
*թյունը նոր, է՛լ ավելի վիթխարի խնդիրներ է դրել մեր երկրի առջև։ Մեզ*
*անհրաժեշտ է իրականացնել պարտիայի XX համագումարի կողմից ընդուն-*
*ված վեցերորդ հնգամյակի վիթխարի խնդիրները և նոր, վճռական քայլ կա-*
*տարել կոմունիզմի կառուցման ճանապարհին։ Մեզ անհրաժեշտ է բնակչու-*
*թյան մեկ շնչին ընկնող արտադրանքի թողարկման տեսակետից, կարճ ժամա-*
*նակամիջոցում հասնել կապիտալիստական առավել զարգացած երկրներին,*
*անցնել նրանց և մեր երկրում ստեղծել մթերքների աննախընթաց առատու-*
*թյուն։ Այդ խնդիրը մեր երկիրը կարող է և պետք է լուծի։*
*Դրա երաշխիքը ամենից առաջ մեր էկոնոմիկայի զարգացման բարձր*
*տեմպերն են։ Սովետական Միությունն իր գոյության մոտ 40 տարվա ընթաց-*
*քում տնտեսական զարգացմամբ առաջ անցավ կապիտալիստական բազմաթիվ*
*երկրներից և արդյունաբերության արտադրության մակարդակով այժմ երկ-*
*րորդ տեղն է գրավում ամբողջ աշխարհում։ Նախառևոլյուցիոն ժամանակա-*
*շրջանի հետ համեմատած՝ ՍՍՌՄ արդյունաբերության ծավալը 1957 թվա-*
*կանին աճեց ավելի քան 30 անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝*
*4 անգամ։ Հաջողությամբ իրականացվեցին 6-րդ հնգամյակի առաջին տարվա*
*պլանները։ Արտադրության միջոցների արտադրությունը 1956 թվականին*
*ավելացավ 11,4 տոկոսով, իսկ սպառման միջոցների արտադրությունը՝ 9,4*
*տոկոսով։ Անցյալ տարի մինչև այժմ չտեսնված հաջողություններ ձեռք բեր-*
*վեցին հացահատիկի արտադրության գծով, մթերվեց մեկ միլիարդ փթով*
*ավելի շատ հացահատիկ, քան 1955 թվականին, կամ նախորդ որևէ տարում։*
*Նույն 1956 թվականին զգալիորեն ավելացավ տեխնիկական կուլտուրաների*
*բերքը, աճեցին անասնաբուծության մթերքները և մասնավորապես կաթի ար-*
*տադրությունը։ Այս բոլորի հետևանքով բարձրացավ սովետական մարդկանց*
*կենսամակարդակը։*
*Աճման բարձր տեմպերը կարևոր գրավական են մեր երկրի առջև կանգ-*
*նած վերոհիշյալ պատմական խնդիրները լուծելու համար։*
*ՍՍՌՄ առջև կանգնած գլխավոր տնտեսական խնդրի լուծման երաշխիք*

*է նաև այն, որ Սովետական Միությունն ունի բնական հարստությունների
անսպառ պաշարներ: Անընդգրկելի է մեր երկրի տերիտորիան: Իր մեծու-
թյամբ նա առաջին տեղն է գրավում ամբողջ աշխարհում: Այս վիթխարի տե-
րիտորիայի ընդերքում կան արդյունաբերական հումքի և վառելիքի 26 ամե-
նակարևոր տեսակի պաշարներից 20-ը, մինչդեռ ԱՄՆ-ն ունի միայն 10
տեսակ: Դրանց մեջ մտնում են՝ երկաթը, ածուխը, նավթը, մարգանեցը, ցին-
կը, պղինձը, պլատինը, տորֆը, անտառանյութը, բամբակը, փուշը և այլն:*

*Մեր առաջընթացի երաշխիք է հանդիսանում, այնուհետև, հնգամյակների
տարիներին ստեղծված հզոր ինդուստրիան, որն այժմ առավել չափով հա-
գեցվում է նորագույն տեխնիկայով և որը ընդունակ է արտադրելու սարքա-
վորումների և մեքենաների ժամանակակից ուզած տեսակը, ուզած քանա-
կությամբ՝ սկսած ամենահզոր կատարելագործված մեքենաներից, մինչև ամե-
նանուրբ չափող գործիքները:*

*Մեր տնտեսական առաջընթացի երաշխիքը, վերջապես, հանդիսանում է
ՍՍՌՄ հերոսական բանվոր դասակարգը, որ ծառայողների հետ միասին այժմ
կազմում է 50 միլիոն մարդ: Բանվոր դասակարգը իր սխրագործությամբ և
ստեղծագործական անսպառ եռանդով, արտադրության տաղանդավոր կազ-
մակերպիչներով սովետական գիտնականների հետ միասին ստեղծել է մեր
սոցիալիստական արդյունաբերությունը:*

*Այսպիսով, մենք բոլոր երաշխիքներն ունենք պատմության կողմից մեր
երկրի առջև դրված վիթխարի տնտեսական խնդիրները համեմատաբար կարճ
ժամանակամիջոցում իրականացնելու համար:*

*Մեզ մնում է՝ ավելի մեծ հաջողությամբ օգտագործել* սոցիալիստա-
կան համակարգի *այդ առավելությունները, է՛լ ավելի կատարելագործել
սոցիալիստական տնտեսավարության մեթոդները, կառավարման արվեստը
տնտեսության բոլոր բնագավառներում: Այս է կարևորը ներկայումս:*

*Զարգացման ներկա շրջանն առաջին պլանի վրա է դնում երկրի տնտե-
սական կառավարման կազմակերպական նոր ձևերի, ղեկավարման նոր եղա-
նակների մշակման հարցերը:*

*Կյանքը շարունակ նորանոր հասունացած հարցեր է առաջադրում տնտե-
սական ղեկավարման ձևերն է՛լ ավելի կատարելագործելու ասպարեզում:
«Արդյունաբերության զարգացմանը զուգընթաց,— ասված է ՍՄԿՊ Կենտրո-
նական Կոմիտեի Փետրվարյան պլենումի որոշման մեջ,— ավելի ու ավելի
հրատապ կերպով է առաջ քաշվում այն հարցը, թե արդյունաբերության
ղեկավարման կազմակերպական ձևերի ասպարեզում արդյոք շարունակե՞լ
տեխնիկական, տնտեսական և վարչական կառավարման է՛լ ավելի մասնատ-
ման գծով ընթանալը՝ կենտրոնում ստեղծելով նորանոր մասնագիտացված
ճյուղային մինիստրություններ և գերատեսչություններ, թե՞ որոնել ժողովրդա-
կան տնտեսության կառավարման ավելի ճկուն ձևեր, որոնք ավելի լրիվ հաշվի
առնեն զարգացման տվյալ էտապի առանձնահատկությունները»:*

*Ինչպես հայտնի է, թե՛ 1956 թվականի Դեկտեմբերյան պլենումը և թե՛,
մասնավորապես, 1957 թվականի Փետրվարյան պլենումը կարևոր որոշումներ
ընդունեցին արդյունաբերության և շինարարության ղեկավարման կազմակեր-
պական ձևերը վերակառուցելու մասին: Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն
տնտեսական շինարարության անցած ժամանակամիջոցում կուտակված հա-
րուստ փորձի խոր վերլուծության հիման վրա նշեց կառավարման կազմա-*



*կերպական ձևերի հետագա վերակառուցման, կատարելագործման նոր ուղ-
ղությունը, դրա հրամայական անհրաժեշտությունը:*

*Պլենումը նշեց, որ արդյունաբերության և շինարարության կառավարման
հիմքը պետք է լինի կենտրոնացված պետական ղեկավարման զուգակցումը
կառավարման մեջ տեղական տնտեսական, պարտիական և արհմիութենական
կազմակերպությունների դերի բարձրացման հետ, տնտեսական շինարարու-
թյան բնագավառում աշխատավոր մասսաների ավելի լայն և ակտիվ մաս-
նակցության հետ:*

*Մաքսիմալ չափով զուգորդել կենտրոնացած պետական ղեկավարությունը
տեղական տնտեսական և հասարակական կազմակերպությունների, աշխա-
տավոր մասսաների, անմիջական արտադրողների ամենաակտիվ գործունեու-
թյան և նախաձեռնության հետ, հենց սա է տնտեսության ղեկավարման լենին-
դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը, տնտեսության ղեկավարման լենին-
յան արվեստը:*

*Այս տեսակետից ի՞նչ թերություններ կան արդյունաբերության և շինա-
րարության ներկայումս գոյություն ունեցող կառավարման ձևերում:*

*Ամենից առաջ այն թերությունը, որ տնտեսության պլանավորման պրակ-
տիկայում Պետպլանը, Պետտնտհանձնաժողովը, ինչպես նաև մինիստրու-
թյունները, ինչպես ընդգծեց Դեկտեմբերյան պլենումը, անբավարար են
ուսումնասիրում արտադրության առանձին ճյուղերի վիճակը, թույլ են կապ-
ված միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների, երկրամասերի և մարզերի,
ձեռնարկությունների, գիտական հիմնարկների հետ, վատ գիտեն նրանց գոր-
ծունեությունը և այդ պատճառով հաճախ լուրջ վրիպումներ և սխալներ են
թույլ տալիս արտադրության, կապիտալ շինարարության և նյութա-մատակա-
րարման պլանները մշակելիս: Չի կարելի մոտիկից չգիտենալ և հաշվի չառնել
միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների, երկրամասերի և մարզերի ար-
տադրական ձեռնարկությունների կողմից տնտեսությունը պլանավորելու,
կազմակերպելու, արտադրությունը կառավարելու անցյալ տասնյակ տարինե-
րին կուտակված փորձը:*

*Այնուհետև, չի կարելի հաշվի չառնել տեղական առանձնահատկություն-
ները և ղեկավարել ընդհանուր շաբլոնով: Այս առանձնահատկությունների
անպայման հաշվառումը և այդ հիման վրա ընդհանուր միութենական պլան-
ների մշակումը մինիմումի կհասցնի վրիպումներն ու սխալները ժողովրդա-
կան տնտեսության պլանային ղեկավարության գործում:*

*Վ. Ի. Լենինը 1922 թվականին գրած իր ««Երկակի» ենթարկման և օրինա-
կանության մասին» հայտնի հոդվածում ուղղակի մատնանշում էր այդ: «Հո-
ղագործությունը Կալուգայի նահանգում նույնը չի, ինչ Կազանի նահանգում:
Նույնը վերաբերում է ամբողջ արդյունաբերությանը: Նույնը վերաբերում է
ամբողջ վարչարարությանը կամ կառավարմանը: Բոլոր այս հարցերում հաշվի
չառնել տեղական առանձնահատկությունները՝ կնշանակեր ընկնել բյուրոկրա-
տական ցենտրալիզմի մեջ...» (Երկեր, հատ. 33, էջ 430):*

*Ինչ խոսք, որ տնտեսական տարբերությունները ՍՍՌՄ առանձին մար-
զերի և ռեսպուբլիկաների մակարդակի միջև զգալի չափով վերացել են և մեր
հետագա զարգացման ընթացքում այդ համահարթումն ավելի կուժեղանա,
բայց ներկայումս այդ առանձնահատկությունների և տեղական նախաձեռնու-*

*թյան ամեն մի անտեսումը բացասաբար կանդրադառնա մեր տնտեսության պլանային ղեկավարման վրա:*

*Այնուհետև, արդյունաբերության կառավարման ներկայիս գործող բազմաթիվ ճյուղային մինիստրությունների գոյության ամենախոշոր թերություններից մեկը, ինչպես նշեց ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան պլենումը, գերատեսչական մեծաթիվ պատնեշների առկայությունն է: Այդ գերատեսչական պատնեշները խանգարում են ճիշտ և ռացիոնալ կերպով օգտագործել եղած արտադրական հնարավորությունները, խելացիորեն իրականացնել արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը: Նրանք դժվարացնում են ռեսպուբլիկաների, երկրամասերի և մարզերի կոմպլեքսային զարգացումը: Այսպիսով, տնտեսական ռայոնի՝ ռեսպուբլիկայի, երկրամասի, մարզի կոմպլեքսային զարգացումը տրոհվում, մասնատվում է բազմաթիվ գերատեսչությունների միջև, որոնք հաճախ տանում են դեպի տնտեսական մեկ շրջանում գտնվող արդյունաբերության տարբեր ճյուղերի նորմալ կապերի թուլացումը, տնտեսական միասնության խախտմանը տվյալ շրջանում:*

*Կենտրոնական Կոմիտեի օրգան «Պրավդան» փաստեր հրապարակեց այն մասին, թե ինչպես դեռ մինչև այժմ էլ մեկ գերատեսչության ձեռնարկությունները մետաղյա իրեր են տանում Ուրալից Հարավ, իսկ մի այլ գերատեսչության ձեռնարկությունները նույն մետաղյա իրերը Հարավից Ուրալ են բերում:*

*Նույն երևույթը նկատվում է նաև մեր ռեսպուբլիկայում: Նորերս տեղի ունեցած Երևան քաղաքի պարտիական ակտիվի ժողովում, ինչպես Փետրվարյան պլենումի արդյունքների մասին զեկուցող Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Թովմասյանը, նույնպես և ելույթ ունեցող ընկերները որոշ փաստեր բերեցին ռեսպուբլիկայի կյանքում գոյություն ունեցող նման բացասական երևույթների մասին: Այսպես, օրինակ, Երևանի նորակառույցները տարեկան տասնյակ հազար տոննա ցեմենտ են ստանում Վրաստանից և նույն այդ ժամանակ «Արարատի» ցեմենտի գործարանը մեծ քանակությամբ ցեմենտ է ուղարկում Վրաստան:*

*Այս երևույթը հետևանք է այն բանի, որ տնտեսական տվյալ շրջանում ստեղծվել են բազմաթիվ մինիստրություններ և առանձին գերատեսչություններ, որոնք գործում են միմյանցից անկախ և անտեղյակ, այդ պատճառով էլ տնտեսական շրջանի միասնական կոմպլեքսային զարգացումը, դեմ առնելով գերատեսչական պատնեշներին, մասնատվում է, ապարատները ուռճանում են, ստեղծվում են մատակարարման և վաճառահանման զուգահեռ, ոչնչով չարդարացվող շատ կազմակերպություններ, բեռների հանդիպական փոխադրումներ և այլն, որոնք միջոցների անտեղի ծախսումների, տրանսպորտի ոչ ռացիոնալ շահագործման, կադրերի աննպատակ օգտագործման և ժամանակի ավելորդ վատնումների պատճառ են դառնում:*

*Երևանի պարտիական ակտիվի նույն ժողովում նշվեց, որ միայն Երևան քաղաքի 30 մատակարարող կազմակերպություններ ունեն իրենց գրասենյակները, իրենց առանձին գերատեսչական շահերը: Այդ կազմակերպություններում աշխատում են ավելի քան 1500 մարդ: Նեղ գերատեսչական շահերն այն բացասական, աննորմալ վիճակն են ստեղծում ռեսպուբլիկայում, որ մի շարք ձեռնարկություններ հումքի և կիսաֆաբրիկատների 2—3 տարվա պաշար են*



*կուտակել, այն դեպքում, երբ այլ գործարաններ դրանց խիստ կարիք են զգում:*

*Զուգահեռաբար գործող մինիստրությունների առկայության հետևանքով, օրինակ, Հայկական ռեսպուբլիկայի կարի արդյունաբերության ձեռնարկություններ գոյություն ունեն թե՛ թեթև արդյունաբերության, թե՛ տեղական արդյունաբերության և թե Հայարդխորհրդի սիստեմում, ըստ որում հաճախ այդ ձեռնարկություններն աշխատում են թերբեռնվածությամբ և անորակ ու ո՛չ անհրաժեշտ արտադրանք են թողարկում: Նույնպիսի զուգահեռականություն գոյություն ունի նաև կահույքի արտադրության բնագավառում, Անտառային արդյունաբերության և Տեղական արդյունաբերության մինիստրությունների միջև:*

*Նույնը տեղի ունի նաև շինարարության գծով: Միևնույն ռեսպուբլիկայում կամ շրջանում շինարարության գործի մասնատվածությունը մինիստրությունների և գերատեսչությունների միջև ստեղծում է բազմաթիվ մանր կազմակերպություններ, առաջացնում է պետական միջոցների փոշիացում, նրանց սառեցում և շինարարության թանկացում:*

*Տնտեսության կառավարման ներկայումս գոյություն ունեցող պայմաններում, բազմաթիվ մինիստրությունների և գերատեսչությունների կենտրոնական ապարատներում մեծ թվով որակյալ մասնագետներ և տաղանդավոր կազմակերպիչներ են նստած: Մինչդեռ արտադրությունը, որտեղ նյութական հարստություն է ստեղծվում և կենդանի գործի են վերածվում ժողովրդատնտեսության պլանները, մեծ կարիք ունի հենց այդպիսի կադրերի՝ գործիմաց, պրակտիկան լավ հասկացող կազմակերպիչների, ինժեներների և տեխնիկների: Նրանց տեղափոխումը դեպի արտադրական ձեռնարկությունները՝ մեր էկոնոմիկայի զարգացման գործում խոշոր դրական նշանակություն կունենա:*

*Ելնելով ժողովրդական տնտեսության հետագա զարգացման շահերից և հաշվի առնելով արդյունաբերության և շինարարության կառավարման ձևերի վերոհիշյալ թերությունները, ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան պլենումը որոշում ընդունեց՝ վերակառուցել, բարելավել արդյունաբերության և շինարարության կառավարման ձևերն ու եղանակները բոլոր օղակներում, ներառյալ նրա բուն հիմքը՝ արտադրական ձեռնարկությունը:*

*Կառավարման ձևերի կատարելագործման և բարելավման էությունն այն է, որ արդյունաբերական ձեռնարկությունների և շինարարական օբյեկտների օպերատիվ ղեկավարման աշխատանքը մինիստրություններից և գերատեսչություններից փոխադրվեն տեղերը, հիմնական տնտեսական շրջանները, նրանց մոտեցումը արտադրական ձեռնարկություններին: Կառավարման տվյալ ձևի կիրառումը, օպերատիվ, կոնկրետ կդարձնի արտադրության ղեկավարությունը, հնարավորություն կտա կառավարման գործում ներգրավել աշխատավորական լայն մասսաներին, ուշադիր կերպով ունկնդրել նրանց, հաշվի առնել նրանց խելացի, արտադրության բարձրացմանը նպաստող առաջարկություններն ու դիտողությունները և արագորեն կենսագործել դրանք:*

*«Արդյունաբերության և շինարարության կառավարման նոր կառուցվածքը մտցնելը,— ասված է Փետրվարյան պլենումի որոշման մեջ,— թույլ կտա զգալիորեն ավելի լավ կազմակերպել կոոպերացումը, ավելի լրիվ օգտագործել ձեռնարկությունների արտադրական կարողություններն ու կապիտալ շինարա-*

*րության համար հատկացվող միջոցները, ավելի արագ վերացնել ոչ ռացիո-
նալ փոխադրումները: Դա նաև հնարավորություն կտա վերացնել կառավար-
ման ավելորդ օղակները, կանոնավորել ներկայումս խճճված տնտեսական
շատ հարցեր, մասնավորապես այնպիսի բացառիկ կարևոր հարց, ինչպիսին
ձեռնարկությունների և կառույցների նյութա-տեխնիկական մատակարա-
րումն է»:*

*Արդյունաբերության և շինարարության կառավարումը բարելավելու վերո-
հիշյալ հիմնական ուղղությունից ելնելով, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի
Փետրվարյան պլենումը Կենտկոմի Նախագահությանը և ՍՍՌՄ Մինիստրների
Սովետին հանձնարարեց* կոնկրետ առաջարկներ *մշակել արդյունաբերության
և շինարարության ղեկավարումը վերակառուցելու վերաբերյալ: Հաշվի առնե-
լով հարցի ամբողջ կարևորությունը և նրա համապետական մեծ նշանակու-
թյունը՝ պլենումը որոշեց մշակել կոնկրետ միջոցառումներ և այն ներկա-
յացնել ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայի քննությանը:*

*Պլենումը Կենտկոմի նախագահությանը և Մինիստրների Սովետին հանձ-
նարարեց՝ կոնկրետ միջոցառումները մշակելիս ելնել այն բանից, որ է՛լ
ավելի բարձրանա Պետպլանի դերը ժողովրդական տնտեսության ղեկավարման
գործում և Պետական տնտեսական հանձնաժողովի գործունեությունը վերա-
կառուցել այն հաշվով, որ նա է՛լ ավելի կատարելագործի արդյունաբերության
և շինարարության օպերատիվ ղեկավարությունը, ինժեներա-տեխնիկական
ղեկավարման մակարդակը և տեխնիկական ճիշտ քաղաքականության անցկա-
ցումը համապետական մասշտաբով: Այնուհետև, պլենումը Կենտկոմի Նախա-
գահությանը և Մինիստրների Սովետին հանձնարարեց կոնկրետ միջոցները
մշակելիս ելնել այն բանից, որ առավելապես բարձրացվի ֆինանսական օր-
գանների դերը միջոցների մոբիլիզացման գործում, ապահովվի պլանավորող
և ֆինանսական օրգանների վերահսկողությունը՝ համապետական շահերն ու
պետական կարգապահությունը պահպանելու գործում և բարելավվի պետա-
կան վիճակագրության ամբողջ սիստեմը:*

*Այս դիրեկտիվ ցուցումները, որոնք պետք է հիմք հանդիսանան արդյու-
նաբերության և շինարարության ղեկավարման վերակառուցման կոնկրետ
միջոցներ մշակելու ընթացքում, չեն կարող չտանել դեպի պլանային սկզբուն-
քի հետագա ամրապնդումը սոցիալիստական էկոնոմիկայում և կարագացնեն
մեր երկրի առաջընթացը կոմունիզմի ճանապարհով:*

---

# ՊԼԵԽԱՆՈՎԻ ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ՀԱՅԱՑՔՆԵՐԸ

## *Գ. ՇԱՂԳԱՄՅԱՆ*

*Սխալ կլիներ Գ. Վ. Պլեխանովի՝ որպես թեորետիկ-տնտեսագետի բնու-
Սխալ կլիներ Գ. Վ. Պլեխանովի՝ որպես թեորետիկ-տնտեսագետի այս կամ այն
թագրությունը սահմանափակել միայն քաղաքատնտեսության այս կամ այն
կատեգորիայի նրա ըմբռնման շարադրմամբ, այն բանի պարզաբանմամբ, թե
որպիսի հաջողությամբ էր նա հանրամատչելի դարձնում մարքսյան քաղաքա-
տնտեսությունը: Անհրաժեշտ է նաև գտնել նրա փիլիսոփայական հարուստ
ժառանգությունը:*

*Պլեխանովն իր տնտեսագիտական հայացքները գերազանցապես զար-
գացնում էր ոչ թե դրական շարադրանքի ձևով, այլ հակամարքսիստական
թեորիաների քննադատության կարգով, իր քաղաքական դիրքավորումները
հիմնավորելու կարգով:*

*Մեր նպատակն է այս հոդվածում խիստ հակիրճ ձևով ծանոթացնել ըն-
Մեր նպատակն է այս հոդվածում խիստ հակիրճ ձևով ծանոթացնել ըն-
թերցողին նրա տնտեսագիտական հայացքների առավել կարևորագույնների
հետ միայն:*

*Պլեխանովի համար բնորոշ է ոչ միայն մարքսիստական տնտեսագիտա-
Պլեխանովի համար բնորոշ է ոչ միայն մարքսիստական տնտեսագիտա-
կան թեորիայի պրոպագանդան, նրա պաշտպանությունը, այլև այն, որ նրա
անվան հետ է կապված մարքսյան քաղաքատնտեսության սկզբնավորումը
Ռուսաստանում՝ վերջինիս էկոնոմիկայի ու նրա զարգացման նկատմամբ
մարքսյան մեթոդի կիրառման իմաստով: Պլեխանովը քննադատեց ուտոպիա-
կան սոցիալիզմը, մանրբուրժուական ռեակցիոն սոցիալիզմն Արևմուտքում և
Ռուսաստանում: Քննադատելով ուտոպիական քաղաքատնտեսությունը Ռու-
սաստանում՝ նա խիստ սահմանազատեց ուտոպիական քաղաքատնտեսու-
թյունը մարքսյան քաղաքատնտեսությունից:*

*Պլեխանովն առաջինն էր, որ ռուս ընթերցողներին ծանոթացրեց Մարքսի
արժեքի թեորիային: «Մեր տարաձայնություններում» նա հանդես եկավ
արդեն որպես հասունացած մարքսիստ-տնտեսագետ՝ իր հայացքների ավելի
սիստեմատիկ շարադրմամբ և Մարքսի տնտեսական ուսմունքի հուզող մեկ-
նաբանությամբ:*

### ՔԱՂԱՔԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՌԱՐԿԱՅԻ ՄԱՍԻՆ

*Պլեխանովը քաղաքատնտեսությունը համարում է պատմական գիտու-
թյուն: «Մարքսիզմի հիմնական հարցերում» նա ասում է. «Ժամանակակից
մատերիալիզմի մշակման գործում ամենագլխավոր ծառայությունն, անտարա-
կույս, պատկանում է Կարլ Մարքսին և նրա բարեկամ Էնգելսին: Այդ աշ-
խարհայացքի պատմական և տնտեսական կողմերը, այսինքն՝ այսպես կոչ-
ված պատմական մատերիալիզմը և նրա հետ սերտորեն կապված՝ քաղաքա-
տնտեսության խնդիրների, մեթոդի ու կատեգորիաների նկատմամբ և հասա-*

բակության, իսկ առանձնապես կապիտալիստական հասարակության տնտեսական զարգացման նկատմամբ հայացքների համակցությունը, իրենց հիմունքներում գրեթե բացառապես Մարքսի և Էնգելսի գործն են» (հատ. 18, էջ 182)։ Նման ճիշտ բնորոշում տալով մարքսիզմի հիմնադիրների մեծագույն արժանիքին՝ Պլեխանովն ասում է. «Ըստ նոր թեորիայի մարդկության պատմական շարժումը որոշվում է արտադրողական ուժերի զարգացմամբ, որոնք փոփոխությունների են ենթարկում տնտեսական հարաբերությունները։ Ուստի հարկ է լինում ամեն մի պատմական հետազոտություն սկսել տվյալ երկրի արտադրողական ուժերի և տնտեսական հարաբերությունների վիճակի ուսումնասիրությունից (հատ. 7, էջ 231)։

Ահա մարքսյան այս մեթոդն էր, որ ռուսական իրականության մեջ առաջին անգամ կիրառեց Պլեխանովը։ Տնտեսական կյանքի զարգացման մեջ նա փնտրեց գիտական ճանաչման բանալին, խույս տալով ուտոպիական հորինվածքներից։ Հենց այդ հարցում էլ Պլեխանովն առաջ անցավ Չերնիշևսկուց։

Մարքսի հետևորդ Պլեխանովի էական ծառայությունն այն էր, որ նա հասարակական-տնտեսական հարցերի վերլուծության հիման վրա սպառիչ պատասխան տվեց Չերնիշևսկու հռչակավոր «Ինչ անել»-ին։

Պլեխանովը դիալեկտիկական մատերիալիզմի ոգով մոտեցավ քաղաքատնտեսության՝ որպես գիտության առարկայի ու մեթոդի բնորոշմանը։

Քաղաքատնտեսության առարկայի նրա սահմանումը, միանգամայն հակառակ է Չերնիշևսկու տված սահմանմանը։ Չերնիշևսկին «հարստություն» հասկացողությունը բացառում է քաղաքատնտեսությունից, որովհետև այդ հարստությունը հիմնված է նրան առելի անաշխատ եկամտի՝ շահույթի կատեգորիայի վրա։ Մինչդեռ, ըստ Պլեխանովի, «Քաղաքատնտեսությունը հասարակության տնտեսական զարգացման գիտություն է» (հատ. 6, էջ 69)։

Ելնելով վերոհիշյալ սկզբունքից՝ նա գրում է, որ «Բուրժուական քաղաքատնտեսությունը ուսումնասիրում էր բուրժուական կարգը՝ նրա պատրաստի ավարտուն ձևով, որը նա համարում էր անփոփոխ։ Իսկ ժամանակակից քաղաքատնտեսությունն ուսումնասիրում է բուրժուական կարգը՝ զարգացման տեսանկյունից, նրա ծագման և ոչնչացման տեսակետից» (նույն տեղում, էջ 69)։

Այս հակիրճ բնութագրման մեջ դրսևորվում է Պլեխանովի վերաբերմունքը բուրժուական քաղաքատնտեսությանը և քաղաքատնտեսության առարկայի նրա բնորոշումը։

«Սուբյեկտիվիստներ» Միխայլովսկու, Կարեևի և Ընկ. դեմ մղած իր բանավեճում Պլեխանովն ընդգծում է քաղաքատնտեսության պատմական բնույթը։ Եթե տնտեսական պայմաններն են պատմության հիմքը, ապա քաղաքատնտեսությունը ամբողջովին պատմական է։

Այնուհետև, Պլեխանովն ասում է, որ Ռիկարդոն, մինչև ուղն ու ծուծը լինելով բուրժուա, բավականաչափ խելք ուներ հասկանալու համար աշխատանքի և կապիտալի շահերի տրամագծորեն հակադիր լինելը, իսկ Սիսմոնդին՝ վերջին տնտեսագետ բուրժուան, բավականաչափ զգացմունք ուներ ողբալու համար այն հակամարտությունը, որ կար աշխատանքի և կապիտալի միջև։ Պլեխանովն ընդգծում է, որ հետռիկարդոյական քաղաքատնտեսությունը վեր է ածվում կապիտալիստական կարգի ջատագովության, մի կարգ, որի ներքին արատներն արդեն տեսնում էին կլասիկ տնտեսագետները։ Բուրժուական տնտեսագետները «օբյեկտիվ և խաղաղ մտածողներից դարձել են կապի-



տալի մարտնչող պաշտպաններ ու պահակներ, որոնք իրենց ամբողջ ջանքերն ուղղում են այն բանին, որպեսզի ռազմական նպատակներով վերակառուցեն գիտության շենքը» (հ. 2, էջ 63—64)։

## ԱՐԺԵՔԻ ԹԵՈՐԻԱՅԻ ՄԱՍԻՆ

Գ. Վ. Պլեխանովը քաղաքատնտեսության հիմնական կատեգորիաները դիտում է ոչ թե աբստրակտ-մտահայեցողական տեսանկյունով՝ որպես իրարից անկախ զարգացող կատեգորիաներ, այլ հասարակության տնտեսական զարգացման պատմական ընթացքի հետ սերտորեն կապակցված։ Ուստի, նա ճիշտ է վարվում, երբ արժեքի և փողի վերլուծությունն սկսում է ապրանքից, ապրանքային տնտեսության, փոխանակության ծագումից։

Ապրանքային արտադրության զարգացումը Պլեխանովը համարում է մասնավոր սեփականության պատմական արդյունք։ «Ապրանքային արտադրությունը, ինչպես ամեն բան աշխարհում, ունի ոչ միայն վախճան, այլև սկիզբը։ Նա, իրեն հատուկ հակասությունների շնորհիվ, ոչ միայն նախապատրաստում է նոր հասարակարգ, այլև հենց ինքը, մի ժամանակ լինելով նոր, ծագել է իր նախորդի հակասություններից» (հատ. 1, էջ 304)։

Պարզ ապրանքային տնտեսությունը զարգանում է նախնադարյան համայնքից և բնատնտեսությունից։ Ապրանքային արտադրությունը զարգանում է միայն այն հասարակության ծոցում, ուր արտադրության միջոցները, հետևապես նաև նրա արդյունքները, կազմում են արտադրողի մասնավոր սեփականությունը։

Առանց այդ պայմանների, այսինքն՝ առանց արտադրության միջոցների ու արտադրողի աշխատանքի արդյունքների մասնավոր սեփականության, առանց աշխատանքի բաժանման նա չի պատկերացնում ապրանքային արտադրության ծագումը։

Պլեխանովը նշում է, որ բուրժուական հասարակության մեջ աշխատանքի բաժանումը հասել է շատ բարձր աստիճանի և Մարքսի աշխատությունների երևան գալով է միայն սպառիչ կերպով պարզվել աշխատանքի բաժանման դերն ու բնույթը։ Կոնկրետ օրինակներով պարզաբանելով այդ հարցը, Պլեխանովը նշում է, որ բուրժուական հասարակական բաշխման պայմաններում արտադրողները իրավականորեն միանգամայն անկախ են միմյանցից։ Ինչպես արտադրության միջոցները, այնպես էլ դրանց օգնությամբ պատրաստված արդյունքները կազմում են հենց արտադրողների մասնավոր սեփականությունը։ «Գործերի այդպիսի դրության պայմաններում փոխանակությունը հանդիսանում է միակ հասարակական կապը արտադրողների միջև։ Իր արտադրանքը շուկա հանելով և այլ արտադրանքների հետ փոխանակելով միայն արտադրողը հնարավորություն է ստանում բավարարելու իր սեփական պահանջմունքները» (նույն տեղում)։ Այդ եղանակով արդյունքները դառնում են ապրանքներ և որոշ համամասնությամբ փոխանակվում մեկը մյուսի հետ։ Փոխանակության մեջ ապրանքները դրսևորում են իրենց փոխանակային արժեքը։ Ընդսմին համահավասարվում է տարբեր ապրանքների արտադրության վրա ծախսված աշխատանքը։ «Ավելի ընդհանուր ձևով արտահայտելով այդ, կարելի է ասել, որ ապրանքների փոխանակային հարաբերությունները իրենցով արտահայտում են մարդկանց փոխհարաբերությունները արտադրության հասարակական պրոցեսում» (նույն տեղում, էջ 81)։

*Համառոտակիորեն շարադրելով Մարքսի ըմբռնումը հասարակականորեն
անհրաժեշտ աշխատանքային ժամանակի մասին, Պլեխանովն անցնում է
աշխատանքային արժեքի թեորիայի դեմ եղած առարկությունների քննարկ-
մանը։ Օրինակ, ասում էին, որ եթե ապրանքի արժեքը որոշվում է նրա ար-
տադրության վրա ծախսված աշխատանքով և եթե աշխատանքային ժամա-
նակը արժեքի ներքին չափանիշն է, ապա ինչո՞ւ դրանք իրենց փոխանակու-
թյան համար հատուկ ապրանքի՝ փողի կարիք են զգում։ Սխալ չէ՞ դա ար-
դյոք, կամ չարաշահում չէ՞ և այլն։ Պլեխանովը նկատի ունի Պրուդոնի առանց
փողի փոխանակման թեորիան։ Նա քննադատում է այդ թեորիան։*

*Բուրժուական հասարակության մեջ որևէ արտադրողի անհատական աշ-
խատանքը հասարակականորեն անհրաժեշտ ժամանակի նորմայի տակ դնելը
մարդկանց գիտակցական գործողությունների արդյունք չէ։ Այդ գիտակցա-
կանությունը չկա և չի կարող լինել, որովհետև բուրժուական հասարակու-
թյունը խարսխվում է հասարակական արտադրության որևէ պլանավորման
բացակայության վրա։ Այդ հասարակության մեջ արտադրողներն աշխատում
են իրենց սեփական ռիսկով և իրենց սեփական հայեցողությամբ, միմյանցից
անկախ։ Ուստի, ամբողջ հասարակական արտադրողական մեխանիզմի հետ
նրանցից ամեն մեկի աշխատանքի հարաբերությունը որոշվում է շուկայում
ըստ Մարքսի արտահայտության՝ մարդկանց թիկունքում, կույր տնտեսական
ուժի գործողությամբ (Նույն տեղում, էջ 83)։*

*Եվ քանի որ բուրժուական հասարակության մեջ արտադրողները չգիտեն
հասարակական պահանջմունքները ո՛չ քանակական, ո՛չ էլ որակական կող-
մից, ուստի և նրանց ամեն տեսակ վտանգ է սպասում շուկայում։ Այնտեղ
կպարզվի, որ արդյունքները արտադրված են շատ կամ քիչ, կամ պատահա-
բար այնքան, որքան հարկավոր է հասարակական պահանջմունքները բավա-
րարելու համար։*

*Պլեխանովը հանրամատչելի ձևով շարադրելով արտադրողների քաոսա-
յին վիճակը շուկայում, կոնկուրենցիան, եզրակացնում է՝ «գների տատանու-
մը ցույց է տալիս բուրժուական արտադրության անարխիկ վիճակը. բայց
միևնույն ժամանակ այն հանդիսանում է նրա կարգավորիչը, ընդմին միակ
և անհրաժեշտ կարգավորիչը» (Նույն տեղում, էջ 84)։*

*Արդյունքները կարող էին անմիջականորեն մեկը մյուսի հետ փոխանակ-
վել նրանց վրա ծախսված աշխատանքին համապատասխան, եթե արտադրու-
թյունը կազմակերպված լիներ պլանաչափորեն, եթե առանձին արտադրողի
աշխատանքը հասարակական բնույթ ունենար։ Բայց այնտեղ, ուր աշխա-
տանքը կրում է հասարակականորեն-անհրաժեշտ բնույթ, այնտեղ ապրանքների
փոխանակման հարկ չկա, չկա ո՛չ գնում, ո՛չ վաճառում,—ասում է Պլեխանո-
վը։ «Ապրանքի գինը նրա արժեքի փողային արտահայտությունն է միայն»,
բերելով հանրահայտ այդ բնորոշումը, Պլեխանովը ձգտում է պարզել, թե
ինչո՛ւ ապրանքների գները մշտապես տատանվում են և փոխանակման պրո-
ցեսում շեղվում են արժեքից։*

*Արժեքի վերաբերյալ ուսմունքը Պլեխանովը համարում է քաղաքատնտե-
սության ամեն մի թեորիայի փորձաքարը և արտադրության օրենքների գի-
տության հիմունքը։ Արժեքի սխալ ըմբռնումը առաջ է բերում ամենահնարա-
վոր սխալներ և անհնարին է դարձնում կապիտալիզմի էության ըմբռնումը։*

*Փոխանակային արժեքի միակ աղբյուրը Պլեխանովը համարում է աշ-*



*խատանքը, որի տևողությամբ էլ հենց չափվում է նրա մեծությունը։ «Փոխա-
նակային արժեքն արտահայտում է արտադրողների ամենահասարակ հա-
րաբերությունը արտադրության հասարակական պրոցեսում։ Մյուս կատեգո-
րիաները, ինչպես, օրինակ, կապիտալը, իրենցով արտահայտում են արդեն
շատ ավելի բարդ և ընդմին ածանցական հարաբերություններ, ուստի, նրանց
ճիշտ ըմբռնումը անհնարին է առանց արժեքի ճիշտ ըմբռնման» (Նույն տե-
ղում, էջ 104)։*

*Ինչպե՞ս է սահմանում Պլեխանովը արդյունքի սպառողական և փոխա-
նակային արժեքը։ «Խոսելով արդյունքի սպառողական արժեքի մասին՝ մենք
նկատի ունենք այն ծառայությունը, որ այդ արդյունքը մատուցում է ամբողջ
հասարակությանը կամ առանձին մարդուն. մինչդեռ նրա փոխանակային ար-
ժեքը որոշվում է... այն ծառայությամբ, որ ցույց է տրված արդյունքին նրա
արտադրման պրոցեսում» (հատ. 1, էջ 347)։*

*Աբստրակտ աշխատանքի մարքսյան ըմբռնումը միայն հնարավոր դարձրեց
աշխատանքային արժեքի գիտական ավարտը։ Մի այլ տեղ Պլեխանովը կրկին
անդրադառնալով Ռոդբերտուսի արժեքի թեորիային՝ գրում է. «Ուրեմն արժեքի
մասին Ռոդբերտուսի ուսմունքը տարբերվում է նույն առարկայի մասին
Մարքսի ուսմունքից։ Այո, այդ ուսմունքները միմյանցից շատ խիստ տար-
բերվում են... Ռոդբերտուսի մոտ ստացվում է այսպես. եթե ապրանքները
միմյանց հետ փոխանակվում են նրանց արտադրության վրա ծախսված աշ-
խատանքի քանակության համեմատ, ապա արժեքի օրենքը կիրառվում է իր
ամբողջ ուժով. եթե ոչ, ապա այդ օրենքի գործողությունը կարծես թե վերաց-
վում է» (հատ. 11, էջ 344)։ Աշխատանքային օրենքը ճիշտ է ապրանքների
ամբողջ զանգվածների համար, բայց փոխանակման յուրաքանչյուր դեպքում
գինը բոլորովին էլ չի համընկնում տվյալ ապրանքի վրա աշխատանքի ան-
հատական ծախսման հետ, ընդգծում է Պլեխանովը։*

## ՓՈՂԻ ՄԱՍԻՆ

*Այն հարցին, թե ինչ է փողը, Պլեխանովը պատասխանում է. «Դա նախ
և առաջ ապրանք է, ըստ որում միանգամայն յուրահատուկ ապրանք, որով
գնվում են մյուս բոլոր ապրանքները, մի ապրանք, որը ծառայում է որպես
արժեքի չափանիշ և արտահայտություն» (հատ. 2, էջ 263)։*

*Մեկ այլ տեղում նա մատնանշում է. ինչպես որ ապրանքի փոխանակա-
յին արժեքը չի որոշվում նրա առարկայական առանձնահատկություններով,
այնպես էլ ազնիվ մետաղների հատկությունները դրանց փող չեն դարձնում։
Դրանց ֆիզիկական հատկությունները «միայն այն են անում, որ նրանց ավելի
հարմար են դարձնում փողի դերի համար» (հատ. 6, էջ 107)։*

*«Փողի տնտեսական հատկությունը ոչ այլ ինչ է, եթե ոչ մարդկանց փոխ-
հարաբերությունները արտադրության հասարակական պրոցեսում» (հատ. 6,
էջ 106)։ Ռոդբերտուսը չէր հասկանում ապրանքի ու փողի միջև եղած ան-
հրաժեշտ կապը։ Ռոդբերտուսի այդ սխալը քննադատելիս Պլեխանովը ցույց
է տալիս ապրանքային շրջանառության բարդ պրոցեսի խոր իմացություն, մի
պրոցես, երբ անհատ արտադրողների արդյունքները փոխանակային արժեքի
միջոցով արդեն արտահայտում են հասարակականորեն-անհրաժեշտ աշխա-
տանքը։ Ապրանքների շրջանառությունը ապրանքներից մեկին առանձնաց-*

նում է որպես փող, որպես «ընդհանուր համարժեք», որի տարբեր քանակությունների մեջ մնացած բոլոր ապրանքներն արտահայտում են իրենց փոխանակային արժեքը։ Ապրանք-փողը դառնում է «հասարակական աշխատանքային ժամանակի մարմնացում», ի հակադրություն մնացած բոլոր ապրանքների, որոնց մեջ մարմնացած է տարբեր ապրանքարտադրողների անհատական աշխատանքային ժամանակը։ Ապրանքային տնտեսության մեջ անհատական աշխատանքը հավասարեցվում է հասարակականորեն-անհրաժեշտ աշխատանքին միայն ապրանքների շրջանառության միջոցով։

Ռոդբերտուսի պլեխանովյան քննադատության արժանիքն այն է, որ Մարքսի «Հավելյալ արժեքի թեորիաների» և «Կապիտալի» II և III հատորները լույս տեսնելուց առաջ, նա միանգամայն ճիշտ մոտեցավ «աշխատանքային փողերի» հարցին և ցույց տվեց այդ թեորիայի ռեակցիոն էությունը։

## ՀԱՎԵԼՅԱԼ ԱՐԺԵՔԻ ՄԱՍԻՆ

Բուրժուական կլասիկ քաղաքատնտեսությունը խճճվել էր աշխատանքային արժեքի պրոբլեմի մեջ, իսկ հավելյալ արժեքի գոյացման և նրա շահույթի փոխարկվելու հարցին՝ այդ քաղաքատնտեսությունը նույնիսկ ձեռնամուխ չեղավ։ Չունենալով ճիշտ թեորիա արժեքի մասին՝ նա չկարողացավ և հավելյալ արժեքի հարցի ճիշտ լուծումը տալ։ Ռիկարդոյի դպրոցը դեմ առնելով անլուծելի հակասությունների՝ տապալվեց հենց հավելյալ արժեքի հարցում։

Կլասիկ քաղաքատնտեսությունը չկարողացավ լուծել կապիտալիստական շահագործման էության հարցը այն պատճառով, որ նա աշխատուժը շփոթում էր աշխատանքի հետ, գտնում էր, որ բանվորը կապիտալիստին վաճառում է իր աշխատանքը, իսկ կապիտալիստը վճարում է նրա աշխատանքի արժեքը։ Եթե կապիտալիստը բանվորին վճարեր նրա ամբողջ աշխատանքի համար, ապա որտեղի՞ց կարող էր նա ստանալ հավելյալ արժեք։

Մարքսի հանճարեղ հայտնագործությունն այն էր, որ նա հստակ սահմանագիծ անցկացրեց աշխատուժի արժեքի և արժեք ստեղծող աշխատանքի միջև։ Իր այդ հայտնագործությամբ Մարքսը բացահայտեց կապիտալիստական շահագործման էությունը։ Հավելյալ արժեքի մարքսյան թեորիան, Էնգելսի և Լենինի դիպուկ բնորոշմամբ, հանդիսանում է նրա ամբողջ տնտեսական թեորիայի անկյունաքարը։

Պլեխանովը հիանալի հասկանում էր Մարքսի աշխատանքային արժեքի թեորիայի կապը հավելյալ արժեքի նրա թեորիայի հետ. «Արտադրության պրոցեսում աշխատողն իր աշխատանքով ստեղծում է արժեք, որը գերազանցում է նրա աշխատուժի գնման ծախսը կամ, որ նույնն է,— նրա աշխատավարձի արժեքին։ Աշխատողի կողմից նոր ստեղծած արժեքի և նրա աշխատավարձի արժեքի տարբերությունը կոչվում է հավելյալ արժեք» (հատ. 6, էջ 112)։

Չերնիշևսկին, չհասկանալով աշխատանքի արժեքի՝ որպես աշխատուժի արժեքի հանելուկը, չհասկացավ նաև հավելյալ արժեքը՝ որպես շահույթի աղբյուր։ «Եթե մենք ցանկանայինք ավելի ճշգրիտ արտահայտվել, կասեինք, որ հավելյալ արժեքը տվյալ աշխատուժի ստեղծած արժեքի և այդ ուժի արժեքի տարբերությունն է» (նույն տեղում, էջ 138)։

Քննադատելով Միլլ—Չերնիշևսկու տնտեսագիտական հայացքները՝ Պլե-



խանովը զուգընթացաբար շարադրում է իր ըմբռնումները, մեկնաբանում է Մարքսին։ Նա պարզաբանում է, որ բանվորը կյանքի միջոցների դիմաց կապիտալիստին վաճառում է իր աշխատուժը, որն անցնում է ձեռնարկատիրոջ տրամադրության տակ՝ որպես նրա սեփականությունը, որի գործադրությունն ընդունակ է ստեղծելու ավելցուկ, աշխատուժի արժեքի, այսինքն՝ աշխատավարձի նկատմամբ։ Այդ ավելցուկը, որպես հավելյալ արժեք, պատկանում է ձեռնարկատիրոջը և հանդիսանում է այն «եկամտի» աղբյուրը, որ կապիտալը բերում է իր տիրոջը։

Հավելյալ արժեքի ըմբռնումը Պլեխանովը հետևողականորեն բխեցնում է արժեքի ըմբռնումից։ Տվյալ ապրանքի արժեքը որոշվում է այն աշխատանքի քանակությամբ, որն անհրաժեշտ է այդ ապրանքի արտադրության համար։ Եթե աշխատանքի այդ քանակությունը տեխնիկական կատարելագործումների և աշխատանքի արտադրողականության բարձրացման հետևանքով երկու անգամ պակաս լինի, ապա երկու անգամ կնվազի նաև ապրանքի արժեքը։ Ապրանքի արժեքի մեծությունը հակառակ համեմատական է արդյունաբերության այն ճյուղի աշխատանքի արտադրողականությանը, որտեղ արտադրվում է ապրանքը։ Բայց Պլեխանովն այստեղից եզրակացնում է, որ աշխատանքի արտադրողականությամբ չի կարելի որոշել հավելյալ արժեքի չափերը։ Աշխատանքի արտադրողականությունից է կախված այդ արժեքը ներկայացնող արտադրված առարկաների քանակությունը։

Աշխատանքը հանդես է գալիս որպես արժեքի և հավելյալ արժեքի աղբյուր։ Աշխատանքով են որոշվում նաև ինչպես արժեքը, նույնպես և հավելյալ արժեքը։ «Հավելյալ արժեքի մեջ մարմնավորված աշխատանքն ունի սոսկ այն առանձնահատկությունը, որ այն չվճարված աշխատանք է, մի աշխատանք, որը ձրիաբար յուրացրել է ձեռնարկատերը» (նույն տեղում, էջ 140—141)։ Աշխատանքը վճարված է, թե վճարված չէ, դա բանի էությունը չի փոխում, աշխատանքը,— ընդգծում է Պլեխանովը,— արժեքի միակ աղբյուրն է։

Չերնիշևսկու իր քննադատության մեջ մատնանշելով աշխատանքի արժեքի «հանելուկը», Պլեխանովը լրիվ չի բացահայտում այն «հանելուկի» էությունը, որ կապիտալիստական արտադրական հարաբերությունների բնույթով օբյեկտիվորեն պայմանավորված աշխատավարձը երևույթների մակերեսին հանդես է գալիս որպես աշխատանքի արժեք։ Պետք է բացատրել այդ ձևի դրսևորումը։ Չէ՞ որ աշխատավարձի վերաբերյալ մարքսյան ուսմունքի մեջ այդ ձևի դրսևորումը հասարակ, թվացող երևութականություն չէ։ Բանն այն չէ, որ կապիտալիստին թվում է, թե ինքը վճարում է բանվորի ամբողջ աշխատանքի համար, իսկ բանվորին թվում է, թե ինքն ստանում է իր ամբողջ աշխատանքի վճարը։ Աշխատուժի արժեքի վերածվելը աշխատանքի արժեքի, աշխատուժի արժեքի դրսևորվելը աշխատանքի արժեքի ձևով օբյեկտիվորեն պայմանավորված է։ Կապիտալիզմի պայմաններում, դրսևորման այդ ձևի շնորհիվ, թվում է թե բանվորների ամբողջ աշխատանքի համար վճարվում է, որով շահագործումը քողարկվում է, այն չի բարձրանում երևույթների երեսը, և ստեղծվում է այնպիսի երևութականություն, թե կապիտալիստի և բանվորի միջև հավասարություն կա, թե նրանք հանդես են գալիս իբրև հավասար ապրանքարտադրողներ։

Միլլ—Չերնիշևսկու իր քննադատության մեջ Պլեխանովը հեռու է Մարքսի աշխատավարձի թեորիան սպառիչ կերպով մեկնաբանելուց։ Պլեխանովը

*մինչև վերջը չի բացահայտում այն երևույթը, որ աշխատավարձը, որպես*
*«աշխատանքի արժեքի» ձև, ոչ միայն քողարկում է շահագործողական հա-*
*րաբերությունները, այլև դառնում է գործիք շահագործումը ուժեղացնելու հա-*
*մար։ Պլեխանովը դժբախտաբար իր արժեքավոր երկերում ցույց չի տալիս, որ*
*Մարքսի հավելյալ արժեքի թեորիան Մարքսի ամբողջ տնտեսական ուսմունքի*
*անկյունաքարն է։ Ընդհակառակը, նա «բուրժուական հասարակության տըն-*
*տեսության վերաբերյալ գիտության անկյունաքարը» համարում է արժեքի*
*թեորիան (տես հատ. 6, էջ 163)։*

## ԿԱՊԻՏԱԼԻ ՄԱՍԻՆ

*Կապիտալի իր ըմբռնումը Պլեխանովը շարադրում է Ռոդբերտուսի և*
*Չերնիշևսկու վերաբերյալ իր աշխատություններում։ Ո՛չ Ռոդբերտուսը, ո՛չ*
*Միլլը, ո՛չ Չերնիշևսկին չբարձրացան մինչև կապիտալի՝ որպես արտադրու-*
*թյան հասարակական հարաբերության ըմբռնմանը։ Իսկ Գ. Պլեխանովը կա-*
*պիտալը բնորոշում է այսպես. «Կապիտալը արտադրության հասարակական*
*հարաբերություն է,— ասում է Մարքսը,— այդպիսի պատասխանով բուր-*
*ժուական տնտեսագետներին մեծագույն, այս անգամ ամենաանկեղծ զար-*
*մանք պատճառելով» (հատ. 6, էջ 109). տողատակին Պլեխանովը բերում է*
*Մարքսի բոլոր հիմնական սահմանումները կապիտալի մասին։*
*Պարզաբանելով բուրժուական տնտեսագետների զարմանքի էությունը,*
*նա հարցնում է. «ինչպիսի՞ք են «կապիտալի» հատկանիշները»։ Բոլորին*
*հայտնի է, որ կապիտալի ամենագլխավոր տարբերիչ հատկանիշը «եկամուտ»*
*բերելու նրա ունակությունն է՝ պարբերաբար շահույթ աճեցնելու, ճիշտ այն-*
*պես, ինչպես ոչխարն աճեցնում է բուրդը (նույն տեղում, էջ 110)։ Այդ գըլ-*
*խավոր հատկանիշը,— նշում է Պլեխանովը,— բոլորովին ցույց չեն տալիս*
*բուրժուական տնտեսագետները, երբ ասում են, թե կապիտալը մի կուտակված*
*աշխատանք է, որը ծառայում է որպես միջոց նոր արտադրության համար։*
*Ամեն մի կապիտալ փոխանակային արժեք է, բայց ամեն մի փոխանա-*
*կային արժեք կապիտալ չէ։ «Կապիտալը մի փոխանակային արժեք է, որն.*
*ըստ երևույթին, օժտված է քմահաճ կերպով աճելու ունակությամբ» (հատ. 6,*
*էջ 111)։ Կապիտալը, այսպիսով, Պլեխանովի կողմից սահմանվում է փոխա-*
*նակային արժեքի միջոցով, որը ապրանք արտադրողների հասարակական*
*հարաբերություն է։ Պլեխանովը քննադատում է Միլլին, որի սահմանումով*
*կապիտալը հանդես է գալիս որպես արտադրության միջոց։*
*Մինչդեռ կապիտալի, որպես արտադրության հասարակական հարաբե-*
*րությունների ըմբռնումը միայն պատռում է ֆետիշիզմի քողը կապիտալիս-*
*տական հարաբերություններից, կապիտալը ուղղակի կապելով փոխանակա-*
*յին արժեքի հետ՝ նրա այն հատուկ ձևի մեջ, որը անվանվում է աշխատուժի փո-*
*խանակային արժեք։ Դա լավ է դրսևորում Պլեխանովը տողատակի ծանոթա-*
*գրության մեջ (հատոր 6, էջ 109—110), բերելով հետևյալ քաղվածքը*
*Մարքսի «Վարձու աշխատանք և կապիտալ»-ից. «Կապիտալը նույնպես ար-*
*տադրության հասարակական հարաբերություն է, ինչց արտադրության բուր-*
ժուական հարաբերություն, *արտադրական հարաբերություն բուրժուական*
*հասարակության մեջ»։*
*Կապիտալի տարբերիչ հատկանիշն այն չէ, թե կուտակված աշխատանքը*



*կենդանի աշխատանքին ծառայում է որպես միջոց նոր արտադրության հա-*
*մար, այլ այն, որ կենդանի աշխատանքը ծառայում է կուտակված աշխատան-*
*քին որպես միջոց «պահպանելու և մեծացնելու նրա փոխանակային արժեքը»։*
*Բերելով այդ ցիտատը՝ Պլեխանովը ցույց է տալիս, որ կապիտալի սահմա-*
*նումը, որպես կուտակված աշխատանքի գումարի, որ ծառայում է որպես հե-*
*տագա արտադրության միջոց, «ամենատարածվածն է և ամենաքիչ հիմնա-*
*վորվածը»։ Եվ իրոք, ի՞նչ սահմանում է դա, որից դուրս է մղված կապիտալի*
*գլխավոր հատկանիշը՝ եկամուտ բերելու նրա հրաշագործ հատկությունը։*
*Կապիտալն իր այդ հատկությունը քաղում է մարդկանց՝ արտադրության պրո-*
*ցեսում տեղի ունեցող հասարակական հարաբերություններից, այսինքն՝ այն*
*բանից, որ շուկայում գտնվում և մշտապես ավելանում է աշխատուժ կոչվող*
*ապրանքը, որ գնվում է իր արժեքով և որը ընդունակություն ունի ավելի մեծ*
*արժեք արտադրելու, քան իր՝ աշխատանքի արժեքը։*
*Ինքը Պլեխանովը հիանալի հասկանում էր ապրանքա-կապիտալիստա-*
*կան հարաբերությունների ֆետիշային դրսևորման էությունը, թեև այդ հարցի*
*մասին հատուկ շարադրանք չկա նրա մոտ։*
*Տարբեր տնտեսական կատեգորիաների իր բոլոր հետազոտություննե-*
*րում, այս կամ այն տնտեսագետի մասին իր քննադատական դիտողություն-*
*ներում, Պլեխանովի մոտ հանդիպում ենք այստեղ-այնտեղ ցրված մտքերի,*
*որոնք ակնհայտորեն հաստատում են ապրանքա-փողային ֆետիշիզմի նրա*
*ճիշտ ըմբռնումը։ Պլեխանովը բազմիցս արտահայտվում է այն մասին, որ*
*«տնտեսական կատեգորիաներն իրենք իրենցով արտահայտում են ոչ այլ*
*ինչ, քան եթե մարդկանց կամ ամբողջ դասակարգերի փոխհարաբերություն-*
*ներ արտադրության հասարակական պրոցեսում։ Տնտեսագիտությունը*
*միայն այն ժամանակ կանգնեց ճիշտ տեսակետի վրա, երբ ըմբռնեց այդ բա-*
*նը և զբաղվեց այն փոխհարաբերությունների հետազոտությամբ, որոնք բա-*
*ցահայտվում են իրերի կարծեցյալ հատկությունների և տնտեսական կատե-*
*գորիաների խորհրդավոր հատկությունների հետևում» (հատ. 6, էջ 170)։*

## ԱՇԽԱՏԱՎԱՐՁԻ ՄԱՍԻՆ

*Պլեխանովը աշխատավարձի հարցն արծարծելիս, քննադատում է «աշ-*
*խատանքային վճարի ֆոնդը», արդարացիորեն նշելով, որ այդ թեորիայի վրա*
*է խարսխվում բանվորների ու կապիտալիստների շահերի ընդհանրության*
*պրոպագանդան։*
*Քննարկելով աշխատավարձը, որպես աշխատուժ ապրանքի փոխանակա-*
*յին արժեքի, Պլեխանովը առարկում է Չերնիշևսկուն, որը հետևելով Ջ. Ստ.*
*Միլլին, պաշտպանում է «աշխատավարձի երկաթյա ֆոնդի» թեորիան, ըստ*
*որի աշխատավարձը կախված է աշխատանքի պահանջարկի և առաջարկի*
*միջև կամ կապիտալի ու բնակչության միջև եղած հարաբերություններից։ Ըստ*
*այդ թեորիայի՝ աշխատավարձը կարող է ավելանալ բանվորների վարձման*
*ֆոնդերի ավելացումից, կամ հենց բանվորների թվի նվազումից։*
*Պլեխանովը նշում է, թե իրական դրությունն այլ բան է ասում։ Աշխա-*
*տուժի նկատմամբ պահանջարկը կախված է արտադրության միջոցների քա-*
*նակից, տեխնիկայի զարգացումից և աշխատանքի արտադրողականությու-*
*նից։ «Որքան ավելի է հավելյալ արժեքի հարաբերական մեծությունը, այն-*

*քան փոքր է աշխատավարձի հարաբերական մեծությունը և ընդհակառակը» (հատ. 6, էջ 118)։ Բանվորների ընդհանուր քանակը կախված է աշխատանքի այն քանակից, որպիսին հաջողվում է կորզել յուրաքանչյուր առանձին բանվորից։ Որքան ավելի է աշխատանք քամվում բանվորներից առանձին-առանձին, այնքան ավելի քիչ թվով բանվորներ են պետք «կապիտալի» գործի մեջ օգտագործելու համար և ընդհակառակը։ Այստեղից Պլեխանովն այն հետևությունն է անում, որ իրականության մեջ աշխատանքի շահերը ամենևին էլ համերաշխ չեն կապիտալի շահերի հետ, ինչպես այդ ձգտում են ապացուցել կապիտալի վարձկանները։*

*Ավելացնելով աշխատանքային ժամանակի տևողությունը և աշխատանքի ինտենսիվությունը, կապիտալիստը փաստորեն նվազեցնում է պահանջարկը աշխատուժի նկատմամբ։ Բանվորների համար շահավետ է աշխատանքային օրվա կրճատումը և աշխատանքի ինտենսիվության նվազեցումը։ Եթե նրանց հաջողվի դրական արդյունքների հասնել այդ գործում, ապա դրանով կավելանա պահանջարկը աշխատուժի նկատմամբ, իսկ այդ ավելացումը տանում է դեպի աշխատավարձի բարձրացում։*

*Այս համոզեցուցիչ փաստարկով Պլեխանովը ցույց է տալիս «աշխատավարձի ֆոնդի» թեորիայի ամբողջ անհեթեթությունը և կապիտալիստների ու բանվորների շահերի ամբողջ անհամատեղելիությունը։ Աշխատավարձի ոչ մի «ֆոնդ» էլ գոյություն չունի։*

*Մարքսի ուսմունքի հիման վրա շարադրելով աշխատավարձի կատեգորիայի իր ըմբռնումը, Պլեխանովը քննադատում է Չերնիշևսկու թեորիան բանվորների կողմից «ինքնահարգումը» կորցնելու հետևանքով աշխատավարձի անկման մասին։ Չերնիշևսկին մտածում էր, թե աշխատողը, դառնալով վարձու բանվոր, սկսում է ավելի քիչ հարգել իրեն, և որքան ավելի է ընդլայնվում աշխատանքի վարձման սիստեմը, այնքան ավելի քիչ են հարգում իրենց բանվորները, ուստի և բանվորների վարձն ընկնում է։ Չերնիշևսկու պնդումը Պլեխանովը հերքում է այն բանը վկայակոչելով, որ աշխատավարձն ընկնում է խոշոր արդյունաբերության զարգացման, որակյալ աշխատանքը հասարակ աշխատանքով, տղամարդու աշխատանքը կնոջ աշխատանքով, մեծահասակների աշխատանքը երեխաների աշխատանքով փոխարինելու հետևանքով։ Աշխատավարձի անկումն առաջանում է փոփոխական կապիտալի հաշվին հաստատուն կապիտալի հարաբերական աճումով, մեքենայի կողմից բանվորի դուրս մղումով և հարաբերական գերբնակչության՝ «արդյունաբերության պահեստային բանակի» աճով։*

*Կապիտալիզմի տնտեսական զարգացման օրենքները անխուսափելիորեն տանում են դեպի աշխատավարձի անկումը և այդ անկումը ինքնահարգման ու այլ զգացումների նման հոգեբանական մոմենտներով բացատրելու ամեն մի փորձը ոչինչ չի ապացուցում։*

*Պլեխանովը ցույց է տալիս, որ վարձու բանվորն ավելի շատ գիտակցություն ունի և ավելի շատ է հարգում իրեն, քան մանր բուրժուան և արհեստավորը։ «Եթե բանը հանգեց նրան, թե բանվորը իրեն ով և ինչ է համարում, ապա նրա աշխատավարձը հաստատապես շատ բարձր կլիներ, քանի որ նա համենայն դեպս իրեն համարում է մի մարդ, որին պետք է ըստ հնարավորության թանկ վաճառել իր աշխատուժը։ Նրա ամբողջ դժբախտությունն այն է, որ կապիտալիզմի զարգացման հետևանքով նրա այդ հնարավորությունն*



*ավելի ու ավելի է նվազում։ Եվ դա տեղի է ունենում զուտ տնտեսական, այլ ոչ թե հոգեբանական պատճառներով» (հատ. 6, էջ 128)։*

*ԱՄՆ-ի, Անգլիայի բուրժուազիայի և պրոլետարիատի միջև ազգային եկամտի բաշխման վերաբերյալ փաստերով Պլեխանովը ապացուցում է պրոլետարիատի հարաբերական աղքատացումը։ Նա ցույց է տալիս, որ Մարքսն իր թեորիայով կանգնած էր այն տեսակետին, որ պրոլետարիատը թե՛ հարաբերականորեն, թե՛ բացարձակորեն աղքատանում է, և ճիշտ չեն այն քննադատները, որոնք նրան վերագրում են միայն բացարձակ աղքատացման վերաբերյալ թեորիան։ Պլեխանովը քննադատում է Ստրուվեի նաև այն փաստարկը, թե մեկ բևեռում հարստության կուտակման, իսկ մյուս բևեռում աղքատության, ֆիզիկական այլասերման հետևանքով բարոյալքված բանվոր դասակարգը ընդունակ չէ ռևոլյուցիա կատարելու։*

*Պրոլետարիատի հասարակական դրության վատթարացումից Ստրուվեն եզրաբխեցնում էր նրա դասակարգային ինքնագիտակցության նվազում և եզրակացնում, թե բոլոր տեսակետներից թույլ պրոլետարիատն ընդունակ չէ ռևոլյուցիա կատարելու։ Պլեխանովը նշում է, որ պրոլետարիատի կենսապայմանների վատթարացումը չի կարող նրա դասակարգային ինքնագիտակցության զարգացումը դժվարացնող գործոն լինել։*

## ԱԶԳԱԲՆԱԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Ինչպես և Չերնիշևսկին, Պլեխանովը ազգաբնակության Մալթուսի թեորիայի վճռական հակառակորդն էր։ Աղքատացման թեորիայի հետ սերտ կապի մեջ է Մալթուսի ուսմունքը ազգաբնակության աճի մասին։ Մալթուսի օրենքը գործում է միայն կենդանիների և բույսերի աշխարհում։ Բայց այն ժամանակ, երբ Չերնիշևսկին հիպոթետիկ կերպով է ժխտում Մալթուսին, Պլեխանովն զբաղվում է հարաբերականորեն ավելորդ ազգաբնակության առաջացման էության վերլուծմամբ։ Հետևելով Մարքսին՝ նա «արդյունաբերության պահեստային բանակի» երևան գալու պատճառը տեսնում է փոփոխական կապիտալի համեմատությամբ հաստատուն կապիտալի ավելի արագ աճման մեջ, ուստի, միայն կապիտալիստական եղանակին է հատուկ աշխատանքի պահեստի բանակը։ Կապիտալիզմը, այսպիսով, ստեղծում է ազգաբնակության վերաբերյալ իր օրենքը։*

*Քննադատելով մալթուսականությունը, Պլեխանովը միանգամայն ինքնուրույն շարադրում է այդ դպրոցի պատմությունը, իրավացիորեն նկատելով, որ այդ օրենքի հայտնագործությունը անարդարացի կերպով վերագրվում է Մալթուսին։ «Ազգաբնակության մասին Մալթուսից շատ ավելի վաղ են գրել և, որ ամենից կարևորն է,— նրանից շատ ավելի հիմնավորված են գրել» (հատ. 6, էջ 181)։*

*Անդրադառնալով Մալթուսի նախորդների հարցին, նա լիովին հաստատեց Մարքսի այն հետևությունը, որ Մալթուսը գրագող է։ Պլեխանովը բերում է ամերիկացի Ֆրանկլինի, անգլիացի Ուոլեսի, Յումի, հայր Միրաբոյի, Մոնտեսքյոյի, Ջեմս Ստյուարտի և 18-րդ դարի մյուս գրողների դատողությունները, որոնք արտահայտել են այն միտքը, թե մարդկային սեռը կարող է չափազանց արագ բազմանալ, եթե միայն դրան չխանգարեն անբարենպաստ պայմանները (պատերազմները, գոյության միջոցների պակասությունները և*

*այլն), թե ազգաբնակության հարցը գերազանցապես պատմական հարց
է, և թե չկա ազգաբնակության մեկ՝ ամբողջ մարդկության համար ընդ-
հանուր օրենք, այլ կան օրենքներ, որոնք յուրահատուկ են մարդկային
հասարակության զարգացման տարբեր աստիճաններին։ Այդ անձինք իրենց
գաղափարներն արտահայտում էին «առանց հետին մտքերի», առանց կա-
պիտալիզմի շահերի միտումնավոր պաշտպանության։ Բայց կապիտալիզմի
զարգացմամբ դրությունը փոխվեց և նրա գաղափարախոսները ջանում են
«ապացուցել, որ բանվոր դասակարգի թշվառությունների մեջ մեղավոր է
բնությունը, այլ ոչ թե հասարակական հարաբերությունները» (հատ. 6, էջ
187)։ Երբ բուրժուազիային հարկավոր էր հանուն իր տիրապետության պայ-
քարել իրենց դարն ապրած ֆեոդալական կարգերի դեմ, նրա ներկայացուցիչ-
ները ասում էին, թե մարդկությունն ընդունակ է չափազանց արագ աճելու,
բայց հասարակական անմիտ հարաբերությունները կամ վատ կառավարումը
խանգարում են հասնելու մինչև այն սահմանները, որպիսիք թույլ է տալիս
հողի բնական պտղաբերությունը։ Այդ դրույթը շուռ են տվել և սկսել են դա-
տել այսպես. «Մարդկային սեռը ձգտում է բազմանալ չափազանց արագ, իսկ
գոյության միջոցները բոլորովին էլ չեն կարող այդպիսի արագությամբ աճել.
այստեղից էլ թշվառություն, այստեղից էլ արատներ, այստեղից էլ այն բոլոր
դժբախտությունները, որոնց մեջ անհանգիստ մարդիկ մեղադրում են կառա-
վարությանն ու իշխող դասակարգերին։ Աղքատությունը աստվածային օրենք-
ների արդասիք է, այլ ոչ թե մարդկային, եթե երկրում շատ չքավորներ կան,
ապա դրանում ոչ ոքի չպետք է մեղադրել, բացի հենց իրենցից՝ չքավորներից,
որոնք չափից դուրս արագ բազմանում են» (հատ. 6, էջ 187)։*

*Ըստ Պլեխանովի՝ բոլոր վիճակագրական տվյալները Մալթուսի վերոհիշ-
յալ օրենքի դեմ են, որ Մալթուսն իրեն հերքում է իր «Քաղաքատնտեսության
հիմունքները» աշխատությունում, որտեղ նա պնդում է, թե իրական պահան-
ջարկը պայմանավորված է բանվոր դասակարգի գնողունակությամբ։*

*Եթե Մալթուսի միակ նպատակն էր՝ ապացուցել Անգլիայում մտցված
«չքավորների» վերաբերյալ օրենքների ողորմելիությունը և թշվառության հա-
մար միակ պատասխանատու համարել պրոլետարիատին, որը հակված է
բազմանալու, ինչպես և կապիտալիստական հարաբերությունների դեմ ուղղ-
ված մեղադրանքները դնել ազգաբնակության բնական օրենքի ամենավերա-
ցական հողի վրա, ապա կապիտալիզմի նորագույն ժամանակի Մարքսի բո-
լոր «քննադատները» ջանում էին ժխտել կապիտալիզմի կործանման անխու-
սափելիությունը,— ընդգծում է Պլեխանովը։ Նա զայրույթով ցույց է տա-
լիս, որ «Մեր «քննադատների» պատմական միսիան այն է, որ վերանայեն
Մարքսին՝ նրա թեորիայից հանելով վերջինիս սոցիալ-ռևոլյուցիոն բովան-
դակությունը... Մարքսի թեորիայից մեկը մյուսի հետևից դուրս են նետվում
այն բոլոր դրույթները, որոնք պրոլետարիատի համար կարող են հոգեկան
զենք ծառայել բուրժուազիայի դեմ մղած նրա ռևոլյուցիոն պայքարում։ Դիա-
լեկտիկան, մատերիալիզմը, հասարակական հարաբերությունների վերաբեր-
յալ ուսմունքը՝ որպես հասարակական պրոգրեսի ազդակի. արժեքի թեորիան
ընդհանրապես և հավելյալ արժեքի թեորիան մասնավորապես, սոցիալիստա-
կան ռևոլյուցիան, պրոլետարիատի դիկտատուրան—մարքսյան գիտական սո-
ցիալիզմի այդ բոլոր անհրաժեշտ բաղկացուցիչ մասերը, առանց որոնց այն
կորցնում է իր ամբողջ էական բովանդակությունը» (հատ. 11, էջ 274)։*



## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԳՆԻ ԵՎ ՄԻՋԻՆ ՇԱՀՈՒՅԹԻ ՄԱՍԻՆ

*Պլեխանովը հիմնավորապես զբաղվել է արտադրության գնի հարցով՝
ցույց տալով Մարքսի «Կապիտալ»-ի I և III հատորների այսպես կոչված հա-
կասությունների պատրանքայնությունը։ Այդ տեսակետից նա շատ արժեքա-
վոր բան է արել ոչ միայն ռուսական, այլև եվրոպական տնտեսագիտական
գրականության մեջ։ Նա ելնում էր կապիտալիզմի այն հակասությունից, որի
հետևանքով արժեքի օրենքն իր էությունը դրսևորում է քողարկված, խճողված
ձևով, որպես ինչ որ միջին, տարերայնորեն, մարդկանց թիկունքում գործող
մի բան։ Տարբեր կազմ ունեցող կապիտալների կոնկուրենցիան տանում է դե-
պի շահույթների համահավասարում և ապրանքների արժեքը արտադրության
գնի հետ համընկնում է միայն այն ճյուղերում, ուր կապիտալի օրգանական
կազմը համընկնում է հասարակական կապիտալի օրգանական կազմի հետ։
Ցածր օրգանական կազմ ունեցող ճյուղերի կապիտալներն իրենց հա-
վելյալ արժեքի մի մասը զիջում են բարձր օրգանական կազմ ունեցող ճյու-
ղերի կապիտալներին և կոնկուրենցիայի միջոցով տեղի է ունենում շահույթ-
ների համահավասարում։ Արտադրության գնի (արտադրության ծախսեր—
միջին շահույթ) շուրջը տատանվում են շուկայական գները։ Միայն այդպիսի
հակասական ձևով է իրեն դրսևորում արժեքի օրենքը։ Պլեխանովը ճիշտ է
նշում, որ դա կապիտալի իրական հակասությունն է և ոչ թե Մարքսի «Կա-
պիտալ»-ի I և III հատորների հակասություն։*

*Մինչև «Կապիտալ»-ի երրորդ հատորի լույս տեսնելը Մարքսը գիտեր, որ
կապիտալիզմի պայմաններում արժեքի օրենքը կերպափոխվում է, իրեն
դրսևորելով արտադրության գնի մեջ,— հայտարարում է Պլեխանովը ի պա-
տասխան Մարքսի քննադատների։ Այդ միտքը հաստատելու համար նա «Կա-
պիտալ»-ի I հատորից բերում է մի քաղվածք, որը ցույց է տալիս, թե
Մարքսն այն ժամանակ գրելով արժեքի մասին, գիտակցաբար միջին շահույ-
թը աբստրահում էր շահույթների համահավասարման օրենքից և արժեքը դի-
տում էր «Կարծես թե լաբորատոր ճանապարհով»։ «Եթե անաչառ մտածողու-
թյունը հօգուտ կապիտալիստի շահերի լիներ, նա պետք է իր առջև կապիտալի
ծագման խնդիրը դներ հետևյալ կերպ՝ ինչպե՞ս կարող էր կազմվել կապի-
տալը այն դեպքում, երբ գինը կարգավորվում է միջին գնով, այսինքն՝ ապ-
րանքի արժեքի վերջին ինստանցիայում։ Ես ասում եմ՝ «վերջին ինստանցիա-
յում», որովհետև գները ուղակիորեն չեն համընկնում ապրանքների արժեք-
ների մեծությունների հետ, ինչպես կարծում են Ա. Սմիթը, Ռիկարդոն և
մյուսները» (հատ. 11, էջ 353—354)։ Այսպիսով, Մարքսը ժխտում է միջին
գների ուղղակիորեն համընկնումը ապրանքների արժեքի ընդհանուր գու-
մարին։*

*Պլեխանովը ցիտում է արժեքի օրենքի դրսևորման մասին Կուգելմանին
ուղղված Մարքսի նամակից. «Վուլգար տնտեսագետը նվազագույն պատկե-
րացում չունի այն մասին, թե իրական, փոխանակային ամենօրյա հարաբե-
րությունները և արժեքի մեծությունները չեն կարող անմիջականորեն նույ-
նական լինել։ Բուրժուական հասարակության բուն էությունը հենց այն է, որ
նրա մեջ գոյություն չունի արտադրության ոչ մի գիտակցական հասարակա-
կան կարգավորում։ Բանականը և բնականորեն անհրաժեշտը դրսևորվում է
սոսկ որպես կուրորեն գործող միջին։ Իսկ վուլգար տնտեսագետը կարծում է,*

*թե մեծ հայտնագործություն է կատարում, երբ ներքին կապի բացահայտ-
մանը գոռոզաբար հակադրում է այն փաստը, թե երևույթների մեջ իրերը այլ
կերպ են երևում։ Բայց այդ դեպքում ինչի՞ համար է առհասարակ գիտու-
թյունը» (հատ. 11, էջ 345)։ Այստեղ Պլեխանովը հիանալի տվել է կապիտա-
լիզմի ուսումնասիրման մեթոդի էությունը, որպիսին Մարքսը իր «Հավելյալ
արժեքի թեորիաներ»-ում անվանում է «էզոտերիկ», այսինքն՝ տնտեսական
երևույթների էությունն ուսումնասիրող, ի տարբերություն «էկզոտերիկ» մեթո-
դի, որն ուսումնասիրում է այդ երևույթների տեսանելիությունը, արտաքինը։*

*Պլեխանովն այդ հարցում Մարքսի հետևողական աշակերտն էր։ Արժեքի
վերաբերյալ Մարքսի ուսմունքի մեջ երևացող «հակասությունը» նա բացա-
տրրեց Մարքսի մեթոդով։*

*Ճիշտ պաշտպանելով Մարքսի «քննադատներին», հերքելով փառաբան-
ված «անտինոմիան» «Կապիտալ»-ի առանձին մասերի միջև, Պլեխանովը, սա-
կայն, ինքն է թույլ տալիս արժեքի օրենքի ոչ ճիշտ և սխալ մեկնաբանու-
թյուն, այն ներկայացնելով որպես հավիտենական, բոլոր հասարակական-
տնտեսական ֆորմացիաներին հատուկ մի բան, ի հակադրություն փոխանա-
կային արժեքի, որը ապրանքա-կապիտալիստական տնտեսության մեջ հան-
դես է գալիս այդ օրենքի գործողության պատմական ձևով։*

## ՀՈՂԱՅԻՆ ՌԵՆՏԱՅԻ ՄԱՍԻՆ

*Հողային ռենտայի էությունը ճիշտ հասկանալու համար հետազոտողից
պահանջվում է ճիշտ լուծել հավելյալ արժեքի, շահույթի կատեգորիաները,
կարողանալ ըմբռնել այն, թե ինչպես է հավելյալ արժեքը դառնում շահույթ
և ռենտա։ Ուստի, Պլեխանովը ճիշտ է մատնանշում, որ բուրժուական քաղա-
քատնտեսության կլասիկների ուսմունքի մեջ շահույթի, ռենտայի հասկացո-
ղությունը խառնաշփոթ է։ Շահույթի վերաբերյալ իրենց հետազոտություն-
ներում Չերնիշևսկին, ինչպես և Ռիկարդոն ու Միլլը, բոլորովին էլ շահույթը
նկատի չունեն, այլ հավելյալ արժեքը։*

*Մարքսի «Հավելյալ արժեքի թեորիաների» II հատորի լույս տեսնելուց
դեռևս առաջ Պլեխանովը միանգամայն ճիշտ և հենց նույն փաստարկներով
ցույց է տալիս Ռոդբերտուսի սխալը, որը ենթադրում էր, թե հում նյութը չի
մտնում հողագործական ձեռնարկատիրոջ արտադրության ծախսերի մեջ։ Պլե-
խանովը հարցնում է՝ «Միթե՞ գյուղական տնտեսատերը դաշտերում որպես
սերմացու օգտագործած հացահատիկը արտադրության ծախսերի տակ չի
գցում։ Միթե՞ նա իր մաքուր շահույթը որոշելիս այդ հացահատիկի արժեքը
չի հանում իր կալվածքի համախառն եկամտից» (հատ. 1, էջ 358)։*

*Ռոդբերտուսի սխալն այդ հարցում հենց այն էր, որ իրենց արժեքով հո-
ղագործության արդյունքների վաճառքը նա դիտում էր ո՛չ որպես բացառու-
թյուն, այլ որպես նրանց սահմանած ընդհանուր կանոնի դրսևորում, ըստ որի
արտադրության յուրաքանչյուր ճյուղի արդյունքների միջին գինը հավասար է
նրանց արժեքին, ուստի և նա նույնիսկ իր առջև հարց էլ չէր դնում, թե ին-
չու հողագործության մեջ արդյունքներն իրացվում են ըստ իրենց արժեքի,
որը գերազանցում է արտադրության գնին և լրացուցիչ շահույթ է տալիս բա-
ցարձակ ռենտայի ձևով։ Հայտնի է, որ դիֆերենցիալ ռենտայի գոյությունը
Ռոդբերտուսը վիճարկում է։ Սխալ է Ռոդբերտուսի այն կարծիքը, թե իբր*



*կապիտալների միջև եղած կոնկուրենցիան սահմանում է շահույթի ընդհանուր
նորմա այն հաշվով, որ ապրանքների գները հավասարեցնում է նրանց ար-
ժեքներին ։*

*Հողային ռենտայի իր թեորիայում Պլեխանովը քննադատում է Ռիկար-
դոյի ուսմունքը հողի բերրիության նվազման մասին և ուժեղ փաստարկնե-
րով ցույց տալով նրա ո՛չ հարատևությունը, ապացուցում է, որ այդ ուսմուն-
քը գյուղատնտեսության բնագավառում կիրառվող յուրատեսակ մալթուսա-
կանություն է։*

*«Ռոդբերտուսի տնտեսական թեորիան» աշխատության մեջ Պլեխանովը
սխալ կերպով Ռոդբերտուսի ռենտային թեորիան նույնացնում է Մարքսի
թեորիայի հետ։ Պլեխանովը չկարողացավ հողային ռենտայի հարցում Ռոդ-
բերտուսի և Մարքսի միջև եղած իրական տարբերությունը գտնել այն պատ-
ճառով, որ ինքը տվյալ հարցում փաստորեն կանգնած էր Ռիկարդոյի թեորիա-
կան դիրքի վրա։ Հողային ռենտայի հարցերում նա կողմնակից էր հողի նվա-
զող բերրիության թեորիայից զտված ռիկարդոյականությանը։*

*Ռոդբերտուսի նկատմամբ Պլեխանովի քննադատությունը չէր էլ կարող
ավարտուն լինել, որովհետև ինքը Պլեխանովը չկարողացավ հաղթահարել
բացարձակ ռենտայի թեորիան, իսկ Մարքսի «Կապիտալ»-ի III հատորի հրա-
պարակումից և այդ թեորիայի հետ ծանոթանալուց հետո նա երբեք այդ թեո-
րիային չի անդրադարձել։*

*Ի տարբերություն գռեհիկ տնտեսագետների՝ Պլեխանովը Ռոդբերտուսին
չէր դասում գիտական սոցիալիզմի «հիմնադիրների» շարքում և նրան Մարքսի
ու Էնգելսի հետ մի գծի վրա չէր դնում. «Ծիծաղելի է նրա ուսմունքը ոչ միայն
բարձր դասելը Մարքսի և Էնգելսի ուսմունքից, այլև վերջինիս հետ մի գծի
վրա դնելը» (Երկեր, հատ. 1, էջ 364)։*

*Նա հմտորեն բացահայտել է Ռոդբերտուսի ուսմունքի դասակարգային
էությունը, ցույց տալով, որ Ռոդբերտուսը «եղել է և մինչև կյանքի վերջը
մնում է որպես հողատեր ոչ միայն իր դրությամբ, այլև մասամբ համակրան-
քով» (Նույն տեղում, էջ 338)։*

*Պլեխանովը սրամտորեն քննադատում է Ռոդբերտուսի մի շարք թեորիա-
կան դրույթները, նշելով դրանց անտրամաբանականությունն ու անհետևողա-
կանությունը։*

*Քննադատելով Ռոդբերտուսի հողային ռենտայի թեորիան՝ Պլեխանովն
ուշադրություն է դարձրել այն դրույթի անհեթեթության վրա, թե իբր գյու-
ղատնտեսական արտադրության մեջ կարելի է ուշադրության չառնել հումքի
արժեքը։ Բայց Պլեխանովը դրա հետ միասին շրջանցել է ամենագլխավորը,
այն, որ ըստ բառի էության, Ռոդբերտուսի հողային ռենտան իրենից ներկա-
յացնում է բնատնտեսական կատեգորիա, որը բխում է բնատուր ուժից։*

*Ռոդբերտուսն ամեն կերպ ջանում էր բանվորական շարժումը օգտագոր-
ծել հօգուտ հողատերերի շահերի, որոնք այն ժամանակ դեռևս չէին ավար-
տել իրենց գժտությունը կապիտալիստների հետ։ Պլեխանովը կռահեց պոմե-
րանյան կալվածատիրոջ սոցիալական խորամանկությունը, որը ցանկանում
էր մարդկանց համոզել, թե հողատերերն ու բանվորները «դաշնակիցներ» են։*

*Չնայած իր քննադատական վերաբերմունքին Ռոդբերտուսի և նրա թեո-
րիայի նկատմամբ, չնայած նրա ուսմունքի դասակարգային բովանդակու-*

թյան բացահայտմանը, Պլեխանովը, ամբողջությամբ վերցրած, Ռոդբերտու-
սի անձնավորության և ուսմունքի գնահատականը տվել է միակողմանի:

Ռոդբերտուսի նկատմամբ Պլեխանովի անճիշտ գնահատականի պատ-
ճառն այն է, որ նա առաջինը քննադատաբար մոտեցավ Ռոդբերտուսին,
նրա մոտ հայտաբերելով անտրամաբանականություն, անհետևողականու-
թյուն, դասակարգային միտումնավորություն: Պլեխանովի համար դժվար էր
մինչև վերջ հասկանալ Ռոդբերտուսի սոցիալական դեմագոգիայի նրբություն-
ները: Այնուամենայնիվ Պլեխանովն առաջինը Ռոդբերտուսի տնտեսագիտա-
կան հայացքները ծավալուն քննադատության ենթարկեց մարքսիզմի տեսա-
կետից, ընդմին ինքն էլ ծանոթ չլինելով Մարքսի տնտեսագիտական ուս-
մունքին ամբողջությամբ վերցրած, երբ նա նարոդնիկության լագերից նոր էր
անցնում մարքսիզմի լագերը:

Այն, որ Պլեխանովը երբեք չի արտահայտվել ի պաշտպանություն Մարք-
սի բացարձակ ռենտայի թեորիայի, քիչ նշանակություն չունեցավ Պլեխանովի
թեորետիկական դիրքի համար հատկապես Ռուսաստանում, ռուսական սո-
ցիալ-դեմոկրատիայի ծրագիրը մշակելիս՝ ագրարային-գյուղացիական հար-
ցերում և այդ հարցերը լուծելիս: Պլեխանովի այդ թեորետիկական արատը
անխուսափելիորեն իրեն դրսևորեց:

Միայն դիֆերենցիալ ռենտայի ընդունումը և բացարձակ ռենտայի բա-
ցասումը անտեսում է մասնավոր հողային սեփականության տնտեսական
նշանակությունը կապիտալիզմի պայմաններում: Բացարձակ ռենտան ժխ-
տող թեորիայի տեսակետից ոչ մի նշանակություն չունի այն հարցը, թե հողը
պետական սեփականություն է, թե՞ մասնավոր անձանց: Մինչդեռ կապիտա-
լիստական տնտեսության զարգացման համար կարևոր նշանակություն
ունի այն, թե ում ձեռքին է գտնվում հողը:

Պլեխանովը, որ ձևականորեն—թեորիապես ընդունում էր միայն դիֆե-
րենցիալ ռենտան, պետք է հանգեր հողի ազգայնացման ամեն տեսակ նշա-
նակության ժխտմանը, ազգայնացում, որ կարևոր գործոն է հանդիսանում
կապիտալի արագ զարգացման և վերջինիս ուղիներն արմատապես մաքրե-
լու համար: Հողերի մունիցիպալիզացիայի ծրագիրը կրքոտ կերպով պաշտպա-
նող Պլեխանովը, անշուշտ, սնվում էր բացարձակ ռենտան ժխտող թեորիա-
յով: Ուստի, նա նշանակություն չէր տալիս կալվածատիրական խոշոր հողա-
տիրության դեմ պայքարող նարոդնիկության պատմա-իրական և օրինաչափ
բնույթին: Չհասկանալով այդ հողատիրության էությունը, նրա ճորտական
բնույթը, Պլեխանովը թերագնահատում էր նաև ռևոլյուցիոն մանրբուրժուա-
կան դեմոկրատիայի պայքարը նրա դեմ: Որպես մտածող, Պլեխանովը լիո-
վին չհասկացավ նարոդնիկների քարոզած՝ կալվածատիրական հողերի բռ-
նագրավման հայացքը:

---

# ԻԴԵԱԼԻՍՏԱԿԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՊԵՍ ԿՐՈՆԻ ՀԵՆԱՐԱՆ

Ղ. ՎԱՐԴԱՊԵՏՅԱՆ

Հայտնի է, որ իդեալիզմը փիլիսոփայության հիմնական հարցը՝ մտածո-
ղության և գոյի հարաբերության հարցը վճռում է կրոնական ոգով. նա ըն-
դունում և ընդգծում է հոգու, հոգեկան կողմի առաջնությունը մատերիայի
նկատմամբ: Փիլիսոփայության հիմնական հարցի այսպիսի լուծումից հետևում
է, որ բնությունն ածանցված է: Լենինն առանձնապես ուշադրություն է դարձրել
հարցի այդ կողմի վրա.— եթե բնությունն ածանցված է, ապա նա կարող է
միայն ածանցված լինել մի այնպիսի բանից, որը բնությունից մեծ է, հա-
րուստ, հզոր, ընդարձակ: Այնուհետև, այդ ստեղծող, առաջացնող ուժը պետք է
գոյություն ունենա բնությունից անկախ: Բնությունից վեր կանգնած այդպիսի
ուժի գաղափարը ըստ էության համընկնում է աստծու հասկացությանը: Փիլի-
սոփայության հիմնական հարցի իդեալիստական լուծումով արտահայտվում է
աստծու, գերբնական այդ ուժի գաղափարը միայն ավելի աբստրակտ, ման-
վածապատ, մշուշապատ ձևով:

Այս ջրբաժան կետում տարբերությունն այն է, որ կրոնը խորշում է գի-
տական փաստարկումներից, ապացուցման տրամաբանական միջոցներից, իսկ
իդեալիզմը ճգնում է ցույց տալ, որ նրա բոլոր դրույթներն ու եզրակացություն-
ները համապատասխանում են գիտական պահանջներին և առողջ դատողու-
թյանը: Այդ պատճառով էլ իդեալիզմի հակագիտական, միստիկական դրույթ-
ները, եզրակացությունները արտահայտում են գիտություն հիշեցնող՝ «փորձ»,
«զգայությունների կոմպլեքս», «էլեմենտ», «բանականություն» և այլ տերմին-
ներով:

Էնգելսը Հեգելի մասին նկատել է, որ աշխարհի ստեղծագործությունը նրա
մոտ ընդունում է էլ ավելի խճճված և անհեթեթ ձև, քան քրիստոնեության մեջ:
Հեգելը ամբողջ աշխարհը, տիեզերքը դուրս է բերում բացարձակ իդեայից, որը
գոյություն է ունեցել բնությունից առաջ և առաջացրել ու ստեղծել է գոյություն
ունեցող ամբողջ աշխարհը:

Չէր կարելի անշուշտ ժխտել իդեալիստական ուսմունքներում եղած որոշ
դրական, ռացիոնալ կողմերը, մոմենտները: Հայտնի է այդ տեսակետից Հե-
գելի մեծ ծառայությունները պրոբլեմների առաջ քաշման, հարցադրումների
հանճարեղ կռահումների իմաստով: Իդեալիզմը, Էնգելսի արտահայտությամբ
տվել է «իդեական նյութ»: Պլեխանովը շոշափելով հարցի այս կողմը, նկատել
է, որ որոշ կողմերով Հեգելի պատմության փիլիսոփայության, էսթետիկայի,
իրավունքի փիլիսոփայության և մնացած գործերի ուսումնասիրումը շատ սե-
րունդների համար անհրաժեշտություն է: «Բայց այդ աշխատություններին ար-

ժեք ավողը նրա իդեալիստական տեսակետը չէ։ Ընդհակառակը, այդ տեսակետը միանգամայն անպտուղ է և բեղմնավոր է միայն շփոթություն ծնեցնելու կողմից» (Գ. Վ. Պլեխանով, Մատերիալիզմի պատմության ուրվագծեր, էջ 132, 1941 թ.)։

Պլեխանովը իր այդ միտքը մի օրինակով է պարզում.—«Դուք պատկերացրեք ձեզ, թե որևէ մեկն ապշեցուցիչ պարզությամբ բացատրում է մեզ կենդանիների շարժման մեխանիզմը։ Ապա ոչ պակաս զարմանալի լրջությամբ նա ավելացնում է, որ այդ բոլոր շարժումների կարևորագույն թաքնված պատճառն այն ստվերն է, որ գցում են շարժվող մարմինները» (Նույն տեղ, էջ 133)։ Լավ է ասված, «ստվերը» դիտվում է ամեն մի դրության պատճառը. չէ՞ որ դա հենց կրոնական մոտեցում է։

Լենինը «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» իր հանճարեղ գործում հանգամանորեն և լիակատար հիմնավորվածությամբ ցույց է տալիս իդեալիզմի և կրոնի ընդհանրությունը։ Լենինը զուգադրում է իդեալիստների ելակետային դրույթները կրոնական ելակետային դրույթի հետ և ցույց է տալիս նրանց ընդհանրությունը։ «Աշխարհը մեր Ես-ի ստեղծած ոչ-Ես-ն է,— ասում էր Ֆիխտեն։ Աշխարհը բացարձակ իդեա է,—ասում էր Հեգելը։ Աշխարհը կամք է,— ասում էր Շոպենհաուերը։ Աշխարհը հասկացություն է և մտապատկեր,— ասում է իմմանենտ Ռեմկեն։ Գոյը գիտակցություն է,— ասում է իմմանենտ Շուպպեն։ Ֆիզիկականը հոգեկանի ընդարկումն է,— ասում է Բոգդանովը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 14, էջ 301)։ Այս մտքերից հետևում է, որ իդեալիզմի և կրոնի միջև ընդհանրությունն այն է, որ ժխտվում է զգայության մեջ տրված օբյեկտիվ ռեալությունը։ Կրոնը դա ժխտում է բացեիբաց՝ պնդելով, թե գոյություն ունեցող ամեն ինչ ստեղծվում և առաջանում է աստծու կողմից՝ հրաշքների միջոցով։ Այդ պատճառով էլ հոգևոր «հայրերը» կտրուկ մերժել են ապացուցման գիտական եղանակը։ Քրիստոնեական կրոնի հիմնական ֆորմուլան ձևակերպել է եկեղեցու հայր Տերտուլիանը, ասելով՝ հավատում եմ, որովհետև աբսուրդ է։

Այդ դրույթի իմաստի համաձայն մի որևէ երևույթ, մի որևէ եղրակացություն, որ գիտական տեսակետից կարող է դիտվել որպես պարզապես աբսուրդ՝ կրոնական առումով այն կարող է ընդունվել և ներկայացվել որպես ճշմարտություն։ Այսպես, օրինակ, կրոնական լեգենդայի համաձայն, Քրիստոսը կույրին բուժել է սոսկ նրա մարմնին ձեռքով հպելով։ Գիտական տեսակետից իհարկե այդպիսի բան անհնարին է, ուստի և աբսուրդ, մինչդեռ կրոնական ըմբռնումով դա հրաշք է։

Կրոնն այսպիսով շեշտում է հավատի ունիվերսալությունը, որպես միակ ճանապարհ աշխարհի խորախոր երևույթներին հասու լինելու համար։ Պատահական չէ, որ բոլոր ժամանակներում էլ հոգևոր ներկայացուցիչները խորշել են մատերիալիստներից, ատել և հետապնդել են նրանց։ Այդ այդպես է, քանի որ մատերիալիզմն իր էությամբ հակադրվում է կրոնին, անհաշտ է նրա դոգմաների հետ։ Պատահական չէ, թե ինչպիսի վերաբերմունքի արժանացավ մեծ մտածող, հռչակավոր մատերիալիստ Սպինոզան. հոգևորականությունը ատելությամբ և վայրենի չարությամբ նրան կրնկակոխ հետապնդեց և նզովեց։ Պետք է նկատել, որ քիչ թե շատ կրթված հոգևորականների մի որոշ մասը լավ է հասկացել իդեալիստական սիստեմների՝ կրոնին օգնող, հենարան ծառայող էությունը։



Հոգևորականները ձգտել են իդեալիստական սիստեմների օգնությամբ ամրապնդել կրոնի խախտված դիրքերը, ամրապնդել ընդհանրապես կրոնը։ Այսպես, օրինակ, արխիմանդրիտ Գավրիիլը Հեգելի ուսմունքը ձևակերպել է այսպես. «Հեգելյան մեթոդի հիմնական սկիզբը հետևյալ դրույթն է. մեր մտքից զարգացնել աստծու մասին հասկացությունը և այդ հասկացության մեջ — ողջ իրերի մասին հասկացությունը» (տե՛ս «Вопросы Философии», 1954, № 5, էջ 22)։

Ֆոյերբախը Հեգելին քննադատելիս հենց հարցի այդ կողմն էր շեշտել։ Մատերիալիստ փիլիսոփան նկատել էր, որ Հեգելը անհատական բանականությունը դարձրեց աբսոլյուտ և ինչ-որ միանգամայն անկախ էություն և այսպիսով գիտակցությունը անջատեց ոչ միայն առարկայական աշխարհից, այլև մարդուց։ Ֆոյերբախը շեշտել է. երբ ժխտում եք իդեալիզմը, ապա ժխտեցեք նաև աստծուն, որը իդեալիզմի ելակետն է։ Լենինը մերկացնելով Բոգդանովի «սիստեմի» իդեալիստական էությունը՝ նկատել է. իդեան, ոգին, կամքը, հոգեկանը մարդկային ուղեղի ֆունկցիա է. այդ ֆունկցիան պոկել որոշ ձևով կազմակերպված նյութից, վերածել այդ ֆունկցիան ունիվերսալ, ընդհանրական աբստրակցիայի, այդ աբստրակցիան «ընդարկել» ֆիզիկական ամբողջ բնության տակ՝ փիլիսոփայական իդեալիզմի զառանցանքն է։

Ժամանակակից իդեալիստները՝ պոզիտիվիզմի բոլոր տարատեսակները ըստ էության պաշտպանում են նույն այդ «իդեալիստական զառանցանքը»։ Սեմանտիկները պնդում են, թե «աշխարհի էլեմենտները» ընկալումներ են և կազմվում են ընկալումներից։

Գերմանական իդեալիստ փիլիսոփա Վիտգենշտեյնն առաջարկել է այսպիսի դրույթ.— աշխարհը գոյություն ունի «իմ սեփական փորձի մեջ, աշխարհը դա իմ աշխարհն է». դրանից հետևում է, որ եթե չկա Ես-ը, չկա նաև աշխարհը։

Իդեալիստները ջանում են ցույց տալ, թե իրենք հիմնվում են բնագիտության վրա, սակայն, իրոք նրանք խնամքով հավաքում և ընդհանրացնում են գիտության, բնագիտության մեջ եղած սխալն ու հետադիմականը։ Այսպես, օրինակ՝ որոշ աստղագետներ (Ջեմս Ջինսը և ուրիշները) պաշտպանում են այն հայացքը, թե տիեզերքի մեքենան մշտապես բեկբեկվում է, կոտրատվում է ու քայքայվում, իսկ նրա ռեկոնստրուկցիան բնության ուժերով անհնարին է. նրանց կարծիքով տիեզերքի մեջ կա միայն սպառում, չկան բարձրացող, ստեղծագործական պրոցեսներ, բնության բոլոր պրոցեսներն անփոխակերպելի են, այսինքն՝ նրանք մի գծով գնում են դեպի անվերադարձ քայքայումն ու անկումը. մատերիան և էներգիան անզսպելի ուժով ցրվում են տիեզերքի անհուն դատարկության մեջ. մատերիան ինքն իրեն սպառում է ճառագայթման ձևով։ Մատերիայի սպառման հետ կապված վերջանում է նաև նրա շարժումը։

Անգլիացի աստղագետ Ջեմս Ջինսի «Խորհրդավոր տիեզերք» գրքի նման «իդեաների» մասին Ջ. Բեռնալը «Գիտությունը և հասարակությունը» իր գրքում նկատել է, որ այդ իդեաները տանում են դեպի միստիցիզմը ու սնահավատությունը։ Իդեալիստ փիլիսոփաները կառչում են բնագիտության մեջ եղած հենց այսպիսի մտքերից։ Պատահական չէ, որ շատ իդեալիստ-փիլիսոփաներ մինչև այսօր էլ նվիրվածությամբ օգտվում են Կլաուզիուսի էնտրոպիայի սկզբունքից, ըստ որի տիեզերքի էնտրոպիան ձգտում է դեպի մաքսիմումը. էներգիայի այն մասը, որն այլևս չի կարող փոխարկվել մեխանիկական էներգիայի,

Կլաուզիուսը անվանում է էնտրոպիա (դեպի ներս դարձած ուժ)։ Երբ էնտրոպիան հասնի մաքսիմումին, կդադարի ամեն օրգանական կյանք և ամեն մի անօրգանական շարժում, իսկ դա էլ հենց կլինի տիեզերքի վախճանը։

Սակայն, հայտնի է, որ էնտրոպիայի սկզբունքը վաղուց է քննադատվել ամենանշանավոր բնագետների կողմից։ Գերմանական հայտնի մտածող, բնագետ Էրնստ Հեկկելը «Տիեզերական առեղծվածներ» իր գրքում հանգամանորեն վերլուծել և ցույց է տվել այս տեսակետի հակագիտականությունը։ Հեկկելը դատում է այսպես. եթե էնտրոպիայի մասին եղած ուսմունքը ճիշտ լիներ, այդ դեպքում տիեզերքի ենթադրյալ «վախճանին» պիտի համապատասխաներ և «սկիզբը»։

Մինչդեռ «տիեզերքը չունի սկիզբ ճիշտ այնպես, ինչպես որ չունի վերջ։ Ինչպես որ տիեզերքն անսահման է, այնպես էլ նա մնում է հավիտենական շարժման մեջ. կենդանի ուժի փոխարկումը առաձգականի և ընդհակառակը, տեղի է ունենում անդադար կերպով և այդ ակտուալ և պոտենցիալ էներգիաների գումարը մնում է շարունակ նույնը» (Էրնստ Հեկկել «Տիեզերական առեղծվածներ», էջ 217, 1937 թ.)։

Իդեալիստները, շարունակելով կառչել բնագետների հայացքների ամենաթույլ կողմերին, գիտությունների արդեն բարձր աստիճանում վերականգնեցին «տիեզերքի վախճանի» մաշված վերսիան նոր տերմինաբանությամբ։ Սկսեցին խոսել «մատերիայի չքացման» մասին։ Լենինը մեծ ուժով և հետևողականորեն բացահայտեց և ցույց տվեց այդ դրույթի խորապես ռեակցիոն, սպիրիտուալիստական էությունը։ «Մատերիայի չքացման» դրույթով իդեալիստները ոչ միայն մատ են պարզում դեպի հոգևորականները, այլև ամբողջ ձեռքն են մեկնում նրանց։ Լենինը լայն ընդգրկումով հիմնավորեց այն դրույթը, որ մատերիան երբեք չի կարող չքանալ, ինչպիսի նոր էլեմենտներ էլ հայտնաբերվեն, որովհետև մատերիայի միակ «հատկությունը»՝ մեր գիտակցությունից դուրս գոյություն ունենալու հատկությունն է։ Իրոք ոչ թե մատերիան է չքանում, այլ ընդարձակվում են մեր մտքի, իմացության սահմանները. մեր գիտելիքները դառնում են ավելի ստույգ ու խոր. «չքանում են մատերիայի այնպիսի հատկություններ, որոնք առաջ թվում էին բացարձակ, անփոփոխ, նախասկզբնական (անթափանցելիություն, իներցիա, զանգված և այլն) և որոնք այժմ երևան են գալիս որպես հարաբերական հատկություններ, որ հատուկ են մատերիայի մի քանի կացությունների» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատոր 14, էջ 346)։ Իմացության խորացման հետ կապված օրըստօրե հայտնագործվում են մատերիայի նոր ձևեր, շարժման նոր ձևեր։

Կրոնի ժամանակակից «լուսավորված», «գիտուն» իդեոլոգները «հենվելով» բնագիտության նվաճումների վրա, փորձում են գիտականորեն ապացուցել աստծու գոյությունը։ Այսպես, օրինակ՝ ֆրանսիացի հոգևորական Աբատ Լյամետրը «գիտականորեն» հաստատել է, որ «աշխարհը ստեղծվել է երկու միլիարդ տարի առաջ»։ Եթե աշխարհը, տիեզերքը ստեղծվել է, ուրեմն պետք է լինի ստեղծողը. բոլորովին էլ էական չէ, թե ինչ անունով է հանդես գալիս բնության ստեղծողը։ Աբատ Լյամետրը մինչև իսկ այդ ստեղծող արարիչը կնքում է «ստեղծող ատոմ» անունով։

Իդեալիզմը և կրոնը ամեն կերպ աշխատում են գիտությունը շեղել իսկական ճանապարհից՝ բնության օբյեկտիվ կապերը ուսումնասիրելու և ճանաչելու ձգտումից։ Եթե նույնիսկ ընդհանրապես իդեալիստները խոսում են օբյեկ-



տիվության մասին, ապա դա այն օբյեկտիվությունը չէ, ինչ գիտությունը դրա տակ հասկանում է։ Լենինը նկատել է, որ իդեալիստը միշտ էլ դիմում է «շըրջանցիկ ուղիների», որպեսզի այս կամ այն կերպ օբյեկտիվությունը «մակաբերի» ոգուց, գիտակցությունից, «հոգեկանից»։ Դրան հակադիր «մատերիալիզմի հիմնական գիծը հենց այն է, որ նա ելնում է գիտության օբյեկտիվությունից, գիտության կողմից արտացոլվող օբյեկտիվ ռեալության ճանաչումից...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատոր 14, էջ 394)։

Բնության պատկերի ինչպիսի՜ աղճատում է ստացվում, երբ ասենք, տարածությունն ու ժամանակը հայտարարվում են որպես զգայությունների շարքերի կարգավորված կամ ներդաշնակցված սիստեմներ։

Ստացվում է, որ ո՛չ թե մարդն իր զգայություններով գոյություն ունի տարածության և ժամանակի մեջ, այլ այդ վերջինները գոյություն ունեն մարդու մեջ և ստեղծվում են մարդու կողմից։ Ո՛չ թե բնությունն է մեզ տալիս տարածությունն ու ժամանակը, այլ մենք ենք դրանք տալիս բնությանը։ Ժամանակակից իդեալիստները կանգնելով նույն սխալ տեսակետի վրա, ժամանակն ու տարածությունը ներկայացնում են որպես ինտուիցիայի, պատկերացումների ձևեր, այսինքն՝ «ամեն մի մարդու համար գոյություն ունի իր սուբյեկտիվ ժամանակը»։

Լենինը խստորեն քննադատելով իդեալիստական այս տեսակետը՝ նկատել է, որ չի կարելի փիլիսոփայության մեջ հետևողականորեն անցկացնել ֆիդեիզմին և իդեալիզմին թշնամի տեսակետ, եթե վճռականորեն ու որոշակի չընդունենք, որ ժամանակի և տարածության մեր զարգացող հասկացություններն արտացոլում են օբյեկտիվորեն ռեալ ժամանակն ու տարածությունը։ Էնգելսը որոշակի շեշտել է, որ ժամանակի և տարածության օբյեկտիվ ռեալության բացասումը կապիտուլյացիա է ֆիդեիզմի հանդեպ։

Լենինը գրել է. «Բնության գոյությունը միլիոնավոր տարիներով չափվող ժամանակի մեջ՝ մինչև մարդու և մարդկային փորձի երևան գալը՝ ցույց է տալիս այդ իդեալիստական թեորիայի անհեթեթությունը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 14, էջ 229—230)։

Կրոնը հենց հենվում է իդեալիստական «թեորիայի անհեթեթության» վրա։ Այդ «անհեթեթությունները» դարերի ընթացքում նպաստել են կրոնական դոգմաների պաշտպանությանն ու ամրապնդմանը. եթե իսկապես բնության մեջ ռեալորեն գոյություն չունեն օրենք, օրինաչափություններ, եթե իրոք մատերիալ աշխարհին հատուկ չէ ժամանակն ու տարածությունը, ապա այդ դեպքում «տրամաբանական» է դառնում կրոնական հրաշքների, կախարդությունների, աստծու ամենակարողության, ամենահզորության վերսիան։ Ստացվում է, որ ամենակարողը ոչնչությունից ստեղծում է ամենինչը՝ չհանդիպելով ոչ մի արգելքի, ոչ մի դժվարության։

Ի տարբերություն հոգևորականների, որոշ իդեալիստներ ամեն կերպ ընդգծում, շեշտում են այն, թե իրենք հավատում են մտքի բանականության ուժին, թե իրենք ծառայում են մեծապատիվ գրվող բանականությանը, սակայն, իրոք իդեալիզմը ամեն ինչ անում է, որ շեղի բանականությունը իր իսկական ճանապարհից։

Բանականությունն այն ժամանակ է իրոք դառնում իսկական բանականություն, երբ ճիշտ է արտացոլում բնության օբյեկտիվ կապերը, հետամուտ է լինում այդ կապերի ուսումնասիրությանը, բացահայտում ու ճանաչում է

բնության և հասարակական կյանքի էական կողմերը, ներքին կապերը։ Բելինսկին ընդգծելով գիտական մտքի, բանականության ուժը, նշել է, որ բանականությունը հենվելով բնության ուժերի վրա «փոխում է կլիմաները, չորացնում ճահիճներն ու տունդրաները, պարարտացնում ավազային տափաստանները և թե մեկի, թե մյուսի վրա առաջացնում բուսական աշխարհի ճոխությունն ու պերճանքը, հրամայում է ջրին հոսել այնտեղ, որտեղ չկար, և ջրանցքներով միացնում է բնության անջատած ծովերը, լճերն ու գետերը, նրա գուրգուրած ծաղիկն ավելի գեղեցիկ ու հոտավետ է, քան վայրի աճող ծաղիկը, ջուրն ու քամին հլու աշխատում են նրա մեքենաների վրա, աղում են ու սղոցում» (Վ. Գ. Բելինսկի, Փիլիսոփայական ընտիր երկեր, հատոր 1, էջ 446)։

Իդեալիստական ասպեկտով բանականությունը ոչինչ չի կարող անել, որովհետև ամենից առաջ, նրանից դուրս, նրանից անկախ ոչ մի բան գոյություն չունի։ Իսկ եթե որոշ իդեալիստներ (օբյեկտիվ իդեալիստները) ընդունում են ինչ-որ օբյեկտիվ բան, ապա պետք է ասել, որ այդ օբյեկտիվությունը խաբուսիկություն է և չի կարող մատերիալ աշխարհից դուրս գոյություն ունենալ մի այնպիսի բան (բացարձակ իդեա), որը առաջացներ ողջ գոյություն ունեցողը։ Այսպիսով, կասկածից դուրս է, որ իդեալիզմի ելակետը հակագիտական է և օգնում է կրոնին, հանգում է կրոնին։

***

Կրոնը հասարակական աղճատված գիտակցության ձև է։ Էնգելսը ցույց է տվել, որ էպոխայի տնտեսական զարգացման յուրաքանչյուր տվյալ աստիճանը կազմում է այն հիմքը, որից առաջանում են նույնպես կրոնական պատկերացումները։ Այս տեսակետից էլ կրոնը նույնպես ունի իմացաբանական որոշ արմատներ, թեև նա ըստ էության ժխտում է իմացության, գիտական մտքի դերը աշխարհի երևույթների հասու լինելու գործում։ Կրոնը արտաքին ուժերի ֆանտաստիկ արտացոլումն է մարդկանց գլխում։

Շատ հեռավոր ժամանակներում, երբ գիտական միտքը սաղմնային դրության մեջ էր, երբ մարդկանց դրական գիտելիքները վերին աստիճանի անբավարար էին, այդպիսի արտացոլումը ուներ իր արդարացումը, սակայն զարգացման ավելի բարձր աստիճանում աշխարհի արտացոլման կրոնական ձևը ոչ միայն ավելորդ է դարձել, այլև, որը ավելի կարևոր է, արգելակում է առաջընթացը, դժվարացնում է մարդկային գիտական ճանաչողության ներգործությունը։

Չնայած կրոնի այսպիսի բացասական դերին, նա շարունակում է մնալ՝ իր շուրջը ստեղծելով առանձին հանդիսավորություն, հետամնաց խավերում պատվաստելով իր նկատմամբ հարգանք և երկյուղածություն։

Հարց է առաջ գալիս, իսկ ինչո՞ւ է դա այդպես։ Այդ երևույթի պատճառն առաջին անգամ լիակատար ձևով բացատրել է մարքսիզմ-լենինիզմը։ Առաջին հայացքից այսպիսի անհասկանալի երևույթը կապվում է կրոնի սոցիալ-դասակարգային արմատների հետ։

Լենինը բացահայտելով հին մատերիալիստների հայացքների թերությունը կրոնի առաջացման և պահպանման հարցի վերաբերյալ՝ հատուկ ընդգծել է կրոնի սոցիալական արմատները։ Կրոնը ծառայում է ունևոր, շահագործող դասակարգերին։ Աստծու իդեան, նկատել է Լենինը, ծառայում է Պուրիշկևի-



չին, Նիկոլայ II-ին, Ստրուվեին՝ ժողովրդին պահելու ստրկության մեջ։ Կրոնի նպատակն է թմրեցնել մասսաների գիտակցությունը, զրկել նրան իր դրությունը հասկանալու և նրանից դուրս գալու հնարավորությունից։ Գերցենը իր «Եղելություններ և խոհեր» աշխատության մեջ նկատել է, որ կրոնը մարդկային միտքն այն աստիճան է թմրեցրել, որ «մեզ անախորժ է թվում ամենայն բնական առողջը. մեր միտքը, որ դարերի ընթացքում խախտվել է, նողկում է մերկ գեղեցկությունից, ցերեկվա լույսից և պահանջում է մթնշաղ ու քող» (Ա. Ի. Գերցեն, «Եղելություններ և խոհեր», էջ 162, Գիրք Բ, 1952)։

Ամբողջ պատմության ընթացքում, իբրև կանոն, կրոնը մշտապես գործակցել է քաղաքական ռեակցիայի հետ համատեղ և իրոք շատ մեծ չարիքներ է պատճառել մարդկությանը։ Հայտնի գրող Սվիֆտը կրոնական պատերազմների մասին նկատել է, որ եթե հավաքելու լինենք կրոնական պատերազմների և երկպառակությունների ժամանակ այրված մարդկանց մոխիրը, այդ մոխրից կստացվի մի լեռ, որի բարձրությունը չի զիջի Մոնբլանին։

Կրոնի պատմության մեջ առանձնապես հանցագործ դեր է խաղացել պապականությունը։ Դաժանությունն ու նենգությունը պապականության հոգևոր սնունդն են եղել։ Դաժանության արտառոց օրինակներ են արսենալի մշտական զենքերն են եղել։ Դաժանության արտառոց օրինակներ են մտել պատմության մեջ։ Իբրև պատմական փաստ է նշվում այն օրինակը, երբ Պապի ռազմիկները 1209 թվականին ներխուժել են «հերետիկոսների» Բեզիե քաղաքը, զոկատների պետերը դիմել են Պապին՝ հարցնելով, «ինչպե՞ս տարբերել հերետիկոսներին կաթոլիկներից»։ Պապը պատասխանել է. «Կոտորեցեք բոլորին։ Աստվածն այն աշխարհում հավատացյալներին կջոկի անհավատներից»։

Լենինը նկատել է, որ ժամանակակից բոլոր կրոնները, եկեղեցիները և կրոնական կազմակերպությունները մարքսիզմը դիտել է որպես բուրժուական ռեակցիայի օրգաններ, որոնք ծառայում են շահագործմանը և բանվոր դասակարգի բթացմանը։

Մարքսի այն արտահայտությունը, թե կրոնը հաշիշ է ժողովրդի համար՝ բնորոշ է քննվող հարցի էությունը հասկանալու առումով։ Պատահական չէ, որ կապիտալիստական աշխարհում տիրապետող ռեակցիոն դասակարգը ձգտում է ամեն կերպ ամրացնել կրոնի խախտված դիրքերը, վերականգնել նրա վաղեմի ազդեցությունը մասսաների վրա։ Այս նպատակին հասնելու համար գործադրվում են շատ ձևեր և միջոցներ։

Չնայած քաղաքակրթության ժամանակակից շատ բարձր աստիճանին, գիտելիքների, գիտությունների մեծ բարձրությանը, իշխող բուրժուազիան իդեոլոգիայի բնագավառում պաշտպանում է հետամնացը, մեռնողը։ Այսպիսի անալոգիայի բնագավառում ... Ռեակցիոն բուրժուազիան մահու չափ խրոնիզմը սոցիալական ստատու ունի։ Ռեակցիոն բուրժուազիան մահու չափ վախենում է մասսաների ինքնուրույն քաղաքական գործողություններից, վախենում է սոցիալիզմից, մանավանդ ներկա աստիճանում, երբ նա վերածվել է համաշխարհային սիստեմի, երբ սոցիալիստական իդեաները թնավորում են աշխատավոր հոծ մասսաներին, գաղութային և կիսագաղութային ազգաբնակչության լայն շրջաններին՝ բարձրացնելով նրան գաղութակալության նոր ձևերի դեմ։

Անգլիացի աչքի ընկնող սոցիոլոգ Մ. Կորնֆորտը իր «Դիալեկտիկական մատերիալիզմ» գրքում բնորոշելով ժամանակակից ռեակցիոն պաշտոնական շրջանների տենդենցները սոցիոլոգիայի, փիլիսոփայության մեջ՝ նկատել է

նրանց բոլորի մոտ մի ընդհանուր գիծ՝ հակում դեպի միստիցիզմն ու ֆիդեիզ-
մը։ Նա գրել է. «Բոլորն էլ ձգտում են արտահայտել միևնույն հայացքը, հենց
այն, որ մարդուն տրված չէ գիտենալ իր ճակատագիրը, որ նա կախված է խոր-
հրրդավոր ուժի ողորմածությունից, մի ուժ, որը նա ՚ի վիճակի չէ հասկանալ»
(М. Корнфорт, «Диалектический материализм», էջ 234, 1956)։ Այնուհետև,
նույն հեղինակը նկատում է, որ նրանք խոսում են այն մասին, «թե բանակա-
նությունն անզոր է, որ գիտելիքները պատրանքային են, որ նյութական պրոգ-
րեսը—դա սխալ է և որ այն միջոցները, որոնց օգնությամբ մարդիկ հույս ունեն
հասնելու այդ նպատակին, հասցրեցին մարդկանց դժվարությունների և դըժ-
բախտությունների» (նույն տեղ, էջ 230)։

Պետք է նկատել, որ միշտ չէ, որ բուրժուազիան հակված է եղել դեպի
խավարամտությունն ու միստիցիզմը։ Հայտնի է, որ եղել են ժամանակներ,
երբ բուրժուազիան, ի դեմս իր առաջավոր մտածողների, փիլիսոփաների, սուր
պայքար է մղել կրոնի դեմ։ 18-րդ դարի ֆրանսիական մատերիալիստները—
Հոլբախը, Դիդրոն, Հելվեցիուսը և ուրիշները այրող ատելությամբ էին խոսում
կրոնի, նրա խաղացած դերի մասին։ Հելվեցիուսը մեծ կրքոտությամբ նկատել
է, որ ամեն կրոնի խնդիրն է թմրեցնել մարդու մեջ գիտության ձգտումը։ Այն
հարցին, թե ո՞րն է կրոնի օգուտը, նշանավոր փիլիսոփան պատասխանել է.
կրոնի «օգուտը» միայն «երևակայական օգուտ է»։

Հոլբախը շոշափելով աստծու հարցը, ցասումով շեշտել է. չի կարելի սի-
րել այնպիսի էակի, որի վերաբերյալ իդեան միայն սարսափ է առաջացնում։
Ըստ Հոլբախի, ամեն մի երկրում կրոնը դահճի կրոն է։ Ֆրանսիական մատե-
րիալիստների՝ դեսպոտիզմի նկատմամբ տածած ատելությունը վերաբերում
էր և կրոնին այն պատճառով, որ դեսպոտիզմի գոյությունը սրբագործվում էր
կրոնով։ Իսկական ազատությունը, բարօրությունը կապված էր դեսպոտիզմի
տապալման և դրա հետ միասին կրոնի վերացման հետ։ Նրանք ձգտում էին
պրոգրեսին, իսկ այդ ճանապարհի վրա լուրջ խոչընդոտներից մեկը կրոնն
էր, որի դեմ և մատերիալիստները կրքոտ պայքար էին մղում։

Կրոնը իդեալիզմի հետ միասին իրոք շատ մեծ խոչընդոտներ է ստեղծել
մարդկային իմացության ճանապարհին, դժվարացրել է երևույթների, պրոցես-
ների իսկական պատճառական կապերի բացահայտման և ճանաչման ջանքերը։

Կրոնի և իդեալիզմի ներկայացուցիչները ջանում են ցույց տալ, որ տիե-
զերական վիթխարի շենքի ամբողջ վեհասքանչությունը, բովանդակության ան-
ընդգրկելի մեծությունը մատչելի է դառնում մարդկային ոգուն միայն այն ժա-
մանակ, երբ նա դիտվի աստվածային ստեղծագործության լույսով, կամ ինչ
որ հավիտենական իդեայի «գործունեության» ասպեկտով։ Պետք է ասել, որ
նման պնդումը գիտությունը վաղուց է հերքել։

Գիտության նշանավոր ներկայացուցիչները ցույց են տվել, որ կանգնելով
կրոնի, իդեալիզմի հողի վրա, ոչ մի արգասավոր բանի չենք կարող հանգել.
բնությունը կմնա յոթ կնիքով կնքված գաղտնիք։ Տիեզերքի անսահման մեծու-
թյունը, նրա դրսևորումների վիթխարի բազմազանությունը, մատերիայի ան-
սպառելիությունը ավելի ու ավելի է ակնհայտ դառնում նյութական արտա-
դրական հնարավորությունների զարգացման հետ կապված։

Իդեալիստական կրոնական տեսակետը ոչ մի հոյակապություն չի կարող



բացահայտել, առավել ևս չի կարող նպաստել մարդկության մտահորիզոնի
ընդլայնմանը։
Հեկկելը քննադատելով իդեալիստական-կրոնական տեսակետը՝ գրել է.
«քանի դեռ Արարչին մարդ պատկերացնում էր մարդկային կերպարանքով, որ
մտածում է ուղեղով, տեսնում աչքերով, ստեղծագործում ձեռքերով, կարելի էր
դեռ «այդ աստվածային մեքենագործի», նրա գեղարվեստական աշխատանքի և
նրա տիեզերական մեծ արհեստանոցի մասին որևէ պատկերացում ունենալ։
Բայց երբ աստծու գաղափարը պարզվեց, երբ «անտեսանելի աստծուն» սկսե-
ցին տեսնել առանց մարմնական գործարանների (գազանձև էակ), այդ պատ-
կերացումն ավելի դժվարացավ» (Էրնստ Հեկկել, «Տիեզերական առեղծված-
ներ», էջ 230)։
Բնագիտության մեջ իդեալիզմի բացասական ազդեցությունն այս ուղղու-
թյամբ արտահայտվեց նրանով, որ Հեկկելի արտահայտությամբ, գիտակցորեն
կառուցող աստծու տեղը դրեց անգիտակցորեն ստեղծագործող «կենսուժը», մի
անհայտ, նպատակահարմարորեն գործող ուժ։ Բնագիտության մեջ հայտնի է
վիտալիզմի բացասական դերը։ Իսկ վիտալիզմը իրոք առաջնորդվում է իդեա-
լիզմի հիմնական դրույթներով։ Այն փաստը, որ իդեալիզմի ազդեցությունը
իմացության բոլոր ոլորտներում հասցնում է բացասական արդյունքների,
ցույց է տալիս իդեալիզմի հակագիտականությունը։ Հենց այդ հակագիտակա-
նությունն էլ կրոնի համար ընդունելի է։ Պատմական այն անժխտելի փաստը,
որ երկար դարերի ընթացքում իդեալիզմն ու կրոնը համերաշխորեն գործակցել
են իրար հետ՝ դա հենց ապացուցում է նրանց միջև եղած հարազատ ընդհան-
րությունը։
Լենինը ցույց է տվել, որ իդեալիզմը ճանապարհ է դեպի կրոնը մարդկա-
յին անհունորեն բարդ իմացության միջոցով. իդեալիզմը մարդկային իմացու-
թյան մի կողմը, մի հատկությունը կտրում է մատերիալ ռեալ աշխարհից, չա-
փազանցնում է այն և դարձնում աբսոլյուտ, որից էլ վերջին հաշվով, դուրս է
բերում ամբողջ աշխարհը։ Մտքի, իմացության ակտիվ ստեղծագործական նշա-
նակությունը վերցվում է որպես մեկընդմիշտ տված բան, որպես վերուստ
սահմանված ընդունակություն, որից էլ դուրս են բերվում ռեալ աշխարհի բո-
լոր ձևերն ու հնարավորությունները։
Թույլատրելով կրոնական հավատալիքների ազատություն, սովետական
օրենսդրությունը լիակատար ազատություն է տալիս և գիտական աթեիզմի
պրոպագանդային։ Մեր աթեիզմի փիլիսոփայական հիմքը՝ մատերիալիզմն է,
որը վաղուց և անվերադառնալիորեն հերքել է կրոնի ռեակցիոն էությունը և
նրա սերտագույն կապը իդեալիզմի հետ։
Իդեալիզմի և կրոնի հայրերը թերևս հիշեն այն պատմական իրողությու-
նը, երբ Ալեքսանդր Մակեդոնացու և Հռոմի կայսրության դարերում կայսրերը
դասվում էին աստվածների շարքը։ Իհարկե այդ արվում էր կրոնի սպասավոր-
ների օրհնությամբ։ Ո՞վ չգիտե, որ հռոմեական սենատոր Թրազեին գլխատե-
ցին լոկ այն պատճառով, որ նա հանդգնեց Ներոնին և նրա տիկնոջը աստվա-
ծային չհամարել։
Կրոնի և ոչ մի ջատագովի չի հաջողվել ժխտել, որ քրիստոնեական եկեղե-
ցին եղել է և կապիտալի բոլոր երկրներում դեռ մնում է իբր ֆեոդալական և
կապիտալիստական կեղեքող հաստատություն։
Հարկ կա՞ շեշտելու, որ արդի Վատիկանը աշխարհի խոշորագույն բան-

*կիրներից մեկն է։ Նա ունի ոչ միայն մեծարժեք երկաթուղային ակցիաներ, ռազմական արդյունաբերական ձեռնարկություններ, այլև խոշոր փոխառություններ է տալիս ռեակցիոն կառավարություններին և բոլոր միջոցներով օգնում է իմպերիալիզմի ամրապնդմանը։ Այդ նույն Վատիկանը չէ՞ր, որ սրբագործեց Մուսոլինիի վարած ֆաշիստական պատերազմը Հաբեշստանի դեմ և անգամ փոխառություն տվեց Իտալիայի ֆաշիստական կառավարությանը։ Միևնույն խավարամիտ Հռոմի պապն էր, որ աջակցեց Հիտլերի ավազակային պատերազմին և սրբագործեց ժողովուրդների ստրկացման «Մարշալլի պլանը», կանգնելով իմպերիալիզմի բլոկի կողմը։*

*Կրոնի հարցում մենք ելնում ենք այն բանից, որ «Քրիստոնեության սոցիալական սկզբունքները արդարացնում էին անտիկ ստրկությունը, փառաբանում էին միջնադարյան ճորտատիրությունը և նմանապես կարողանում են, հարկ եղած դեպքում, թեկուզ և խղճուկ ծամածռությամբ պաշտպանել պրոլետարիատի արդի կեղեքումը»* (К. Маркс-Ф. Энгельс, Соч., т. 5, стр. 173)։

*Որ այսօր էլ կապիտալի երկրներում կրոնը մնում է մեծագույն արգելք մարդկության առաջխաղացման ճանապարհին՝ սա հերքել չի կարող և ոչ մի խելքը գլխին իդեալիստ։ Սա չի խանգարում նրան, որ կապիտալիստական երկրներում լայն տարածում են գտել այնպիսի «փիլիսոփայական» հոսանքներ, որոնք իրենց էությամբ բացահայտ ռեակցիոն են։*

*Այսպես, օրինակ, միջնադարյան սխոլաստիկայի հայր Թովմա Աքվինացու (1225—1274) այն ռեակցիոն հայացքը, թե մարդու բարձրագույն նպատակը աստծո հայեցումն է, թե թագավորները աստծու կամքի արտահայտիչներն են, թե ով դեմ է իշխողներին, նա ծանր մեղք է գործում և այլ խավարամտություններ, այսօր վերականգնվում են ավելի նուրբ ձևերով։ Այսպես կոչված նեոթոմիստները մեր օրերում ընթանալով Աքվինացու ուղիով՝ պահանջում են գիտությունից՝ ենթարկվել կրոնական դոգմաներին, հրաժարվել պրոգրեսիվ գիտության մատերիալիստական սկզբունքներից։ Նրանք պնդում են, որ մարդկության դժբախտությունների պատճառը գիտությունն է, որը աշխատավորներին անելություն է ներարկում շահագործողների հանդեպ և այդպիսով ծնում է մեծագույն մեղքը։*

*Որ իդեալիզմը եղել է և մնում է կրոնի հենարանը, կարելի է ապացուցել թեկուզ նրա արդի տարատեսակներից մեկի՝ էմերջենսականության (էմերջենս նշանակում է՝ ծագում, առաջացում) հետ ծանոթանալով։ Անգլո-ամերիկյան այս արտառոց մտահոսանքի ներկայացուցիչները պնդում են, թե շարժումը կարող է լինել առանց մատերիայի, որ իբր թե շարժումը խորհրդավոր, հոգեկան պրոցես է, որը ղեկավարվում է աստծո կողմից, որպես թե բանը ծագում է ոչնչից։ Յուրաքանչյուր ծագում և պրոցես, ասում են էմերջենսականները, պատճառազուրկ, անըմբռնելի և բանականության համար անհասկանալի հրաշք է։*

*Դժվար չէ հասկանալ, որ այս «փիլիսոփայությունը» լիովին կանգնած է ռեակցիոն տերտերականության դիրքերում և անվերապահորեն սպասարկում է կրոնին։ Սրա լավագույն ապացույցը կարող են լինել ռեակցիոն ֆիզիկո-մաթեմատիկոս Ուայտեկերի և Վատիկանի այլ աստղաբաշխների ելույթները, որոնք գուժում են «աշխարհի վերջը», համբակորեն քարոզելով աշխարհի վախճանականությունը և նրա ստեղծողի՝ աստծո հավերժականությունը։*

*Այսպես օրինակ, ժամանակակից գերմանական խոշոր ֆիզիկոս Հեյզեն-*



*բերգը տուրք տալով կանտյան իդեալիզմին, պնդում է, որ «ինքնին իրը» անիմանալի է, և անհնար՝ «չափումների հիման վրա եզրակացություններ անել զննվող օբյեկտների հատկությունների վերաբերյալ»։ Ծգնելով մատերիալիստական հայացքի դեմ փաստարկներ բերել, նա մատերիալիզմի գլխավոր «պակասությունը» համարում է օբյեկտիվ ռեալականությունը։ Հեյզենբերգի նման դատողությունները վերջին հաշվով բերում են նրան, ինչ կոչվում է սոլիպսիզմ և սուբյեկտիվ իդեալիզմ։ Նա պեսիմիստորեն չի հավատում գիտական պրոգրեսի հնարավորությանը։*

*Թե՛ իդեալիզմը և թե՛ կրոնը ժողովրդի մեջ սերմանում են միանգամայն հակագիտական և սխալ հայացքներ, որոնք խանգարում են հասարակության առաջընթացը։ Միայն դիալեկտիկական-մատերիալիստական աշխարհայացքն է, որ հնարավորություն և ուղիներ է նշում մարդկության իրական երջանկության համար։ Այդ ուղիները բերում են դեպի կոմունիզմ, ուր հասարակական կյանքը կազմակերպվում է հանրային աշխատանքի և հանրային սեփականության արդար ու բանական հիմքերի վրա, ուր վերանում է ամեն կրոն և թագավորում է բանականության լույսը։*

*Պայքարը կրոնի դեմ չպետք է շփոթել դավանանքի, խղճի ազատության հետ։ Ոչ մի երկրում, ոչ մի ժամանակաշրջանում չի ապահովվել պետության կողմից դավանանքի ազատությունը այնպես, ինչպես այդ մեզ մոտ է։ Հայտնի է դավանանքների հարցում հին պետությունների և ժամանակակից բուրժուական պետությունների խտրական քաղաքականությունը. մի դավանանք հալածվում է հանուն մի այլ դավանանքի. շատ դեպքերում բացակայում է տարրական հանդուրժողականությունը։*

*Սովետական պետությունը չի հանդուրժում ոչ մի ոտնձգություն հավատի ազատության նկատմամբ և թույլ չի տալիս հավատի հետ կապված հանդիսավոր և ոչ հանդիսավոր ծիսակատարությունների կատարման ոչ մի ձևի խափանում։ Սակայն, սովետական կարգերի բնույթը մաքսիմալ չափերով նպաստում է աշխատավորության գիտակցության արագ և անշեղ զարգացմանն ու խորացմանը, այդ կարգերը օրըստօրե ավելի մեծ հնարավորություններ են տալիս ազատագրվելու ամեն կարգի նախապաշարումներից՝ կանգնելով զարգացման մեծ ճանապարհի վրա։ Մարքսիստական-լենինյան փիլիսոփայությունը գիտական բարձր տեսակետից բացատրում է բնության, հասարակության և մարդկային մտածողության զարգացման ամենաընդհանուր օրենքները և դրանով էլ նա հանդիսանում է սուր զենք ոչ միայն աշխարհը բացատրելու, այլև վերափոխելու համար։*

# ՕՏԱՐԵՐԿՐՅԱ ՄՈՆՈՊՈԼԻՍՏԱԿԱՆ ԿԱՊԻՏԱԼԻ ԷՔՍՊԱՆՍԻԱՆ ԹՅՈՒՐՔԻԱՅՈՒՄ

Ռ. ԿՈՆԴԱԿՉՅԱՆ

Ժողովուրդների վզին նոր աշխարհավեր պատերազմ փաթաթելու իրենց
ավանտյուրիստական պլաններում ամերիկյան ռազմամոլ մոնոպոլիստական
շրջանները մեծ տեղ են հատկացնում Մերձավոր ու Միջին Արևելքի երկրնե-
րին ու հատկապես Թյուրքիային։ Եվ դա պատահական չէ։ Թյուրքիան անմի-
ջականորեն սահմանակից է Սովետական Միությանը, ժամանակակից
ռազմական տեխնիկա կիրառելու տեսակետից մոտ է Սովետական Միու-
թյան ու եվրոպական սոցիալիստական երկրների կենսականորեն կարևոր
շրջաններին։ Թյուրքիան վերահսկում է ստրատեգիական ու տնտեսական մեծ
նշանակություն ունեցող սևծովյան նեղուցներին, կարևոր դիրք է գրավում
Միջերկրական ծովի արևելյան ավազանում։

Ահա թե ինչու զարմանալի չէ, որ երկրորդ համաշխարհային պատերազ-
մի ավարտումից հետո, երբ շարքից դուրս եկան Գերմանիան, Իտալիան, իսկ
Անգլիայի ու Ֆրանսիայի դիրքերն զգալիորեն թուլացան, համաշխարհային
տիրապետության ձգտող ամերիկյան իմպերիալիստները իրենց մագիլները
տարածեցին դեպի Թյուրքիա և Մերձավոր Արևելքի մյուս երկրները։ Հանդես
գալով հետամնաց երկրներին «օգնելու» սորկացուցիչ պլաններով՝ սկսած
«Տրումենի դոկտրինայից», «Մարշալլի պլանից» և վերջացրած բոլորովին վեր-
ջերս թխված, ագրեսիվ նպատակներ հետապնդող «էյզենհաուերի դոկտրինա-
յով», ամերիկյան մոնոպոլիստները, ելնելով իրենց ագրեսիվ ռազմական ու
տնտեսական շահերից, այդպիսի «օգնության» օղակը առաջին հերթին փա-
թաթեցին Թյուրքիայի վզին, նրան ներքաշելով իրենց ավանտյուրիստական
քաղաքականության հորձանուտի մեջ։ Թյուրքիան միացավ Հյուսիս-Ատլան-
տյան ու Բաղդադի ռազմական ագրեսիվ խմբավորումներին։

Ամերիկյան իմպերիալիստները Թյուրքիան վերածում են ռազմա-ստրա-
տեգիական պլացդարմի, այնտեղ կառուցում են ռազմա-օդային և ռազմա-
ծովային բազաներ, ստրատեգիական ճանապարհներ։ Ամերիկյան զինվորա-
կանները վերազինում ու մարզում են թյուրքական բանակը, որն արդեն կորցրել
է իր ազգային բնույթը և գտնվում է Հյուսիս-ատլանտյան ռազմական խմբա-
վորման հրամանատարության տակ։ Թյուրքիայի վերածումը ռազմական բաս-
տիոնի՝ ամբողջությամբ ուղղված է Սովետական Միության, ժողովրդա-դե-
մոկրատական երկրների, ինչպես նաև իրենց անկախության համար պայքա-
րող արաբական երկրների դեմ։ Հենց վերջերս Եգիպտոսի դեմ կատարված
ագրեսիայի ժամանակ անգլո-ֆրանսիական ռազմական նավերին սպասար-
կում էին նաև թյուրքական ռազմա-ծովային բազաները։



Սակայն, ամերիկյան մոնոպոլիստները Թյուրքիան դիտում են ոչ միայն
որպես սոցիալիզմի խաղաղասեր լագերի երկրների դեմ ուղղված ռազմական
պլացդարմ, այլև որպես կապիտալ ներդրումների ու իրենց ապրանքների
սպառման շահավետ ոլորտ։ Այս նպատակով Ամերիկայի Միացյալ Նահանգ-
ները Թյուրքիայի հետ կնքել են մի շարք անհավասար տնտեսական ու առև-
տրական պայմանագրեր, բաց են թողնում ստրկացուցիչ վարկեր և փոխա-
ռություններ։

Երկրորդ համաշխարհային պատերազմից սկսած մինչև անցյալ տարի,
ԱՄՆ-ը Թյուրքիային տրամադրել են 1,5 միլիարդ դոլարի ռազմական
և տնտեսական օգնություն։ Այդ նույն ժամանակամիջոցում թյուրքական կա-
ռավարողները ամերիկյան իմպերիալիստների ճնշման տակ երկիրը հյուսիս-
ատլանտյան խմբավորման պլացդարմ դարձնելու նպատակով ծախսել են
ավելի շատ, քան ամերիկյան ռազմական օգնությունն էր։ Միայն 1956—57
թ. թ. համար ռազմական նպատակներով նախատեսված էր ծախսել 894 մլն.
լիրա, 11 տոկոսով ավելի քան 1955—56 թ. թ.։

Հայտնի է, որ Մուստաֆա Քեմալը և նրա կողմնակիցները, արտահայ-
տելով ազգային շահագործող բուրժուազիայի շահերը, վարում էին «էթաթիզ-
մի»՝ պետության կողմից ազգային էկոնոմիկայի զարգացման ու հովանա-
վորման քաղաքականություն, որի շնորհիվ թյուրքական ազգային էկոնոմի-
կան նշանակալի առաջընթաց քայլ կատարեց սուլթանական ժամանակա-
շրջանի համեմատությամբ։

Երբ ամբողջ կապիտալիստական աշխարհով մեկ 1929—1933 թ. թ. մո-
լեգնում էր տնտեսական ճգնաժամը, միայն Սովետական Միությունն էր, որ
Թյուրքիային օգնության ձեռք մեկնեց։ Սովետական Միությունը առանց տո-
կոսների քսան տարի ժամանակով Թյուրքիային ոսկով ութ միլիոն դոլար
վարկ տրամադրեց։ Թյուրքիան երբեք իր պատմության մեջ այդպիսի անշա-
հախնդիր տնտեսական օգնություն ոչ մի երկրից չէր ստացել։ Բայց երկրորդ
համաշխարհային պատերազմից հետո թյուրքական կառավարողները կողմ-
նորոշվելով դեպի արևմտյան երկրները՝ անցկացրին մի շարք միջոցառումներ,
որոնք խրախուսում էին օտարերկրյա կապիտալի դիրքերի ուժեղացումը երկ-
րի էկոնոմիկայում։

Թյուրքական դեմոկրատական պարտիան արտահայտելով խոշոր և միջ-
նորդ բուրժուազիայի, ֆինանսական օլիգարխիայի ու կալվածատիրության շա-
հերը և իշխանության անցնելու համար ձգտելով հովանավորություն գտնել
ամերիկյան մոնոպոլիստների մոտ, իր քաղաքական գործունեությունն սկսեց
օտարերկրյա կապիտալի ներթափանցմանը աջակցելու նշանաբանով։ Նույն-
իսկ այդ պարտիայի ծրագրի 43-րդ հոդվածը լիակատար ազատություն է ըն-
ձեռնում օտարերկրյա կապիտալի ներթափանցմանը Թյուրքիա՝ թյուրքական
ազգային մասնավոր կապիտալի գործունեության հետ հավասար սկզբունք-
ներով։

Ահա թե ինչու ամերիկյան մոնոպոլիստական շրջանները թյուրքական
մեջլիսի 1950 թվականի մայիսի հերթական ընտրությունների ժամանակ
վճռական աջակցություն ցույց տվին դեմոկրատական պարտիային։

Դեռ մինչև դեմոկրատական պարտիայի իշխանության գլուխ անցնելը,
Թյուրքիայում հիմնվեց արդյունաբերության զարգացման թյուրքական բանկ,
որի կապիտալի 50 տոկոսը (9 մլն. դոլար) տրամադրել էին ամերիկյան բան-

կերը։ Ըստ այդ բանկի կանոնադրության՝ վերջինս իր գործունեությամբ պետք է նպաստի և խթանի օտարերկրյա կապիտալի էքսպանսիան Թյուրքիայի արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ։

Անցնելով իշխանության գլուխ, դեմոկրատական պարտիայի կառավարությունը մշակեց օտարերկրյա կապիտալի ներթափանցմանն աջակցող օրինագիծ, որը և հաստատվեց մեջլիսի կողմից 1951 թվականի օգոստոսի 1-ին։ Թյուրքական կառավարության ընդունած օրենքի համաձայն օտարերկրացիները իրավունք ստացան կապիտալներ ներդնելու արդյունաբերության տարբեր ճյուղերի, կապի ու տուրիստական կազմակերպությունների գծով։

Այդ օրենքը բավականաչափ ընդարձակեց օտարերկրյա կապիտալի գործունեության շրջանակները։ Օտարերկրյա կապիտալի ներհոսումը Թյուրքիա, որոշակիորեն ուժեղացավ։ Արդեն մի տարվա ընթացքում օտարերկրյա կապիտալ ներդրումները կազմեցին մոտ 15 մլն. թ. լիրա (թյուրքական 1 լիրան՝ = 1 ռ. 40 կոպեկի) գլխավորապես քիմիական ապրանքների ու պարարտանյութերի և ցեմենտի արտադրության մեջ։ Վերոհիշյալ կապիտալ ներդրումները կատարվել էին ամերիկյան, արևմտա-գերմանական ու հոլանդական ֆիրմաների կողմից։ Իսկ այլ տվյալներով արդեն 1952 թվականին ամերիկյան կապիտալ ներդրումները Թյուրքիայում կազմեցին 33 մլն. դոլար (մոտ 100 մլն. թ. լիրա), որից 11 մլն. դոլար ներդրվել էր նավթի և 6 մլն. դոլար ծխախոտի մշակման արդյունաբերության մեջ։ Ամերիկյան «Ֆորտիլայզեր կորպորեյշն օֆ Ամերիկա» ֆիրման Թյուրքիայում բացեց իր բաժանմունքը ծծմբաթթվի ու սուպերֆոսֆատի արտադրության համար, իսկ «Հիլտոն հոթելս» ֆիրման իր շրջանառու կապիտալը տրամադրեց Ստամբուլում «Լյուքս» հյուրանոցի կառուցման համար։ Վերոհիշյալ օրենքի ընդունումից հետո երկրում կառուցվեցին նաև մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ, ինչպես օտարերկրյա կապիտալի, այնպես էլ տեղական բանկերի և ձեռնարկատերերի մասնակցությամբ։

Չնայած մոնոպոլիստական կապիտալի ներթափանցման որոշակի ուժեղացմանը, ամերիկյան մոնոպոլիստները, այնուամենայնիվ, պահանջում էին ընդլայնել օտարերկրյա կապիտալի գործունեության շրջանակները և վերացնել շահույթների արտասահման փոխադրելու ասպարեզում եղած ամեն մի սահմանափակում։ Թյուրքիայում ամերիկյան նախկին դեսպան Ջորջ Մակքին, որը խոշոր նավթարդյունաբերող է Տեխասի նահանգում, արտահայտելով խոշոր մոնոպոլիստների անհագ ախորժակը, նույնիսկ գրել է, թե «1951 թվականի օրենքը չի ստեղծում անհրաժեշտ խթաններ օտարերկրյա կապիտալ ներդրումների համար»։

Օտարերկրյա կապիտալի ներթափանցմանն առավել աջակցող նոր օրենքի մշակման համար 1953 թվականի օգոստոսի վերջերին Թյուրքիա ժամանեց ամերիկյան էքսպերտների մի խումբ՝ պրեզիդենտ Էյզենհաուերի հատուկ օգնական ու ԱՄՆ-ի արտաքին տնտեսական քաղաքականության հանձնաժողովի նախագահ Կլարենս Ռենդոլլի գլխավորությամբ։ Ռենդոլլի միսիայի առաջարկություններում իր ուղղակի արտահայտությունը գտավ ամերիկյան մոնոպոլիստների «բաց դռների» ու «հավասար հնարավորությունների» իմպերիալիստական քաղաքականությունը։Ռենդոլլի միսիայի առաջարկությունների հիման վրա, որոնք իրենցից ներկայացնում էին թյուրքական կառավարողների նկատմամբ ամերիկյան մոնոպոլիստների բացահայտ ճնշման ար-



տառոց փաստերից մեկը, օտարերկրյա կապիտալի վերաբերյալ կազմվեց նոր օրինագիծ։

«Օտարերկրյա կապիտալ ներդրումներին աջակցելու» 1954 թվականի հունվարի 18-ի նոր օրենքի համաձայն, օտարերկրյա կապիտալի ուղղակի ներդրումները այլևս ոչնչով չեն սահմանափակվում։ Օտար կապիտալը ներդրվելու իրավունք է ստանում արդյունաբերության ցանկացած ճյուղում, իսկ օտարերկրյա կապիտալիստները շահույթները արտասահման փոխադրել կարող են ցանկացած չափով և ցանկացած ժամանակին։ Օրենքով օտարերկրյա կապիտալի իրավունքները հավասարվում են թյուրքական կապիտալի իրավունքներին։ Օտարերկրյա կապիտալը ապահովվում է դրամի արժեքազրկումից, իսկ ֆինանսների մինիստրությունն ապահովում է կապիտալ ներդրումները մինչև 1 մլրդ. թ. լիրա գումարով։ Այնուհետև, թյուրքական կառավարությունը 1954 թ. մարտի 7-ին ընդունեց նոր օրենք նավթի և նավթարդյունաբերության ապազգայնացման վերաբերյալ, որը կազմված էր ամերիկյան նավթային մասնագետների անմիջական մասնակցությամբ։

Նավթային նոր օրենքը նախատեսում է, որ մաքուր շահույթը բաժանվում է հավասար կերպով օտարերկրյա կապիտալի ու թյուրքական կառավարության միջև։ Թյուրքական կառավարությունը նավթային կոնցեսիաները օտարերկրյա ընկերություններին հանձնում է 40 տարի ժամանակով, որը կոնցեսիոներների պահանջով կարող է երկարացվել ևս 20 տարով։ Այն ժամանակ, երբ Մերձավոր ու Միջին Արևելքի ժողովուրդները համառ պայքար են մղում իրենց բնական հարստությունները և հատկապես նավթը՝ օտարերկրյա կապիտալի շահագործումից զերծ պահելու համար, թյուրքական կառավարության որոշումը նավթարդյունաբերության ապազգայնացման մասին մի հարված է այդ ժողովուրդների պայքարին։

Հիշյալ օրենքի ընդունումից հետո օտարերկրյա կապիտալի ներխուժումը թյուրքական էկոնոմիկայի մեջ, սկսեց ուժեղանալ ավելի քան երբևէ։

Անմիջապես Թյուրքիայում կապիտալ ներդրումների թույլտվություն ստանալու համար դիմեցին մոտ 150 օտարերկրյա ֆիրմաներ։ «Ֆորչուն» շաբաթաթերթի տվյալներով, մինչև 1954 թվականի հունիսը, ամերիկյան մոտ 12 ֆիրմաներ բանակցություններ էին վարում թյուրքական կառավարության հետ կապիտալ ներդրումների համար, այդ թվում՝ «Կլայմեկս մոլիբդենիում», «Ռոբեկ ընդ կոմպանի», «Բ. Ֆ. Գուդրիչ կոմպանի», «Նեյշն սիտի բենկ օֆ Նյուճորք» բանկը և մյուսները։ 1954 թվականի հուլիս ամսին արդեն 37 օտարերկրյա մոնոպոլիաներ կապիտալ ներդրումների թույլտվություն էին ստացել, այդ թվում 9 ամերիկյան, 5 անգլիական, 4 գերմանական, 2 ֆրանսիական և այլ ընկերություններ։ 1954 թվականի հունվարից մինչև 1955 թվականի ապրիլը ընկած ժամանակամիջոցում օտարերկրյա մոնոպոլիստները կապիտալ ներդրումների թույլտվություն ստացան 84,6 մլն. թ. լիրա գումարով, որից 22 մլն. թ. լիրա դեղագործական, 12,5 մլն. թ. լիրա ռետինի, 9,4 մլն. թ. լիրա տեքստիլ և 9 մլն. թ. լիրա ցեմենտի արդյունաբերութան մեջ («Մեժդունարոդնայա ժիզն», № 7, 1956 թ., էջ 145)։ 1955 թվականի նոյեմբերի 1-ին, մեջլիսի աշնանային նստաշրջանի բացման իր ճառում թյուրքական ռեսպուբլիկայի պրեզիդենտ Բայարը հայտարարեց, որ անցած ժամանակաշրջանում օտարերկրյա ֆիրմաներից ընդունվել է 140 առաջարկություն 120 մլն. թ. լիրա ընդհանուր գումարով («Զաֆեր» 2/11—55 թ.)։ Այդ նույն ժամա-

նակում օտարերկրյա ու տեղական կապիտալի համատեղ ներդրումները կազմել են 230 մլն. թ. լիրա։

Ամերիկյան «Ջեներալ տայեր ընդ ռաբբեր կոմպանի»-նՍտամբուլում կառուցում է ավտոդողերի գործարան, «Ինտերնեյշնլ խարվեստր»-ը՝ գյուղմեքենաների գործարան, «Աուսլետ ընկ.»-ը՝ պահեստամասերի գործարան և այլն (Օտարերկրյա տնտեսական ինֆորմացիայի բյուլլետեն № 35, 1954 թ., էջ 5)։ Ամերիկյան «Վիլլիս մոտորս» ընկերությունը կառուցում է ավտոմոբիլային գործարան, տարեկան 20000 «Ջիպ» ու «Ստեյշն Ուեգոն» տիպերի ավտոմեքենաների արտադրությամբ։ Ավտոհավաքման գործարանը շահագործման հանձնվեց 1956 թվականի սկզբներին Թոզլա քաղաքում։

Օտարերկրյա նավթային ընկերությունները ևս ուժեղացրին իրենց ներթափանցումը Թյուրքիա։ Թյուրքական կառավարությունն արդեն հինգ օտարերկրյա նավթային ընկերությունների թույլատրել է զբաղվել երկրաբանական-հետախուզական աշխատանքներով։ Այդ նավթային ընկերություններից 4-ը ամերիկյան են՝ «Սոկոնի վակուում օյլ ընկ.», «Կալիֆորնիա Տեխաս ընկ.», «Ստանդարտ օյլ օֆ Նյու-Ջերսի» և «Կերն օյլ ընկ.» և մեկ անգլո-հոլանդական «Ռոյալ դատչ շելլ» նավթային ընկերությունը։ Օտարերկրյա մոնոպոլիստները իրենց ձեռքը գցեցին երկրում նոր հայտնաբերված վոլֆրամի պաշարները։

Միաժամանակ Թյուրքիայում կազմակերպվել են նաև մի շարք խառն ընկերություններ թյուրքական ու արտասահմանյան ձեռնարկատերերի մասնակցությամբ, որոնց բաժնեթղթերի կեսից ավելին ու կոնտրոլ ծրարը պատկանում են օտարերկրյա կապիտալին։

Հատկանշական է արևմտա-գերմանական կապիտալի էքսպանսիան թյուրքական էկոնոմիկայի մեջ։ Ինչպես հայտնի է, արևմտագերմանական մոնոպոլիաները վերականգնելով և գերազանցելով իրենց նախապատերազմյան տնտեսական պոտենցիալը, այժմ ուժգին թափով ներխուժում են Միջին ու Մերձավոր Արևելքի, Հարավ-արևելյան Ասիայի, Լատինական Ամերիկայի և Աֆրիկայի երկրները։

1950 թվականից սկսած Արևմտյան Գերմանիան Թյուրքիայի ներքին ու արտաքին առևտրի հաշվեկշռում գրավում է մերթ առաջին, մերթ երկրորդ տեղը, առաջ անցնելով Ամերիկայից ու Անգլիայից։ Արևմտյան Գերմանիայի և Թյուրքիայի առևտրական կապերում կարևոր դեր է կատարում «Մերձավոր Արևելքի գործերի հանձնաժողովը» (Համբուրգ), որը հանդիսանում է գերմանական Արևելյան ընկերության փոխանորդը։ Չնայած այն հանգամանքին, որ Արևմտյան Գերմանիայի և Թյուրքիայի միջև առևտուրը վերջինիս համար միշտ դեֆիցիտային է, այնուամենայնիվ, Արևմտյան Գերմանիան այդ առևտուրը շարունակում է Թյուրքիային երկարատև վարկեր տրամադրելու ու կլիրինգային առևտրական պայմանագրերի միջոցով։ 1954 թվականի մայիսին Արևմտյան Գերմանիան Թյուրքիային երկարատև վարկ տրամադրեց 150 մլն. արևմտա-գերմանական մարկ գումարով և 9 տարի ժամկետով, իսկ այդ նույն թվականի դեկտեմբերին ևս 225 մլն. արևմտա-գերմանական մարկ։ Արևմտյան Գերմանիան Թյուրքիայից ներմուծում է ցորեն, ծխախոտ, բամբակ, չոր մրգեղեն, ձկան պահածոներ, պղինձ ու քրոմի հանքանյութ և արտահանում է արդյունաբերական սարքավորում, հաստոցներ, էլեկտրատեխնիկական ու քիմիական ապրանքներ, գյուղատնտեսական ու բեռնատար մեքենաներ, տեքստիլ, ցեմենտ,



կարի մեքենաներ և այլն։ Արևմտա-գերմանական մոնոպոլիաների ներխուժմանը Թյուրքիա աջակցելու համար 1954 թվականի մարտին Թյուրքիա ժամանեց կանցլեր Ադենաուերը, որին թյուրքական կառավարողները խոստացան միջոցառումներ ձեռնարկել գերմանական արդյունաբերության մասնակցությունը կապիտալ ներդրումներում ապահովելու համար («Իզվեստիա» 23/3 1954 թ.)։

Հենց այդ ժամանակ Թյուրքիայում գտնվող պատերազմի հանցագործ Շախտը իր հերթին հայտարարեց, թե իբր «Թյուրքիան ու Գերմանիան տնտեսապես լրացնում են միմյանց» («Իզվեստիա» 20/3 1954 թ.)։

Արևմտա-գերմանական մոնոպոլիստները Թյուրքիայում եռանդուն գործունեություն են ծավալում կապիտալ ներդրումների ուղղությամբ, հիմնում են խառն ակցիոներական ընկերություններ, կառուցում են արդյունաբերական ձեռնարկություններ։ Արևմտա-գերմանական «Ա. Է. Գ.» տրեստը ստացել է Թունչբիլեքում էլեկտրակայան կառուցելու պատվերը՝ 32 մլն. դոլար արժողությամբ։ «Դոյչե բերգվերկս ունդ հյուտեն-բաու Ա. Գ.» ընկերությունը ստացավ շաքարի երկու գործարանների կառուցման պատվեր՝ 32 մլն. արևմտա-գերմանական մարկի արժողությամբ։ Արևմտա-գերմանական մոնոպոլիաները Թյուրքիայում կառուցում են 4 ցեմենտի, ինչպես նաև կոքսի, ամիակի ու բենզոլի արտադրության գործարաններ։

Սարիերի էլեկտրակայանն ու ջրամբարը (Ստամբուլի մոտ) ևս նրանք կառուցեցին, իսկ Կրուպպի կոնցերնը Բոսֆորի վրա կառուցում է մի կամուրջ, որը միացնելու է Եվրոպա ու Ասիա մայր ցամաքները (70 մլն. դոլար արժողությամբ)։ Իրենց գործունեությունը Թյուրքիայում վերսկսել են նաև արևմտա-գերմանական բանկերը՝ «Համբուրգեր կրեդիտ», «Ռեյն-Ռուր բանկ», «Ռեյն-Մայն բանկ» և մյուսները։ Կազմակերպվել են նաև խառն ակցիոներական ընկերություններ արևմտա-գերմանական ու թյուրքական կապիտալի մասնակցությամբ։ «Բադիշե անիլին ունդ սոդա ֆաբրիկեն» ու «Ֆրիդրիխ Էդե Ա. Գ.» արևմտա-գերմանական մոնոպոլիաները թյուրքական բանկերի հետ հիմնեցին ակցիոներական խառն ընկերություն ազոտի գործարանի շինարարության համար (19 մլն. թ. լիրա գումարով), որը սկսվել է Քյութահյայում, իսկ «Բենտելեր վերկե Ա. Գ.» ֆիրման ու թյուրքական «Մուխլիս էմեկ Շ.» ընկերությունը Ստամբուլի մոտ կառուցում են խողովակների գործարան, որի կապիտալի 50 տոկոսը արևմտա-գերմանական է։

Կրուպպի ֆիրման թյուրքական կառավարության հետ համաձայնություն է կնքել 600 հազար տոննա պողպատի արտադրությամբ երկրորդ մետալուրգիական կոմբինատը կառուցելու համար։ Կրուպպի կոնցերնը թյուրքական բանկերի հետ միասին ընկերություն է հիմնել երկրաբանական հետախուզություններ կատարելու համար։ Արևմտա-գերմանական «Դեյլման» ֆիրման կոնցեսիա է ստացել նավթի հետախուզումներ կատարելու համար։

Թյուրքական կառավարողների այսպիսի հակազգային քաղաքականությունը, որն ուղղակի հակոտնյա է Քեմալի հռչակած էթատիզմի քաղաքականությանը, հանգեցրել է այն բանին, որ այժմ թյուրքական էկոնոմիկան դարձել է իմպերիալիստական խոշոր երկրների և առաջին հերթին ԱՄՆ-ի և նրանց ռազմական մեքենայի մի կցորդ։ Օտարերկրյա կապիտալի ներխուժման հետևանքով, քանի գնում, ավելի են խարխլվում թյուրքական ազգային էկոնոմիկայի հիմքերը, ուժեղանում է աշխատավոր մասսաների շահագործումը և վատ-

թարանում նրանց նյութական վիճակը։ Բավական է ասել, որ այժմ Թյուրքիայի գյուղերում և քաղաքներում կա 2 մլն. գործազուրկ։

Արևմտյան երկրների հետ միասին Թյուրքիայի մասնակցությունը սպառազինությունների մրցավազքին և օտարերկրյա կապիտալի դիրքերի ուժեղացումը հանգեցրին նաև Թյուրքիայի արտաքին պարտքերի աճմանը, ոսկու պաշարի և օտարերկրյա վալյուտայի նվազեցմանը, արտաքին առևտրի մշտական դեֆիցիտին ու ֆինանսական դժվարություններին։ Վերջերս թյուրքական տընտեսագետները հաշվեցին, որ այժմ երկրի պետական պարտքը հասել է այնպիսի մի ահռելի գումարի (1938 թ. 533,6 մլն. լիրայի դիմաց 1955 թ. այն կազմեց ավելի քան 3 մլրդ. թ. լիրա), որ ներկայիս ֆինանսական վիճակով այդ պարտքը Թյուրքիան հազիվ թե կարողանա փակել 2002 թվականին։

Նրանց հաշվումների համաձայն այժմ Թյուրքիայի պետական պարտքը շաբաթական աճում է 8 մլն. թ. լիրա գումարով, և որպեսզի երկիրը փակի ուրիշ երկրներից ստացած վարկերի միայն տոկոսները, նրան հարկավոր են նոր վարկեր՝ այդ տոկոսները փակելու համար։

Օտարերկրյա կապիտալի ներխուժմանը չեն դիմանում միջին ու մանր բուրժուազիան, առևտրականները և արհեստավորները։ Օտարերկրյա կապիտալը իր հերթին ազդում է երկրի ներքին ու արտաքին քաղաքականության վրա, նրան շեղում է իր ազգային անկախ քաղաքականության ուղուց։ Այս ամենը առաջ է բերում Թյուրքիայի աշխատավոր մասսաների դիմադրությունը, ազգային բուրժուազիայի և ինտելիգենցիայի օրինական բողոքը և դժգոհությունը։

Նույնիսկ Թյուրքիայի ներքին գործերի նախկին մինիստրներից մեկը՝ Շյուքրյու Կայան, հանդես գալով օտարերկրյա կապիտալի ներթափանցման դեմ՝ գրել է. «Եթե մենք պաշտպանության տակ չվերցնենք մեր տեղական արտադրությունը, մեր վաճառականներին, արհեստավորներին, մեր բանկերն ու ֆաբրիկաները, ապա մեր երկիրը կներխուժի օտարերկրյա կապիտալը։ Թյուրքերը նորից կընկնեն ստրկական տնտեսական կախման մեջ օտարերկրացիներից»։ Այնուհետև նա շարունակում է, որ օտարերկրյա կապիտալի դիրքերի ուժեղացումը կհասցնի օսմանյան կայսրության անցած այն ժամանակների վերահաստատմանը, երբ երկիրը «օտարերկրյա կապիտալի գերին էր, պետական գործիչները՝ նրա ծառաները, իսկ ժողովուրդը՝ միայն շահույթի աղբյուր» («Հյուրիեթ» 18/9—53 թ.)։

Այժմ հարց է ծագում. արդյոք կա՞ մի ուղի, որը թյուրքական էկոնոմիկային դուրս բերի այս դժվարին վիճակից։ Այո՛, կա։ Թյուրքիայի ազգային էկոնոմիկայի սեփական շահերը հրամայաբար պահանջում են առևտրական, ֆինանսական ու տնտեսական հարաբերությունների աշխուժացում սոցիալիստական երկրների ու հատկապես Սովետական Միության հետ։

Սովետա-թյուրքական տնտեսական համագործակցությունը, որն իր ժամանակին այնքան օգուտներ բերեց երկու երկրներին, այժմ նորից օգտակար կլիներ և կնպաստեր նրանց միջև բարի-դրացիական հարաբերությունների վերականգնմանն ու զարգացմանը։

# ԱՊԱՀՈՎԵԼ ԼԵՌՆԱՀԱՆՔԱՅԻՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԸ

*Մ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ*

Արդյունաբերության մեջ վճռողական ուժը մարդիկն են, ուստի քաղաքական աշխատանքը բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների հետ՝ պարտիական աշխատանքի կարևոր մասն է։ Աշխատել մարդկանց հետ՝ նշանակում է գլխավորել նրանց ստեղծագործական նախաձեռնությունը, մշտապես հոգալ նրանց կարիքները, վերացնել աշխատանքում եղած թերությունններն ու խոչընդոտները և անհրաժեշտ պայմաններ ստեղծել սոցիալիստական մրցությամբ վերցրած պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու համար։

Ղափանի շրջանում պարտիական-քաղաքական աշխատանքի ծավալմանը խոշոր չափով օգնեց ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեի անցյալ տարվա նոյեմբերյան պլենումի որոշումը «Բնակչության մեջ քաղաքական-դաստիարակչական աշխատանքի ուժեղացման և այդ աշխատանքում ինտելիգենցիայի ներգրավման մասին»։ Պարտիական կազմակերպությունների ուշադրությունը կենտրոնացվեց այն բանի վրա, որ անհրաժեշտ է վերացնել քաղաքական-դաստիարակչական աշխատանքի կտրվածությունը կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրներից և այն դարձնել կենդանի ու ներգործուն։ Շրջանի բոլոր պարտիական կազմակերպությունները, այդ թվում և լեռնահանքային արդյունաբերության պարտիական կազմակերպությունները, վերակառուցելով քաղաքական աշխատանքը՝ նրանում լայնորեն ներգրավեցին շրջանի ինտելիգենցիայի, մասնավորապես լեռնահանքային արդյունաբերության տեխնիկական ինտելիգենցիայի ուժերը։ Այդ ուժերը շատ մեծ են. հենց միայն Ղափանի հանքերում աշխատում են 125 բարձրագույն կրթություն ունեցող ինժեներներ։ Դա հինգ անգամ ավելին է նախառևոլյուցիոն Անդրկովկասի ամբողջ լեռնահանքային արդյունաբերության մեջ ընդգրկված ինժեներների թվից։ Նրանք գործնական օգնություն են ցույց տալիս պարտիական կազմակերպություններին՝ քաղաքական աշխատանքի կազմակերպման գործում։ Լեռնահանքային արդյունաբերության սկզբնական պարտիական կազմակերպությունների ագիտկոլեկտիվներում ընդգրկված են 328 ինժեներներ, տեխնիկներ և արտադրության առաջավորներ, որոնք պրոպագանդում են XX համագումարի որոշումները, պարտիայի և կառավարության ընթացիկ քաղաքականության հարցերը, մոբիլիզացնում են բոլոր հնարավորությունները, բանվորների և մյուս աշ-

*խատողների ուժերը՝ աշխատանքի բարձր արտադրողականության հասնելու համար։*

*Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի բաց հանքի պարտիական
կազմակերպության ակտիվը ընդգրկում է 30 մարդ։ Վերակառուցելով
իր աշխատանքը՝ ակտիվը քաղաքական-դաստիարակչական աշխա-
տանքը կապեց անմիջականորեն արտադրական խնդիրների հետ, լայն պայ-
քար ծավալեց աշխատանքային կարգապահության առանձին խախտում-
ների դեմ և կոլեկտիվի ուշադրությունը կենտրոնացրեց արտադրական պլան-
ների կատարման վրա։ Այս ամենի շնորհիվ հանքաքարի հանույթի պլանը
հունվար ամսին կատարվեց 113,3 տոկոսով, բացման աշխատանքների պլանը՝
110 տոկոսով։ Գերակատարվեցին նաև փետրվար ամսվա պլանները։ Այս
գործում խոշոր դեր խաղացին Ս. Դրամբյանը (հանքի պետ), էքսկավատոր
վարողներ Գ. Պետրոսյանը, Բ. Հայրապետյանը, Ս. Հարությունյանը, Մ. Ավե-
տիսյանը և շատ ուրիշներ։*

*Քաղաքական-դաստիարակչական աշխատանքի լավ օրինակ է տալիս
նաև ստորերկրյա հանքի պարտիական կազմակերպությունը։ Այստեղ 30 կո-
մունիստից 28-ը անմիջականորեն աշխատում են արտադրության մեջ և օրի-
նակ են ծառայում մյուսներին։*

*Հանքի պարտիական կազմակերպության նախաձեռնությամբ և ագիտա-
տորների ու առաջավոր բանվորների ամենաակտիվ աջակցությամբ հանքի
8-րդ իջանցքում և 47-րդ ուղղահայաց փորվածքում վերջերս ստեղծվեց կոմ-
պլեքսային բրիգադա, որի աշխատանքով կրկնապատկվեց հանքաքարի հա-
նույթը։ Պարտիայի անդամ, հանքի պետ ընկ. Բաբայանցի և պարտիայի ան-
դամության թեկնածու, հանքի գլխավոր ինժեներ Ֆ. Պետրոսյանի առաջարկով
հանքում կիրառվեց պայթեցման նոր եղանակ։ Նոր եղանակով ապար-բլոկ-
ները պայթեցվում են միանգամից, միաժամանակ։ Այս առաջարկի կիրառումը
տարեկան տալիս է 350 հազար ռուբլու տնտեսում։ Հանքի կոլեկտիվը հա-
ջողությամբ կատարեց այս տարվա առաջին երկու ամիսների արտադրական
առաջադրանքները։*

*Քաջարանի և Ղափանի լեռնագործները ուշի-ուշով ուսումնասիրում են
ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան և Փետրվարյան պլենումների
որոշումները և նորանոր պարտավորություններ են ստանձնում Հոկտեմբեր-
յան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի պատվին։*

*Քաջարանցիները հավատարիմ իրենց խոստմանը՝ հունվարի 29-ին բոլոր
ցուցանիշներով գերակատարեցին ամսվա պլանները. նրանք հաջողությամբ
կատարեցին նաև փետրվար ամսվա առաջադրանքները։*

*Ջանգեզուրի հանքվարչության 7—10 հանքը ունի շատ առաջավոր հորա-
տողներ, որոնց մասին հիացմունքով են խոսում հանքի ագիտատորները.
դրանցից են Մ. Համբարձումյանը, Ս. Մամեդովը և ուրիշները։ Այստեղ պար-
տիական կազմակերպությունը քննության առավ հանքաքարի հանույթն ավե-
լացնելու հարցը։ Հանձնարարվեց ուսումնասիրել 80-րդ հորիզոնականում
շրջանցում կատարելու հնարավորությունը։ Ուսումնասիրությունը դրական ար-
դյունք տվեց։ Շրջանցումը կատարվեց կարճ ճանապարհով և ապահովվեց
հանքաքարի հանույթի ավելացումը 25 տոկոսով։*

*Ղափանի ջերմաէլեկտրակայանը միշտ աշխատում էր պակաս կարողու-
թյամբ։ Մասնագետներից որոշ ընկերներ այդ գտնում էին նորմալ և անհնար*



*էին համարում էլեկտրաէներգիայի արտադրությունը հասցնել նրա նախա-
գծային կարողության, պատճառաբանելով, թե ցածր կարողությամբ աշխա-
տելը գործարանային պակասություն է։ Ջերմաէլեկտրակայանի պարտիական
կազմակերպությունը զբաղվեց դրանով և քննության առարկա դարձրեց լեռ-
նահանքային ձեռնարկությունները էլեկտրաէներգիայով ապահովելու հարցը։
Պարտիական կազմակերպությունը անհրաժեշտ համարեց նորոգել կաթսան և
փոխել մի շարք հարմարանքներ։ Կազմակերպության այդ պահանջը կատար-
վեց ճշտությամբ։ Ջերմաէլեկտրակայանի արտադրական կարողությունը
հասցվեց 4600 կիլովատ-ժամի, մինչև այդ եղած 2200 կիլովատ-ժամի դիմաց։
Դրա շնորհիվ լեռնահանքային արդյունաբերության ձեռնարկությունների աշ-
խատանքներն զգալիորեն բարելավվեցին։ Ծավալվեց սոցիալիստական մրր-
ցությունը։ Քաջարանցիները մրցության մեջ մտան եղբայրական Ադրբեջանի
Դաշքեսանի լեռնագործների հետ։ Թե ով կհաղթի այդ մրցության մեջ, կտես-
նենք մոտ ապագայում։*

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՊԱՀԱՆՋԸ

*Պարտիական ղեկավարության հիմնական պահանջը հանգում է այն բա-
նին, որ լեռնահանքային արդյունաբերության ձեռնարկությունները կատարեն
պետական պլանային առաջադրանքները։ Իսկ դա նշանակում է, որ այդ ձեռ-
նարկություններն առաջիկայում ևս պետք է շարունակեն հայտաբերել հանքա-
քարի նոր պաշարներ, բարելավել հանքաքարի որակը, ավելացնել մոլիբդենի
և պղնձի պարունակությունը կոնցենտրատի մեջ։ Սրանք այն հիմնական նա-
խադրյալներն են, որոնք պայմանավորում են ձեռնարկության տնտեսական
վիճակը։ Ուստի և՛ Քաջարանի, և՛ Ղափանի լեռնահանքային արդյունաբերու-
թյան պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ բոլոր
միջոցներով ապահովել մոլիբդենի և պղնձի արտադրության պետական առա-
ջադրանքի կատարումը, իջեցնել նրա մեկ միավորի վրա աշխատանքի, նյու-
թեղենի և էլեկտրաէներգիայի ծախսումների չափերը, այսինքն՝ մեկ միավորի
ինքնարժեքը։*

*Արտադրանքի ինքնարժեքի իջեցումը լեռնահանքային արդյունաբերու-
թյան ձեռնարկությունների կարևոր խնդիրն է, որի կենսագործումը կտա մեծ
կուտակումներ։ Լեռնահանքային ձեռնարկության շահույթի աճը տեղի է ունե-
նում հանքաքարի և մետաղի արտադրանքի ինքնարժեքի սիստեմատիկ իջեց-
մամբ։*

*Ջանգեզուրի հանքվարչության ձեռնարկությունները 1956 թվականի պե-
տական առաջադրանքները կատարեցին բոլոր ցուցանիշներով, բացի հան-
քաքարի որակի պլանից։ Այստեղ 1956 թվականին, 1955 թվականի համեմա-
տությամբ, զգալիորեն ավելացավ հանքաքարի հանույթը և նրա վերամշա-
կումը, դրա համեմատ ավելացավ նաև պղնձի կոնցենտրատի թողարկումը։
Լեռնային խմբի մեկ բանվորի աշխատանքի արտադրողականությունը բարձ-
րացավ 7 տոկոսով, իսկ ձեռնարկությունում բանվորի աշխատանքի միջին
արտադրողականությունը, նախորդ տարվա համեմատությամբ, բարձրացավ
10 տոկոսով։ Ձեռնարկությունում իրականացվեց խնայողական խստագույն
ռեժիմ, որի շնորհիվ անցյալ տարի ստացվեց 770 հազար ռուբլու նյութերի
խնայողություն։ Համախառն արտադրանքի ինքնարժեքը իջեցվեց 3,7 տոկո-
սով, նախատեսված 0,3 տոկոսի դիմաց։*

Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի համախառն արտադրանքը 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, աճեց 4,1 տոկոսով, հանքաքարի հանույթը՝ 10,4, հանքաքարի փոխադրումը ճոպանուղով՝ 7,5, հանքաքարի վերամշակումը՝ 11, մոլիբդենի կոնցենտրատի թողարկումը՝ 10,7 տոկոսով: Զգալիորեն բարձրացվեց աշխատանքի արտադրողականությունը և իջեցվեց արտադրանքի ինքնարժեքը: 1956 թվականին կոմբինատը ստացավ 4.733 հազար ռուբլու կուտակումներ: Սրանք են այն բնորոշ տվյալները, որոնք պատկերացում են տալիս Զանգեզուրի լեռնահանքային արդյունաբերության մասին: Անտարակույս, հաջողություններն ավելի շատ կլինեին, եթե պարտիական կազմակերպության, կոմիտեի և ադմինիստրացիայի աշխատանքների պրակտիկայում տեղ չգտնեին մի շարք լուրջ թերություններ:

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1956 թվականի Դեկտեմբերյան և 1957 թվականի Փետրվարյան պլենումների որոշումները քննարկելիս լեռնահանքային ձեռնարկությունների կառավարման գործում բացահայտվեցին կազմակերպչական ձևերի լուրջ թերություններ: Հիրավի, կազմակերպական աշխատանքի լուրջ թերություն է, երբ կոմբինատի ղեկավար ընկերները քիչ են լինում հանքերում, հազվադեպ են հանդիպում բանվորների հետ, թույլ պահանջկոտություն են ցուցաբերում տեղամասերի ղեկավարների նկատմամբ: Քաջարանի կոմբինատի դիրեկտոր ընկ. Լոյը ամբողջ անցյալ տարվա ընթացքում հանքերի պետերին, ցեխերի վարիչներին և արտադրության առաջավորներին արտադրական խորհրդակցության չի հրավիրել և չի լսել նրանց պահանջները, դիտողություններն ու առաջարկությունները: Արտադրությունից կտրված են կոմբինատի զանազան բաժինները: Պլանային բաժինը (բաժնի վարիչ Մերեշնիկովա) թևված թվեր է իջեցնում ցեխերին՝ առանց հաշվի առնելու ռեալ հնարավորությունները:

Ինչպես արձանագրեց Կենտրոնական Կոմիտեի Փետրվարյան պլենումը, արդյունաբերության և շինարարության կառավարման ձևի հիմնական թերությունն այն է, որ նա սահմանափակում է տեղական պարտիական, սովետական և արհմիութենական կազմակերպությունների հնարավորությունները, կասեցնում է նրանց նախաձեռնությունը՝ տեղական հնարավորությունների և ռեզերվների ճիշտ օգտագործման ասպարեզում: Հայտնի է, որ առանց բավականաչափ էլեկտրաէներգիայի չի կարելի շարժման մեջ դնել ժամանակակից հզոր մեքենաները և չի կարելի բավարար չափով զարգացնել լեռնահանքային արդյունաբերությունը: Հաշվի առնելով այս հասարակ ճշմարտությունը՝ մի քանի տարի առաջ Ողջի գետի վրա սկսվեց № 1 էլեկտրակայանի շինարարությունը և նրա վրա ծախսվեց մոտ 13 միլիոն ռուբլի: Բայց չգիտես ինչո՞ւ ՍՍՌՄ Գունավոր մետալուրգիայի մինիստրությունը, անտեսելով տեղական պարտիական և սովետական կազմակերպությունների կարծիքը, ֆինանսավորումից հանեց հիդրոկայանի շինարարությունը: Հիդրոէլեկտրակայանի կառուցման դադարեցումը և ջերմաէլեկտրակայանների աշխատանքների հետ կապված հսկայական փոխադրումները և ծախսերը խոսում են տեղական հնարավորությունների և ռեզերվների չօգտագործման, տեղական պարտիական ու սովետական կազմակերպությունների նախաձեռնությունների սահմանափակման մասին:

Արտադրության կառավարման կազմակերպական ձևերի և պլանավորման թերություններով պետք է բացատրել այն փաստը, որ տարիներ շարու-



նակ ուշադրությունից վրիպել է լեռնային թափվածքի տնտեսության ստեղծումը, հանքային ու ներհանքային երթուղիների բացումը, բաց հանքի տեղաբացման աշխատանքների ձգձգումը: Փոխանակ ավելացնելու այդ աշխատանքների (բաց հանքի) ծավալը, այն կրկնապատիկ իջեցվել է և այսպիսով վտանգի տակ դրվել բաց հանքը ժամանակին լիակատար շահագործման հանձնելու գործը, էժան հանքաքարի ստացման եղանակին անցնելը:

Պարտիայի շրջկոմը և լեռնահանքային արդյունաբերության պարտիական կազմակերպությունները ուղեցույց ունենալով պարտիայի XX համագումարի որոշումները, գործնական քայլերի են դիմել բարելավելու արդյունաբերության ղեկավարության մեթոդները: Պարտիական կազմակերպություններն ավելի են խորանում էկոնոմիկայի մեջ, արտադրության «մանրուքների» մեջ: Վերջին ժամանակներս Զանգեզուրի Հանքվարչության ձեռնարկություններից մեկը՝ գլխավոր հանքուղին, թերակատարում էր հանքաքարի հանույթի պլանը: Հանքի պարտիական կազմակերպության անմիջական ջանքերով արտադրության վիճակը բարելավվեց և հանքը սկսեց աշխատել նորմալ ձևով:

Քաջարանի և Ղափանի լեռնահանքային արդյունաբերության պարտիական կազմակերպություններն աշխատանք են ծավալում այդ երկու խոշոր ձեռնարկությունների հետագա զարգացման հետ կապված մի շարք կարևոր խնդիրների լուծման ուղղությամբ: Սկսված է Քաջարանի կոմբինատի վերջնամբարի (հանքային մնացուկների ավազանի) կառուցման նախապատրաստական աշխատանքը Փխրուտ գետի վրա, ընթացիկ տարում կավարտվի և շահագործման կհանձնվի բաց հանքի դիզելային ավտոպարկը, հանքաքարի ջարդող բաժինը, ճոպանուղու երկրորդ հերթը, ֆլոտացիոն ֆաբրիկայի երկրորդ հերթը, Զանգեզուրի հանքվարչության գծով կառուցվող վերջնամբարը: Միայն Զանգեզուրի հանքվարչության գծով կկատարվեն ավելի քան ութ միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ:

## ԳԼԽԱՎՈՐԸ ՀԱՆՔԱՔԱՐԻ ՈՐԱԿՆ Է

Հանքաքարի մեջ պղնձի պարունակության պլանը Զանգեզուրի հանքվարչությունն անցյալ տարի կատարեց 98 տոկոսով: Այդ հարցով շատ են զբաղվում հանքվարչության աշխատողները, բայց դրությունը չի փոխվում և տարիներ շարունակ հանքաքարի որակի պլանը թերակատարվում է: Հանքվարչության ղեկավար ընկերները փորձում են այդ դրությունը բացատրել նրանով, որ հանքաքարի մեջ պղնձի պարունակության սահմանված պլանը չի համապատասխանում հանքաքարի որակի իրական վիճակին: Բայց այդպիսի բացատրությունը հազիվ թե ճիշտ լինի, քանի որ վերջին հինգ տարվա ընթացքում հանքաքարի որակի պլանը 1951 թվականի համեմատությամբ իջեցվել է 15 տոկոսով: Այնուհետև, չի կարելի նկատի չունենալ նաև այն հանգամանքը, որ տարվա ոչ բոլոր ամիսներին է թերակատարվում հանքաքարի մեջ պղնձի պարունակության պլանը՝ հանքաքարի որակի պլանը: Օրինակ, որակի պլանը կատարվեց անցյալ տարվա ապրիլ, հուլիս, օգոստոս և հոկտեմբեր ամիսներին, երբ երկրաբանական պայմանների որևէ փոփոխություն տեղի չէր ունեցել: Սակայն, այդ հաջողությունը հետևանք էր նրան, որ այդ հարցը քննության առնվեց պարտիական կոմիտեի նիստում, արտադրական խորհրդակցությունում, ուժեղացվեց հանքերի ղեկավարների և պարտիական կազմա-

կերպությունների պատասխանատվությունը, պայքար ծավալվեց հանքաքարի որակի համար։

Լեռնահետախուզական տվյալները ցույց են տալիս, որ հանքաքարի պաշարները, նախորդ տարիների համեմատությամբ, անցյալ տարի զգալի չափով ավելացել են, մինչդեռ 1956 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, նրա որակի պլանի կատարումն իջել է 2—3 տոկոսով։ Պատճառն այն է, որ № 5—6 հանքի հորիզոնականներում անցկացված 6-րդ հյուսիսային հորիզո-նական փորվածքներից ստացված մոտ 10 հազար տոննա դատարկ ապարը (ապարի վայրէջքի ուղի չլինելու պատճառով) խառնվեց հանքաքարի հետ։ № 1—2 հանքի 850 հորիզոնականի երկրորդ հյուսիսային բլոկում եղած երակի հաստությունը չէր անցնում 10—12 սմ.-ից, որի շահագործման համար փոր-վածքի լայնությունը նախատեսվում էր 1,2 մետր, բայց շահագործվեց 1,4—1,5 մետր լայնությամբ, դրա հետևանքով էլ հանքաքարի որակը արհեստա-կանորեն իջեցվեց 10—15 տոկոսով։ Հիմնական հանքուղու 35-րդ երակի 5-րդ բլոկում 15 մետր երկարության վրա հանքային երակը թողնվեց «պատի» մեջ և այդ տարածության վրա հորատման ենթարկվեց դատարկ ապարը։ Խախտվեց լեռնային աշխատանքների գրաֆիկը, իսկ այդ խախտումը դժբախտաբար չհաղթահարվեց պարտիական կազմակերպությունների կողմից։

Հանքերի պարտիական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմակեր-պությունների և ադմինիստրացիաների կարևորագույն խնդիրն է՝ խստորեն հետևել լեռնային աշխատանքների ճիշտ կազմակերպմանը, ապահովել հան-քաքարի մեջ պղնձի պարունակության պլանի կատարումը։

## ՀԱՆՔԱՔԱՐԻ ՆՈՐ ՊԱՇԱՐՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Լեռնահանքային ձեռնարկությունների հաջող աշխատանքի կարևորա-գույն պայմանն է լեռնահետախուզական աշխատանքների ճիշտ կազմակեր-պումը։ Մեր լեռնաշխարհը հարուստ է մոլիբդենով և պղնձով։ Զանգեզուրի լեռնահետախուզական խումբը և Հանքվարչությունը անցյալ տարի հայ-տաբերեցին № 6 հանքի և «Խուրդամյակի» հանքային զանգվածները, որոնք իրենց հարստությամբ չեն զիջում № 7—10 հանքի շահագործվող ամենահա-րուստ հանքային զանգվածին։ Բացվեցին և շահագործման հանձնվեցին № 1—2 Կոմերիտմիության անվան հանքի և Բարաբաթումի ներքին հորիզոնա-կանները, 6-րդ հանքի զանգվածի ներքնամասը։ Շնորհիվ անցկացված այս միջոցառումների՝ հանքաքարի պաշարներն զգալի չափով ավելացան։ Բայց այն, ինչ կատարվում է այսօր, չի կարող ապահովել վաղվա մեր պահանջ-ները։ Լեռնահետախուզական միավորումների պարտիական կազմակերպու-թյունները պարտավոր են ապահովել հետախուզական միջոցառումների անց-կացումը՝ անհրաժեշտ բոլոր ուղղություններով։ Օրինակ, մի այսպիսի կա-րևոր տեղամասում, ինչպիսին գլխավոր հանքուղին է, անուշադրության են մատնված հետախուզական աշխատանքները։ Հիմնական հանքուղու հան-քաքարի պաշարների ավելացման նպատակով նախատեսված էին 15-րդ հան-քի խորացման և ներքին հորիզոնականների բացման աշխատանքները, որի մասին մի շարք որոշումներ և հրամաններ էին եղել։ Բայց այդ լուրջ միջո-ցառումները Հանքվարչության ղեկավար ընկերները ժամանակին չկիրառեցին և հանքը կանգնեցրին լուրջ դժվարությունների առաջ։ Անբավարար է աշխա-



տում Քաջարանի լեռնահետախուզական խումբը, ուր լեռնահետախուզա-կան աշխատանքները ետ են մնում։ Նոր պաշարների հայտագործումը լեռան-յին արդյունաբերության զարգացման վճռողական նախապայմանն է։ Թե այսօր և թե վաղը այդ հարցի հարատև լուծումը պետք է մնա ուշադրության կենտրոնում։

## ՌԱՑԻՈՆԱԼ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՄԵԽԱՆԻԶՄՆԵՐԸ

Վերջին տարիներին լեռնահանքային արդյունաբերությունը հագեցվել է ժամանակակից շատ մեխանիզմներով։ Միայն անցյալ տարվա ընթացքում Քաջարանի և Ղափանի ձեռնարկություններն ստացել են 8,5 միլիոն ռուբլու նորագույն տեխնիկա։ Տեխնիկայի արմատավորումը լեռնային արդյունաբե-րության մեջ վկայում է պարտիայի և կառավարության հոգատարությունը բանվորների նկատմամբ, նրանց աշխատանքի պայմանները լավացնելու, աշխատանքի ծանր պրոցեսները մեքենայացնելու համար։ Պարտիական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունները հաղթահարե-լով մյահպանողական տրամադրությունները՝ առաջավոր բանվորների աջակ-ցությամբ լայն պայմաններ ստեղծեցին նոր տեխնիկայի արմատավորման համար։

Քաջարանի կոմբինատի բաց հանքի մոնտաժողների բրիգադան օրերս ավարտեց «ՍԷ—3» հզոր էքսկավատորի մոնտաժը։ Սկսվել է նաև երկրորդ նույնատիպ էքսկավատորի մոնտաժը։ Բացի այդ, այստեղ գործում են հայ-րենական արտադրության մի քանի «հարվածային խոր փորման» հաստոց-ներ։ Բաց հանքի դիզելային ավտոպարկը համալրվել է բազմաթիվ հզոր մե-քենաներով։ Զանգեզուրի Հանքվարչության լեռնահանքային աշխատանքների պրոցեսներում ներդրվեցին 15 ապարաբարձիչ նոր մեքենա, 13 էլեկտրաքարշ, հորատման 11 հաստոց, 10 սկրեյպեր և լեմյորկա։ Հանքախորշերը խտացրած օդով ապահովելու նպատակով տեղադրվել են 4 նոր կոմպրեսոր՝ 20—40 խորանարդ մետր ընդհանուր կարողությամբ։ Մեխանիկական ցեխին կից սար-քավորվեց և շահագործման հանձնվեց դարբնոցակաթսայագործական արհես-տանոցը, որի շնորհիվ 20—25 տոկոսով բարձրացվեց մեխանիկական ցեխի աշխատանքի արտադրողականությունը։

Նոր տեխնիկայի արմատավորման հետ միասին խոշոր ուշադրություն է հատկացվում նաև բանվորների արտադրական որակավորումը բարելավելու վրա։ Բազմաթիվ առաջավոր բանվորներ ուսումնասիրելով և տիրապետելով նոր տեխնիկային, կատարելագործում են մեխանիզմների աշխատանքը։ Բան-վոր Վ. Ավետիսյանը ուսումնասիրելով և տիրապետելով խոր փորման հաս-տոցը, մշակեց հորատման նոր եղանակ։ Այդ նոր եղանակով մի հերթափո-խում Ավետիսյանը փորում է 20—25 գծամետր, նախատեսված 12-ի դիմաց։ Այդ մեթոդի «գաղտնիքն» այն է, որ հաստոցի փորող գայլիկոնը փորման մի-ջոցին պահվում է անընդհատ պտտման մեջ, որով թուլացվում է ապարի դի-մադրությունը։ Բաց հանքի էքսկավատորավար Վ. Սերեբրյակովը հանքաքարի արագ բարձման հիանալի փորձ է ձեռք բերել։ Նրա վարած «Շկոդա—8» սիս-տեմի 2,5 տոննա կարողություն ունեցող էքսկավատորը օրվա ընթացքում բարձում է մի քանի հարյուր ավտոմեքենա։ Վ. Սերեբրյակովը էքսկավատորի շերեփը պահում է այնպիսի վիճակում, որ յուրաքանչյուր մեքենայի բար-

ձումը տևի 20—30 վայրկյան, սովորական մեկ րոպեի դիմաց։ Նրա էքսկա-
վատորի մոտ մեքենաները հերթի չեն կանգնում։

Հայրենական տեխնիկան արտադրության մեջ համարձակորեն արմատա-
վորելու և ռացիոնալ օգտագործելու համար կարևոր դեր է խաղում որակա-
վորված մասնագետների առկայությունը։ Տիրապետել մեքենային, գործարկել
այն իր ամբողջ կարողությամբ,— այս է այժմ հանքային արդյունաբերության
մեջ աշխատողների գլխավոր խնդիրներից մեկը։

Ղափանում և Քաջարանում այժմ աշխատում են հարյուրավոր բազմա-
պրոֆեսիա ունեցող բանվորներ։ Նոր Բարաբաթում հանքի անվանի լեռնագործ
Գ. Գլաձոմցը տիրապետում է հորատողի, ամրացնողի, վագոնավարի, գծա-
յին վարպետի, պայթեցնողի, էլեկտրաքարշավարի, փականագործի մասնա-
գիտություններին։ Վերջին երկու տարում նա ոչ մի օր պարապուրդ չի տվել։

1953 թվականի համեմատությամբ Ղափանի հանքերում այլ պատճառով
տեղի ունեցող պարապուրդները այժմ կրճատվել են 75 տոկոսով։ Դա մա-
սամբ արդյունք է բանվորների բազմապրոֆեսիոնալության։ Բանվորներին
նոր մասնագիտություններ ուսուցանելու և մասնագիտական որակավորումը
բարձրացնելու համար հանքերում, մեխանիկական արհեստանոցում, ֆլոտա-
ցիոն ֆաբրիկայում կազմակերպվել են տեխնիկական ուսուցման խմբակներ։
Պետք է նշել, որ այդ գործի կազմակերպումը խոշոր չափով օգնել է բանվոր-
ներին ավելի լրիվ տիրապետելու տեխնիկային, ավելի ռացիոնալ և արտադրո-
ղաբար օգտագործելու այն։ № 7—10, ինչպես նաև № 5—6 հանքերում խոշոր
արդյունք է տալիս հորատման հաստոցների աշխատանքը, որոնց փորած
հորատանցքերի միջոցով կիրառվում է մասսայական փլուզումների մեթոդը
և յուրաքանչյուր փլուզման դեպքում ստացվում է 5—10 հազար տոննա հան-
քաքար ավելի, քան սովորական մեթոդով։ Բարաբաթում և № 7—10 հանքե-
րում լավագույն ձևով են օգտագործվում ապարաբարձիչ մեքենաների և
«Կարլիկ» էլեկտրաքարշերի արտադրական կարողությունները, որի շնորհիվ
լեռնանցման աշխատանքների արտադրողականությունը բարձրացել է 40—48
տոկոսով, կամ առաջներում տրված 24 գծային մետր լեռնանցման փոխարեն
նույն հորիզոնականներում կատարվում է 50—60 գծային մետր անցում։
Իհարկե, այս չի նշանակում, թե մեխանիզմների տեղադրման և օգտագործ-
ման մեջ թերություններ չկան։ Քաջարանում և Ղափանում դեռ ցածր է մեքե-
նաների օգտակար գործողության գործակիցը։ Քաջարանի կոմբինատում ինք-
նաթափ ավտոմեքենաների օգտակար գործողության գործակիցը կազմում է
15,7 տոկոս։ Ղափանի № 1—2 հանքի 765 հորիզոնականն են իջեցվել
էլեկտրաքարշ և ապարաբարձիչ մեքենաները, բայց մինչև հիմա դրանք չեն
տեղադրված։

## ԱՎԵԼԻ ԲԱՐԵԼԱՎՎԵԼ ԼԵՌՆԱԳՈՐԾՆԵՐԻ ԿԵՆՑԱՂԸ

Լեռնահանքային արդյունաբերության զարգացմանը զուգընթաց խոշոր
աշխատանք է կատարված բանվորների և ծառայողների կուլտ-կենցաղային
պայմանների բարելավման ուղղությամբ։ Վերջին տասնամյակի ընթացքում
Քաջարանում կառուցվել են բոլորովին նոր բանավաններ (Քաջարան, Ողջի,
Հանքավան, Դավիդբեկ) բազմահազար բնակչությամբ։ Ծովի մակերևույթից



երկու հազար երկու հարյուր մետր բարձրության վրա վարդագույն տուֆից
կառուցվել են երկհարկանի բազմաթիվ բնակելի շենքեր, վարչական, հասա-
րակական և կուլտ-կենցաղային օբյեկտներ։ Քաջարանում և նրա բանավան-
ներում կառուցվել են 44 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն,
դպրոցական շենքեր, ակումբներ, ճաշարաններ և հասարակական սննդի
օբյեկտներ։ Կառուցվում են և այս տարի շահագործման կհանձնվեն Ողջու
հիվանդանոցը իր բոլոր օժանդակ շենքերով, ակումբի նոր շենքը։ Կառուցվել
և արդեն գործարկվել են ջրմուղը, կոյուղին, ջեռուցման սխեմը և այլն։

Արդյունաբերության զարգացումը և բնակչության մեծ աճը հնարավորու-
թյուն են տալիս Քաջարանը քաղաք անվանելու։

Խոսելով այդ մեծ փոփոխությունների մասին, չի կարելի լռությամբ մատ-
նել բանվորների և ծառայողների կուլտուր-կենցաղային պայմանների բարե-
լավման գործում դեռևս գոյություն ունեցող թերությունները։ Բնակարանային
ֆոնդը Ղափանում և Քաջարանում չի բավարարում բանվորների և ծառայող-
ների անընդհատ աճող պահանջները։ Լուրջ թերություններ կան բանավանների
բարեկարգման՝ փողոցների, հրապարակների, բակերի հարթեցման, ասֆալ-
տապատման, գետափերի հենապատման ուղղությամբ։ Քաջարանի պղնձա-
մոլիբդենային կոմբինատի և Զանգեզուրի Հանքվարչության ղեկավար ընկեր-
ները դեռ հապաղում են այդ անհետաձգելի գործերում։ № 2 շինմոնտաժային
վարչությունը դեռ դանդաղում է բնակարանային շինարարության տեմպի
ուժեղացման գործում։ Անհրաժեշտ նյութա-տեխնիկական բազա չի ստեղծվում
շինարարական աշխատանքների ինդուստրացման համար։ Շինմոնտաժային
վարչությունն անցյալ տարի աններելի ձևով թերակատարեց բնակարանային
շինարարության պլանը։ Շրջանի շինարարական կազմակերպություններն ան-
բավարար են օգտագործում շինանյութերի տեղական հնարավորությունները,
որի հետևանքով զգալիորեն թանկանում է շինարարությունը։

Ներկայումս Ղափանի և Քաջարանի արդյունաբերության կոլեկտիվներում
սոցիալիստական լայն մրցություն է ծավալվել մեծ Հոկտեմբերի 40-րդ տա-
րեդարձը արտադրական և շինարարական արժանավայել նվերներով դիմա-
վորելու համար։ Այդ մրցությանը գործարար բնույթ տալու գործում մեծ
անելիքներ ունեն շրջանի պարտիական կազմակերպությունները։ Անհրաժեշտ
է տոն տալ աշխատավորների ստեղծագործական պաթոսին և պանծալի տա-
րեդարձը դիմավորել մեծագործ նվաճումներով։

# ՈՒԺԵՂԱՑՆԵԼ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Ամփոփելով վեցերորդ հնգամյակի առաջին տարվա՝ 1956 թվականի արդյունքները, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան, Փետրվարյան պլենումները, ՍՍՌՄ Գերագույն Սովետի 6-րդ սեսիան նոր, կարևոր միջոցառումներ մշակեցին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման, նրա պլանավորման ու ղեկավարության կազմակերպման գործը ավելի բարելավելու և ուժեղացնելու ուղղությամբ։

Տնտեսական շինարարության բնագավառում պարտիայի ու կառավարության առաջադրած մեծագույն խնդիրները պարտիայի շրջկոմներից, քաղկոմներից և սկզբնական կազմակերպություններից պահանջում են ամեն կերպ բարձրացնել, կատարելագործել ու բարելավել տնտեսության պարտիական ղեկավարությունը, պարտիական-քաղաքական, պարտիական-կազմակերպական ամբողջ աշխատանքը։ Խնդիրն այն է, որ բոլոր պարտիական կոմիտեներն ու սկզբնական կազմակերպությունները տիրապետեն տնտեսության պարտիական ղեկավարության լենինյան մեթոդներին, կոնկրետ միջոցներ ձեռք առնեն տնտեսական օրգանների գործունեությունը վճռականորեն բարելավելու և առաջադրված խնդիրների կատարումն ապահովելու համար։

Մեր պարտիայի ու պետության մեծ հիմնադիր Վ. Ի. Լենինը բազմակողմանիորեն մշակել է տնտեսական ու սովետական օրգանների պարտիական ղեկավարության ձևերն ու մեթոդները։ Նա մշտապես նշել է, որ պարտիական ղեկավարության ձևերն ու մեթոդները քարացած ու մի անգամ ընդմիշտ սահմանված բաներ չեն։ Նրանք քաղաքական ու տնտեսական նոր խնդիրների առաջացման հետևանքով փոխվում են։ Պարտիական ղեկավարության լենինյան մեթոդի ոգին այն է, որ կյանքի առաջ քաշած նոր խնդիրների համաձայն պետք է կիրառել աշխատանքի նոր ձևեր, հրաժարվելով մեռած, քարացած ձևերից։

Անշեղորեն հետևելով Լենինի ցուցումներին՝ մեր պարտիան, նայած պատմական կոնկրետ իրադրության և նրանից բխող խնդիրներին, միշտ էլ կատարելագործում ու զարգացնում է տնտեսության ղեկավարման ձևերն ու մեթոդները և պարտիական-քաղաքական ու կազմակերպական ամբողջ աշխատանքն ի սպաս է դնում առաջադրված նոր խնդիրների կատարմանը։

Տնտեսության պարտիական ղեկավարության հաջողության կարևոր նախապայմաններից մեկը տնտեսական օրգանների, սովետական ու պարտիական կազմակերպությունների ֆունկցիաների ճիշտ պահպանումն է, աշխատանքի



մեջ պարզություն և հստակություն մտցնելը։ Այստեղից հետևում է, որ յու-
րաքանչյուր կազմակերպություն, յուրաքանչյուր օրգան ունի իր որոշակի
ֆունկցիաներն ու պարտականությունները, որոնց կատարումը պարտադիր է
նրա համար։ Պարտիան ղեկավարում է երկրի ամբողջ կյանքը, ուղղություն է
տալիս պետական, տնտեսական, պրոֆմիութենական և հասարակական բոլոր
կազմակերպությունների, աշխատավորական ընկերությունների գործունեու-
թյանը, օգնում է նրանց կատարելու իրենց առջև դրված խնդիրները։ Բայց
պարտիան դրա հետ միասին իր կազմակերպություններից պահանջում է չփո-
խարինել տնտեսական, սովետական, պրոֆմիութենական օրգաններին,
չշրջանցել նրանց, թույլ չտալ ֆունկցիաների խառնում ու շփոթում։ Պարտիան
հետևողականորեն պաշտպանել ու պաշտպանում է այն սկզբունքը, որ տըն-
տեսության ղեկավարությունն անմիջականորեն գտնվի պետական օրգանների
ձեռքում, իսկ ինքը, որպես պետական ղեկավար պարտիա, տնտեսության ղե-
կավարությունն իրականացնի այդ օրգանների միջոցով։ Եթե առանձին տըն-
տեսական օրգաններ, գերատեսչություններ, կազմակերպություններ վատ են
աշխատում և չեն ապահովում իրենց առջև դրված խնդիրների կատարումը,
պարտիական կազմակերպությունները չպետք է հանդես գան խնամակալի
դերում, չպետք է փոխարինեն, դիմազրկեն նրանց և ամբողջ տնտեսական
աշխատանքն իրենց վրա վերցնեն։ Այսպիսի դեպքերում պարտիական կազ-
մակերպությունները պետք է այդ օրգաններն ու կազմակերպություններն
ամրապնդեն որակյալ, բանիմաց, կազմակերպական ունակություններով
օժտված կադրերով և ամենօրյա աշխատանքում նրանց օգնեն ապահովելու
առաջադրված խնդիրների կատարումը։ Պարտիայի այս որոշակի պահանջը
երբեմն առանձին շրջկոմների ու կազմակերպությունների կողմից խախտվում
է։ Վերջերս ավարտված շրջանային ու քաղաքային պարտիական կոնֆերեն-
ցիաներում քիչ օրինակներ չբերվեցին, թե ինչպես մի քանի շրջկոմներ ու
սկզբնական կազմակերպություններ հաճախ շրջանցում են սովետական ու
տնտեսական օրգաններին, վատ են օգտագործում նրանց ուժերը, իրենց վրա
են վերցնում տնտեսական բոլոր տեսակի մանրուքների կատարումը։ Այսպիսի
պայմաններում նրանք հնարավորություն չեն ունենում լրջորեն զբաղվելու
պարտիական-քաղաքական, պարտիական-կազմակերպական աշխատանքով և
մասսաներին անբավարար են մոբիլիզացնում՝ առաջադրված բոլոր խնդիրնե-
րի անթերի կատարումն ապահովելու համար։ Արտաշատի շրջանային պար-
տիական կոնֆերենցիայում նշվեց, որ շրջկոմը մերթ տարվելով լոկ տնտեսա-
կան հարցերով՝ մոռացության է մատնում քաղաքական աշխատանքը, դրանք
սերտորեն չի զուգակցում միմյանց հետ, որը և թողնում է իր բացասական
հետևանքը։

Պարտիական և սովետական օրգանների ֆունկցիաները շփոթելու օրինակ
է նաև հետևյալ փաստը։ ՀԿՊ Կրասնոսելսկի շրջկոմի 1957 թվականի հուն-
վարի 24-ի բյուրոյի նիստում քննարկվել են բազմաթիվ հարցեր, որոնց թվում՝
պետական ֆոնդերի հողերի վերաբաշխման, Թոխլուջայի սովետական տնտե-
սությունում «բանկոպ» կազմակերպելու, շրջսովետի գործկոմի կիսավարտ
շենքի կառուցումը շարունակելու, «Հայտրանսի» ավտոգրասենյակ կազմակեր-
պելու, հրշեջ խմբի համար վարչական շենք գնելու հարցերը, որոնց մասին
շրջկոմի բյուրոն և շրջսովետի գործկոմը միացյալ որոշում են ընդունել։ Այդ

հարցերից մեկի՝ հրշեջ խմբի համար վարչական շենքի գնման մասին ընդունվել է հետևյալ որոշումը.

«Նկատի ունենալով, որ նոր կազմակերպվելիք հրշեջ խումբը վարչական շենք չունի, ուստի խնդրել ՀՍՍՌ Մինիստրների Սովետին բաց թողնելու 50000 ռուբ. համապատասխան շենք գնելու համար»։ Համարյա նույնանման որոշումներ են կայացված մյուս հարցերի մասին, հարցեր, որոնք կարող էին քննարկվել շրջսովետի գործկոմի նիստում։

Այս և նման մի շարք փաստերից պարտկազմակերպությունները պետք է համապատասխան եզրակացություն անեն։ Նրանք պետք է հրաժարվեն տնտեսական օրգանների ադմինիստրատիվ ֆունկցիան իրենց վրա վերցնելուց, պետք է հրաժարվեն տնտեսական մանրուքներից։ Ազատվելով տնտեսական մանրուքներից՝ պարտիական կազմակերպությունները հնարավորություն կունենան խորը կերպով զբաղվելու տնտեսական շինարարության այնպիսի վճռական ու ակտուալ հարցերով, ինչպիսիք են տեխնիկական պրոգրեսը, աշխատանքի կազմակերպման բարելավումն ու արտադրողականության բարձրացումը, նյութական բարիքների արտադրության ավելացումը, արտադրանքի ինքնարժեքի իջեցումը, ներքին ռեզերվների հայտաբերումն ու օգտագործումը, տնտեսության հեռանկարային պլանավորումը, ինչպես նաև ժամանակակից գիտության ու առաջավոր փորձի արմատավորումը, սոցիալիստական մրցության ծավալումը, ձեռնարկությունների եկամտաբերության բարձրացումը և այլն։ Պրակտիկան ցույց է տալիս, որ տնտեսական օրգանների ֆունկցիաներին չմիջամտելը ոչ թե թուլացնում, այլ ուժեղացնում է տնտեսության պարտիական ղեկավարությունը, բարելավում է վերահսկողությունը տնտեսական ղեկավարների գործունեության նկատմամբ, բարձրացնում է տնտեսական կադրերի իդեական կոփվածքը և լայնորեն զարկ է տալիս պարտիական-քաղաքական ու կազմակերպական աշխատանքի ծավալմանը։

Այժմ, երբ պարտիայի ջանքերն ուղղված են այն բանին, որ կազմակերպորեն ապահովվի երկրի առջև ծառացած մեծագույն խնդիրների իրականացումը, պարտիական կադրերին պետք է բազմակողմանիորեն օգնել տիրապետելու տնտեսական շինարարության բոլոր բնագավառներում գործը պրակտիկորեն կազմակերպելու արվեստին, իրենց ամենօրյա աշխատանքի ընթացքում հետևելու մեր մեծ ուսուցիչ Լենինի օրինակին, որը պարտիական աշխատանքը շարունակ կապում էր տնտեսական գործունեության հետ։

Տնտեսական շինարարությունը եղել և մնում է պարտիական աշխատանքի գլխավոր և կարևորագույն առանցքը։ Դրա համար էլ պարտիական կոմիտեները, սկզբնական կազմակերպությունները, պարտիական ղեկավար աշխատողները պատասխանատվություն են կրում տնտեսության համար։ Նրանց աշխատանքն առաջին հերթին գնահատվում է տնտեսության զարգացման բնագավառում ձեռք բերված ռեալ արդյունքներով, աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավումով։ Բայց մի քանի շրջանների պարտիական ղեկավար աշխատողներ կարծեք մոռացել են այս հանգամանքը, որի հետևանքով էլ կոնկրետ չեն ղեկավարում տնտեսությունը, հանդուրժում են առանձին ձեռնարկությունների և կոլտնտեսությունների տևականորեն ետ մնալը։ Այդպիսի վիճակ գոյություն ունի Թալինի, Ապարանի, Աղինի և մի քանի այլ շրջաններում։ Այսպես, Թալինի շրջանի շատ կոլտնտեսություններում աշխատանքը վատ կազմակերպելու, դաշտերի պարարտացման վրա ան-



հրաժեշտ ուշադրություն չդարձնելու, վարի, ցանքի ու բերքահավաքի ժամկետները խախտելու հետևանքով ցածր բերք է ստացվում։ Բավական է նշել, որ շրջանի կոլտնտեսությունները 1956 թվականին յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել են 4,9 ցենտներ բերք, իսկ առանձին կոլտնտեսությունները՝ միայն 2—3 ցենտներ։ Այստեղ անհրաժեշտ ուշադրություն չի դարձվել նաև հանրային անասնաբուծության զարգացման վրա։ Պահանջվող քանակությամբ կեր չկուտակելու, անասուններին վատ խնամելու և հանրային հոտի վերարտադրությունն ինչպես հարկն է չկազմակերպելու հետևանքով անցած գյուղատնտեսական տարում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի աճեցման պլանը շրջանում կատարված է 88,8 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 78,1 տոկոսով, մանր եղջերավոր անասուններինը՝ 94 տոկոսով, խոզերինը՝ 84 տոկոսով, ձիերինը՝ 93 տոկոսով, թռչուններինը՝ 51,3 տոկոսով։ Նույն այդ տարում մի շարք կոլտնտեսություններ խիստ թերակատարել են անասնաբուծական մթերքների արտադրության պլանը։ Անասնաբուծական մթերքների արտադրության պլանը թերակատարել են նաև Ապարանի շրջանի առանձին կոլտնտեսություններ։ Օրինակ, Արայի, Ծաղկահովիտի և Լուսագյուղի կոլտնտեսություններում ֆուրաժային յուրաքանչյուր կովի կաթնատվությունը 1956 թվականին ոչ միայն չի ավելացել, այլև նախորդ տարվա համեմատությամբ 400—500 լիտրով իջել է։

Թալինի և Ապարանի պարտշրջկոմները, իհարկե, այս հարցերով զբաղվել են և ժամանակին համապատասխան միջոցառումներ են նշել բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման համար։ Բայց բանն այն է, որ միջոցառումներ նշելուց հետո շրջկոմները քաղաքական-կազմակերպական աշխատանքով չեն ապահովել նրանց կատարումը, կոնկրետ կերպով չեն ղեկավարել ետ մնացող կոլտնտեսություններին։ Շրջկոմների ապարատի որոշ աշխատողներ փոխանակ մասսաների մեջ կազմակերպական աշխատանք կատարելու, փոխանակ կոլտնտեսություններին մոտիկից իրական օգնություն ցույց տալու, զբաղվել են ինչ որ ընդհանուր ցուցումներ տալով, ստուգումներ կատարելով, թվեր ու փաստեր հավաքելով։ Նրանք կենդանի, կազմակերպական աշխատանքը փաստորեն մղել են երկրորդական, երրորդական պլանի վրա և արմատական միջոցներ ձեռք չեն առել ետ մնացող կոլտնտեսություններն առաջավորների մակարդակին հասցնելու համար։

Սոցիալիստական գյուղատնտեսության տեխնիկական հագեցվածությունը, առաջավոր տնտեսությունների հարուստ փորձը, պատրաստված կադրերը, պարտիայի և կառավարության կողմից գյուղին ցույց տրվող հարաճուն օգնությունը լիակատար հնարավորություն են տալիս ետ մնացող կոլտնտեսությունները հասցնելու առաջավորներին։ Իսկ դրան հնարավոր է հասնել այն դեպքում, երբ պարտիայի շրջկոմները և սկզբնական կազմակերպությունները ուժեղացնեն կոլտնտեսությունների ու ՄՏՍ կայանների պարտիական ղեկավարությունը, ավելի խոր թափանցեն գյուղատնտեսության էկոնոմիկայի մեջ, սիստեմատիկաբար զբաղվեն այնպիսի կարևոր ու արմատական հարցերով, ինչպիսիք են՝ աշխատատար պրոցեսների մեքենայացումը, ցանքաշրջանառության իրացումը, ագրոնոմիական գիտության նվաճումների ու առաջավոր փորձի արմատավորումը, ներքին ռեզերվների հայտաբերումն ու օգտագործումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, ինչպես նաև պլանավորման, հաշվառման ու վարձատրության կարգի ճիշտ անցկացումը։

Տնտեսության նկատմամբ իր ղեկավարությունն իրականացնելիս պար-
տիան օգտագործում է պրակտիկայում փորձված այնպիսի մեթոդներ, ինչ-
պիսիք են կադրերի ճիշտ դասավորումն ու որոշումների կատարման ստու-
գումը, ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ պարտիական վերա-
հսկողության իրականացումը, ինչպես նաև տնտեսական ու քաղաքական աշ-
խատանքի ճիշտ զուգակցումը, սոցիալիստական մրցության ծավալումը, նորի,
պրոգրեսիվի տարածումն ու արմատավորումը, առաջադրված խնդիրների լուծ-
ման գործում աշխատավորական լայն մասսաների մասնակցության ապահո-
վումը, նրանց քաղաքական ու արտադրական ակտիվության բարձրա-
ցումը և այլն։

Փորձը ցույց է տալիս, որ տնտեսության պարտիական ղեկավարության
ընթացքում այդպիսի ձևերի ու մեթոդների օգտագործումը միշտ էլ դրական
արդյունքների է հասցնում։ Այս ուղղությամբ բազմաթիվ օրինակներ կարելի
է բերել ռեսպուբլիկայի քաղկոմների, շրջկոմների, սկզբնական պարտիական
կազմակերպությունների պրակտիկայից, որոնք ՍՄԿՊ XX համագումարից
հետո զգալի հաջողությունների են հասել։ Այդ տեսակետից ուշագրավ է Երև-
վանի Ստալինյան շրջկոմի աշխատանքի փորձը, որում ուսանելի շատ բան կա։

Ստալինյան շրջկոմն առանձնապես լուրջ ուշադրություն է դարձնում տըն-
տեսական կադրերի ընտրության վրա և ձեռնարկություններում ղեկավար աշ-
խատանքի է առաջ քաշում այնպիսի ընկերների, որոնք աչքի են ընկնում
բանիմացությամբ, կազմակերպական ընդունակություններով, համարձակորեն
հանդես են գալիս հնամոլության, քարացածության դեմ, անհրաժեշտ պայ-
մաններ են ստեղծում տեխնիկական պրոգրեսի համար, զարկ են տալիս
գյուտարարների և ռացիոնալիզատորների ստեղծագործական ակտիվության
բարձրացմանը։ Լավ կադրեր ընտրելուց հետո էլ շրջկոմն իր գործն ավարտ-
ված չի համարում։ Նա սիստեմատիկ հսկողություն է սահմանում նրանց գոր-
ծունեության վրա, ժամանակին մատնացույց է անում այս կամ այն աշխա-
տողի թերությունները և օգնում է դրանց վերացմանը։

Տնտեսական ղեկավարներին օգնելու նպատակով շրջկոմն անմիջականո-
րեն արդյունաբերական ձեռնարկություններում ուժեղացրել է պարտիական-
քաղաքական, պարտիական-կազմակերպական աշխատանքը և սկզբնական
պարտիական կազմակերպությունների միջոցով բոլոր բանվորներին, ինժենե-
րա-տեխնիկական անձնակազմին պայքարի է հանել վեցերորդ հնգամյա
պլանով սահմանված առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու և գե-
րակատարելու համար։ Այս բոլորի շնորհիվ շրջանի արդյունաբերական ձեռ-
նարկությունները 1956 թվականի պլանները գերակատարեցին։

Կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության գործում
լավագույն օրինակներ կարելի է բերել նաև Երևանի մյուս շրջանների, Կիրո-
վական, Լենինական քաղաքների, Ղափանի, Բասարգեչարի, Սևանի, Շամշա-
դինի և մյուս շրջանների պարտիական կազմակերպությունների աշխատանքի
պրակտիկայից։ Բայց կարելի է բերել նաև այնպիսի օրինակներ, երբ պար-
տիական կոմիտեները ճիշտ չեն ընտրում կադրերը, անհրաժեշտ պահանջկո-
տություն չեն ցուցաբերում նրանց նկատմամբ, ժամանակին չեն քննադատում,
մատնացույց չեն անում վատ աշխատողների թերությունները, չեն ուզում
կպչել նրանց «ինքնասիրությանը»։ Այսպիսի ոչ ճիշտ վերաբերմունքը հաս-
ցնում է նրան, որ կադրերը թերանում են աշխատանքում, չեն ապահովում



տնտեսության առջև դրված խնդիրների կատարումը։ Ցավն այն է, որ այսպի-
սիների նկատմամբ երբեմն ավելորդ ներողամտություն են ցուցաբերում և
նրանց չեն փոխարինում գործունյա մարդկանցով։

Կան առանձին պարտիական և պետական աշխատողներ, որոնք գոր-
ծում տապալված մարդկանց փոխանակ շարքային աշխատանքի առաջա-
դրելու, փոխանակ սեփական սխալների վրա նրանց դաստիարակելու, ամեն
կերպ ձգտում են այդպիսիներին պահել նախկին պաշտոններում։ Օրինակ,
Հոկտեմբերյանի շրջանի Շենավանի կոլտնտեսության պարտկազմակերպու-
թյան անդամ Վ. Մանուկյանը որպես ֆերմայի վարիչ գործը տապալել է, հան-
վել աշխատանքից։ Պարտկազմակերպությունը նրան առաջադրել է պահես-
տապետ։ Նա այստեղ էլ է գործը տապալել և հանվել աշխատանքից։ Բայց,
չանցած մի քանի ամիս, նրան նշանակել են շինարարական բրիգադայի բրի-
գադավար, և այդ այն դեպքում, երբ նա շինարարության գործին հմուտ մարդ
չէ։ Լինում են նաև այնպիսի դեպքեր, երբ կադրերին օգնելու և դաստիարա-
կելու փոխարեն, բռնում են նրանց հաճախ կերպով փոխելու ուղին։ Այդ է
ցույց տալիս թեկուզ այն փաստը, որ Աղինի շրջանի Մարալիկ գյուղի կոլ-
տնտեսության կովաբուծական ֆերմայում կարճ ժամանակում փոխել են
երեք վարիչ, որից գործը խիստ տուժել է։

Մեզ մոտ դեռևս կան տեղական առանձին պարտիական և սովետական
օրգաններ, որոնք կենտրոնական հիմնարկների առաջարկությունների ու որո-
շումների կատարման ընթացքում անբավարար են հաշվի առնում տեղական
փորձն ու հնարավորությունները, տվյալ արտադրական ձեռնարկության, կոլ-
տնտեսության, ՄՏ կայանի ու սովետական տնտեսության ռեալ միջոցները։
Դրանց անտեսումը լուրջ վնաս է հասցնում տնտեսության զարգացմանը և
արգելակում է պարտիայի ու կառավարության դիրեկտիվների ժամանակին
կատարումը։ Մինչդեռ, ինչպես նշված է ՀամԿ(բ)Պ XVI կոնֆերենցիայի որոշ-
ման մեջ, «Տեղական պարտիական և սովետական օրգանները պարտավոր են
անշեղորեն կատարել պարտիական և կառավարական դիրեկտիվները և կար-
գադրությունները, միաժամանակ կենտրոնական օրգանների առաջ հարց
դնելով այն բոլոր փոփոխությունների մասին, որոնց անհրաժեշտությունը
երևան է գալիս տեղական փորձով։ Կենտրոնի կարգադրությունները տեղերի
պրակտիկայով և տեղերի պրակտիկան կենտրոնի ղեկավարության միջոցով
կատարվող այսպիսի փոխադարձ վերահսկողությունը միայն հնարավորու-
թյուն կտա ոչ միայն իրագործելու կենտրոնական հիմնարկների առաջարկու-
թյունների և որոշումների անշեղ կատարումը, այլև անհրաժեշտ ուղղումներ
մտցնելու նրանց մեջ՝ տեղական փորձի ցուցումների համապատասխան»
(ՍՄԿՊ-ն համագումարների, կոնֆերենցիաների և Կենտկոմի պլենումների
բանաձևերում ու որոշումներում, II մաս, էջ 749)։

Տնտեսական բոլոր խնդիրների, առաջադրված բոլոր պլանների կատա-
րումը վճռում են մարդիկ՝ բանվորները, կոլտնտեսականները, ինտելիգեն-
ցիան։ Դրա համար էլ հիմնականը նրանց շրջանում ամենօրյա կազմակեր-
պական աշխատանք կատարելն է, որ այժմ պահանջվում է պարտիական ղե-
կավար աշխատողներից։ Պարտիական ղեկավար աշխատողները տեղերում
պետք է լինեն այնքան ժամանակ, քանի դեռ թերությունները չեն վերացվել,
քանի դեռ գործը նորմալ հունի մեջ չի դրվել։ Բայց, ցավոք սրտի, դեռևս կան
պարտիական առանձին ղեկավար ընկերներ, որոնք այդպես չեն աշխատում,

*լայն մասսաների հետ սերտ կապ չեն պահպանում և կազմակերպական կենդանի աշխատանքը փոխարինում են պատահական շրջագայություններով։ Ինչի՞ նման է, երբ մի շարք շրջաններում ՄՏ կայանների գծով շրջկոմների առանձին հրահանգիչներ երբեմն շաբաթներով կոլտնտեսություններում չեն լինում, իսկ եղած ժամանակ էլ չեն շփվում կոմունիստների, կոլտնտեսականների հետ, բավարարվում են կոլտնտեսությունների նախագահներից կամ հաշվապահներից մի քանի թիվ ու փաստ վերցնելով։ Երևանի Միկոյանի շրջանի ետ մնացող ձեռնարկություններում շրջկոմի աշխատողներից քիչ են լինում, նրանց աշխատանքի արմատական բարելավման համար իրականում դեռ ամեն բան չի արվում։ Երբեմն էլ շրջկոմի ընկերները տեղերում լինում են այցելության կարգով, այլ ոչ թե նրանց օպերատիվ ղեկավարություն և օգնություն ցույց տալու նպատակով։ Այսպիսի օրինակներ կարելի է բերել նաև մյուս շրջաններից։*

*Որպեսզի պարտիական կոմիտեները կազմակերպական աշխատանքը լավ հիմքերի վրա դնեն, որպեսզի ապահովեն տնտեսության պարտիական ղեկավարությունը, պետք է իրենց ամենօրյա գործունեության ընթացքում հենվեն սկզբնական պարտիական կազմակերպությունների վրա, տնտեսության գործերի համար բարձրացնեն նրանց դերն ու պատասխանատվությունը, հաշվի առնեն կոմունիստների աշխատանքի փորձը, օգնեն նրանց մասսաների հետ կատարվող աշխատանքում։*

*Կարելի է բազմաթիվ օրինակներ բերել, թե ինչպես քաղկոմների ու շրջկոմների ամենօրյա օգնության և ղեկավարության շնորհիվ շատ ու շատ սկզբնական պարտիական կազմակերպություններ դարձել են մարտունակ, նախաձեռնող։ Այդպիսի պարտիական կազմակերպությունների թվին է պատկանում Երևանի Ավտոդողերի գործարանի պարտկազմակերպությունը, որն աշխատանքի հարուստ փորձ ունի։ Բավական է նշել հետևյալը։*

*Պարտիական կազմակերպությունը լավ նախապատրաստել և իր ժողովներից մեկում քննել է գործարանի գլխավոր ինժեներ Ոսկանովի զեկուցումը՝ արտադրական նույն տարածությունից արտադրանքի թողարկումն ավելացնելու մասին և որոշել է 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, արտադրանքի թողարկումն ավելացնել 33 տոկոսով։ Պարտկազմակերպության որոշումը ջերմ պաշտպանություն գտավ մինիստրության կողմից, որը համապատասխան փոփոխություն մտցրեց արտադրական պլանում՝ զգալի չափով ավելացնելով ավտոդողերի տարեկան թողարկումը։ Դրանից հետո պարտկազմակերպությունը կոլեկտիվի մեջ քաղաքական-բացատրական լայն աշխատանք ծավալեց, զարկ տվեց բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը և գործարար սոցիալիստական մրցություն կազմակերպեց տարեկան պլանը ժամկետից շուտ կատարելու համար։ Պարտկազմակերպությունն ամբողջ կոլեկտիվի օգնությամբ հասավ իր նպատակին. տարեկան պլանը կատարվեց դեկտեմբերի 22-ին և մինչև տարվա վերջը երկրին տրվեց մի քանի միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ 1956 թվականին գործարանն ստացավ 500 հազար ռուբլու արտապլանային եկամուտ, խնայվեց 104 հազար քառ. մետր կորդ, 42 տոննա բնական կաուչուկ, 365 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 1500 տոննա գոլորշի, աշխատանքի արտադրողականությունը նախորդ տարվա հա-*



*մեմատությամբ բարձրացվեց 19 տոկոսով և գերակատարվեց ինքնարժեքի իջեցման պլանը։*

*Այս օրինակը պարզ ցույց է տալիս, թե պարտկազմակերպության լավ աշխատանքի դեպքում, երբ նա հանդես է գալիս կազմակերպչի, նախաձեռնողի դերում, երբ հայտաբերում ու գործի է դնում ներքին ռեզերվները, ինչպիսի լայն զարգացում կարող է ստանալ արտադրությունը։*

*Արտադրական և առևտրական կազմակերպությունների, այդ թվում՝ սովետական տնտեսությունների, կոլտնտեսությունների և ՄՏ կայանների սկզբնական պարտիական կազմակերպությունների դերը և ձեռնարկությունների աշխատանքի վիճակի համար նրանց պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով ՍՄԿՊ Կանոնադրությամբ այդ կազմակերպություններին տրված է ձեռնարկության ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության իրավունք, որը տնտեսության պարտիական ղեկավարության փորձված ու արդյունավետ ձևերից մեկն է։ Բայց վերահսկողությունն արդյունավետ կլինի այն դեպքում, երբ սերտորեն կշաղկապվի քաղաքական աշխատանքի հետ, որի միջոցով բարձրացվում է մասսաների ակտիվությունը, նրանց ուժերն ի սպաս են դրվում տնտեսական խնդիրների հաջող լուծմանը։*

*Ճիշտ չեն վարվում այն սկզբնական պարտիական կազմակերպությունները, որոնք ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողությունը սահմանափակում են միայն տնտեսական ղեկավարների հաշվետվությունների քննարկմամբ։ Դա վերահսկողության իրավունքի նեղացում է։ Իսկական վերահսկողությունը պահանջում է, որ պարտիական կազմակերպությունը հետևողականորեն և ամբողջ խորությամբ թափանցի բուն արտադրության հիմնական հարցերի մեջ, ուժեղացնի մասսաների շրջանում կատարվող կազմակերպական աշխատանքը, հայտաբերի ու գործի դնի ներքին ռեզերվները, ժամանակին բացահայտի եղած թերությունները, կոնկրետ միջոցներ ձեռք առնի և կոլեկտիվին մոբիլիզացնի դրանց վերացման համար։*

*Ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ պարտիական վերահսկողությունը պետք է իրականացնել ոչ միայն պարտիական ակտիվի, ոչ միայն պարտբյուրոյի անդամների, այլև բոլոր կոմունիստների միջոցով։ Դա կլինի մասսայական, իսկական վերահսկողություն, որի ընթացքում կոմունիստները պետք է լինեն կազմակերպված, սովորեն մասսաներից և սովորեցնեն նրանց, աշխատանքում անձնական օրինակ ցույց տան անպարտիականներին, չհանդուրժեն թերությունները, անհաշտ պայքար մղեն այն բոլորի դեմ, ինչ խանգարում է մեր առաջընթացին։*

*Պարտիական կոմիտեները, սկզբնական կազմակերպությունները հաճախ քննարկում են տնտեսական հարցեր և համապատասխան որոշումներ ընդունում։ Դա լավ է։ Բայց քիչ չեն դեպքերը, երբ առանձին պարտիական կոմիտեներ և կազմակերպություններ որոշում կայացնելուց հետո նրա կատարման ստուգում չեն անցկացնում, չեն հետաքրքրվում իրենց իսկ որոշման կատարման բախտով։ Այսպիսի դեպքերում, երբ բացակայում է կատարման ստուգումը, անտեսվում է կազմակերպական աշխատանքը, որոշումները մնում են թղթի վրա։ Բերենք միայն մեկ օրինակ։ Պարտիայի Ստեփանավանի շրջկոմը անցած գյուղատնտեսական տարում տարբեր առիթներով անդրադարձել ու համապատասխան որոշումներ է ընդունել անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու և հանրային հոտի վերարտադրության միջոցով անա-*

*սունների գլխաքանակն ավելացնելու մասին։ Բայց շրջկոմը հետևողական չի եղել իր որոշումների կենսագործման մեջ և կազմակերպական աշխատանքով չի ապահովել նրանց լրիվ կատարումը։ Այդ է պատճառը, որ Սարչապետի, Կզլդաղի, Կաթնաղբյուրի, Գյառգյառի, Պուշկինոյի, Լեջանի կոլտնտեսությունները չեն կատարել անասնաբուծության մթերատվության պլանը և մատղաշ անասունների 13—18 տոկոսը կորստի են մատնել։ Վատ խնամքի ու վատ կերակրման հետևանքով վերոհիշյալ կոլտնտեսությունները յուրաքանչյուր 100 կովից ստացել են 41—45 հորթ, 100 մայր ոչխարից՝ 45 գառ։*

*Տնտեսության պարտիական ղեկավարությունը, արտադրության նկատմամբ պարտիական կազմակերպությունների ազդեցության ուժեղացումը դժվար է պատկերացնել առանց լավ հիմքերի վրա դրված կատարման ստուգման։ Ինչպես վերադաս օրգանների, այնպես էլ սեփական որոշումների կատարման սիստեմատիկ ստուգումը հնարավորություն է տալիս ժամանակին տեսնելու թերությունները, հայտաբերելու նեղ տեղերը, երևան հանելու աշխատանքում թերացողներին։ Այն միաժամանակ օգնում է տեղերում պարզելու գործի փաստական կատարումը, տեսնելու արգասավոր աշխատանքը, առաջավոր փորձը, ուսանելին, որն ընդօրինակելի է բոլորի համար։ Ահա թե ինչու այս գործում պարտիական կազմակերպությունները պետք է ելնեն Լենինի ցուցումից՝* «Ստուգել մարդկանց և ստուգել գործի փաստական կատարումը *— ա՛յս է, դարձյալ ա՛յս է, միմիայն ա՛յս է այժմ ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության մեխը» (Երկեր, հատ. 33, էջ 265)։*

*Տնտեսության պարտիական ղեկավարության գլխավոր, հիմնական պայմանը մասսաների մեջ կատարվող ամենօրյա քաղաքական-դաստիարակչական աշխատանքն է։ Քաղաքական աշխատանքի միջոցով է, որ պարտիական կազմակերպությունները լայն մասսաներին ընդգրկում են գիտակից աշխատանքի մեջ, բարձրացնում են բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի ակտիվությունը, մասսաներին նոր կորով են տալիս պարտիայի ու կառավարության դիրեկտիվները պատվով կատարելու համար։ Քաղաքական աշխատանքի ծավալումը, մասսաների կոմունիստական դաստիարակությունը առանձնակի կարևորություն է ստանում այժմ, երբ սովետական ժողովուրդը սոցիալիզմից աստիճանաբար անցում է կատարում դեպի կոմունիզմ, երբ իր բոլոր ուժերը նվիրաբերում է կապիտալիզմի հետ խաղաղ մրցակցության միջոցով լուծելու ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիրը։ Կարևորն այն է, որ քաղաքական աշխատանքի միջոցով օրըստօրե բարձրացվի մեր բոլոր աշխատավորների ակտիվությունը, կոմունիստական գիտակցականությունը, որպեսզի «...արտադրության յուրաքանչյուր մասնակից ըմբռնի իր կատարած արտադրական խնդիրների անհրաժեշտությունն ու նպատակահարմարությունը, որ արտադրության յուրաքանչյուր մասնակից ո՛չ միայն մասնակցի վերևից տրվող առաջադրությունների կատարմանը, այլև գիտակցաբար մասնակցի արտադրության բնագավառում տեխնիկական ու կազմակերպական բոլոր թերությունների ուղղելուն» (Լենին, Երկեր, հատ. 32, էջ 28)։*

*Այժմ մեզ համար կարևորագույն խնդիր է, որ քաղաքական ու տնտեսական աշխատանքները ճիշտ զուգակցվեն, քաղաքական ամբողջ աշխատանքն իսպաս դրվի տնտեսական հարցերի հաջող լուծմանը։ Պարտիական կոմիտեները և սկզբնական կազմակերպությունները տնտեսական հարցերը պետք է լուծեն ոչ թե նեղ գերատեսչական կարգով, ոչ թե ադմինիստրատիվ կարգադրություններ անելով, այլ պարտիականորեն։ Նրանք տնտեսական յուրաքանչյուր հարց պետք է քննեն քաղաքական ասպեկտով, ոտքի հանեն լայն մասսաներին, գործարար սոցիալիստական մրցություն ծավալեն, հայտաբերեն չօգտագործված ռեզերվները և տնտեսական ղեկավարներին ճանապարհ ցույց տան պետական առաջադրանքների կատարումն ապահովելու համար։ Այլ կերպ ասած՝ նրանք հարցին պետք է մոտենան այնպես, ինչպես կմոտենա քաղաքական ղեկավար օրգանը։ Բայց առանձին շրջկոմներ մի շարք դեպքերում այդպես չեն վարվում։ Օրինակ, ՀԿՊ Արթիկի շրջկոմի բյուրոն 1956 թվականին քննել է Սարալանջի կոլտնտեսության ետ մնալը վերացնելու հարցը, որը, իհարկե, շատ կարևոր հարց է, և լավ է, որ շրջկոմն անդրադարձել է դրան և որոշում ընդունել։ Բայց բանն այն է, որ շրջկոմի բյուրոն իր որոշման մեջ ամբողջ շեշտը դրել է միայն տնտեսական բնույթի միջոցառումներ անցկացնելու վրա, բառ անգամ չասելով կոլտնտեսությունում կատարվող պարտիական-քաղաքական ու կազմակերպական աշխատանքի մասին։ Բայց մի՞թե պարզ չէ, որ առանց դրա, առանց կոլտնտեսականների մոբիլիզացման, առանց առաջավոր փորձի արմատավորման հնարավոր չէ տնտեսության զարգացման բնագավառում նշված միջոցառումները լրիվ կենսագործել և լուրջ հաջողությունների հասնել։*

*Տնտեսության նկատմամբ պարտիական ղեկավարությունն ապահովելու գործում իսկական պարտիական ղեկավարը երբեք չպետք է քաղաքական աշխատանքն անջատի տնտեսականից, չպետք է հանդես գա որպես «զուտ պարտիական» աշխատող կամ ընդհակառակը։ Նա պետք է քաղաքական ու տնտեսական աշխատանքը վարպետորեն զուգակցի միմյանց, սերտորեն կապվի մասսաների հետ, նրանց կազմակերպված պայքարի դուրս բերի արտադրության վերելքի, նոր տեխնիկայի ներդրման, աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։ Իսկ դրա համար անհրաժեշտ է, որ պարտիական ղեկավար աշխատողը լրջորեն ուսումնասիրի մարքսիստական-լենինյան քաղաքատնտեսությունը, լավ տիրապետի ժամանակակից տեխնիկայի ներդրման, էկոնոմիկայի և արտադրության կազմակերպման հարցերին։ Առանց այս պայմանի խոսք չի կարող լինել իսկական ղեկավարության մասին։ Ահա թե ինչու Լենինն ասում էր, որ «...կառավարելու համար հարկավոր է ձեռնահաս լինել, հարկավոր է լիովին և մանրամասնորեն գիտենալ արտադրության բոլոր պայմանները, հարկավոր է գիտենալ այդ արտադրության տեխնիկան՝ նրա ժամանակակից բարձրությամբ, հարկավոր է ունենալ գիտական որոշ կրթություն» (Երկեր, հատ. 30, էջ 547)։*

*ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան և Փետրվարյան պլենումները, նոր, ավելի պատասխանատու խնդիրներ են դրել պարտիական կազմակերպությունների, մեր բոլոր կադրերի առաջ։ Առաջադրված խնդիրների անթերի կատարումն ապահովելու համար պետք է ամեն կերպ ուժեղացնել ու կատարելագործել տնտեսության պարտիական ղեկավարությունը։*

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՊԱՐԱՏԻ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԱՌԹԻՎ

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ, ԱՇ. ՍԱՐԳՍՅԱՆ

Մեր երկրի կյանքում տեղի ունեցած պատմական ամեն մի շրջադարձի
ժամանակ, փոփոխված իրադրության յուրաքանչյուր կոնկրետ պայմաննե-
րում պարտիական կազմակերպությունների ու նրանց օրգանների աշխատանքի
մեթոդներն ու ձևերը, պարտիական ապարատի կառուցվածքը փոփոխվել են,
կատարելագործվել՝ փոփոխված իրադրության համապատասխան։ Կյանքն
ինքն է անհրաժեշտաբար թելադրում անել այդ։ Երբ պարտիայի առջև ծա-
ռանում են նոր խնդիրներ, նոր հարցեր, ապա նա բնականաբար ջանում է
բարելավել պարտիական-կազմակերպական աշխատանքի ձևերը, կատարելա-
գործել իր ապարատը՝ ամբողջապես այն ենթարկելով ժամանակի պահանջ-
ներին, նոր խնդիրների լուծման նպատակին։

ՍՄԿՊ XX համագումարը նշանավորեց վճռական շրջադարձ Սովետական
Միության քաղաքական ու տնտեսական կյանքում։ Նա ուղենշեց երկրի ար-
տադրողական ուժերի նոր հզոր զարգացում, սովետական ժողովրդի հոգևոր
ուժերի բուռն վերելք։ Մեր պարտիայի, կառավարության ու ժողովրդի առջև
կանգնեցին վիթխարի նոր խնդիրներ, այն է՝ ծանր արդյունաբերության
առավել զարգացման, տեխնիկական անընդհատ պրոգրեսի բազայի վրա
ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա հզոր աճը
և սովետական ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մա-
կարդակի խոշոր վերելքը։ Այդ խնդիրների հաջող կենսագործումը պարտիա-
կան կազմակերպություններից ու նրանց օրգաններից պահանջում է կտրուկ
շրջադարձ կատարել դեպի տնտեսական շինարարության կոնկրետ ղեկավար-
ման հարցերը, բարելավել ու կատարելագործել պարտիական-կազմակերպա-
կան աշխատանքի ձևերն ու մեթոդները, ավելի ճկունացնել պարտիական
ապարատը։

Վերջին տարիներին հսկայական աշխատանք կատարվեց պարտիական
կյանքի լենինյան նորմերը վերականգնելու, ներպարտիական դեմոկրատիան
զարգացնելու ուղղությամբ. դա բարձրացրեց պարտիական մասսաների ակ-
տիվությունը, նախաձեռնությունը, ապահովեց կոմունիստների ավելի լայն
մասնակցությունը պարտիական կյանքին։ Ուժեղացել է պարտիական ղեկա-
վարությունը տնտեսության նկատմամբ, նկատելիորեն բարելավվել ու կա-
տարելագործվել է պարտիական-կազմակերպական աշխատանքը։ Զգալի
բան է արվել պարտիական ապարատի կառուցվածքի պարզեցման, նրա գոր-
ծունեության բարելավման ասպարեզում։ Այդ իմաստով լուրջ նշանակություն



ունեցավ պարտիայի գյուղական շրջկոմների կառուցվածքում կատարված վե-
րակառուցումը, ՄՏԿ-ների գոտիների գծով շրջկոմների հրահանգչական
խմբերի ստեղծումը, որը մեծապես օգնեց գյուղական շրջկոմներին՝ ավելի
մոտիկից ու անմիջականորեն ղեկավարելու կոլտնտեսային արտադրությունը,
կազմակերպելու և առաջ մղելու գյուղատնտեսության շեշտակի վերելքը։

Տնտեսությունը խոր գործիմացությամբ ղեկավարելու նպատակով ՍՄԿՊ
XX համագումարը պարտիական կազմակերպություններից պահանջեց վճռա-
կանորեն բարելավել կազմակերպական աշխատանքը, և ամենից առաջ կազ-
մակերպական աշխատանքի դրվածքը տնտեսական շինարարության բնագա-
վառում։ Նա միաժամանակ հանձնարարեց շարունակել աշխատանքը՝ փո-
փոխված իրադրությանը համապատասխան պարտիական օրգանների կա-
ռուցվածքն ու նրանց գործունեության ձևերը կատարելագործելու ուղղու-
թյամբ։

Պարտիայի շրջկոմը մեր պարտիայի կառուցվածքում կարևորագույն
օղակ է։ Դա ամենից առաջ քաղաքական ղեկավար օրգան է, շրջանի պար-
տիական կոլեկտիվների և մասսաների կազմակերպիչը, նրանց մարտական
շտաբը։ Շրջկոմը ղեկավարում է իր տերիտորիայի սահմաններում կատար-
վող ամբողջ քաղաքական, տնտեսական և կուլտուրական աշխատանքը, լիա-
կատար պատասխանատվություն է կրում տվյալ շրջանում գործերի ընդհա-
նուր վիճակի համար. նա կանգնած է պարտիական կյանքի լենինյան նորմե-
րի և սկզբունքների անխախտ պահպանման դիրքերում։ Շրջկոմը ստեղծում է
իր ապարատը, որը պարտիական-կազմակերպական և քաղաքական աշխա-
տանքի միջոցով կազմակերպում է պարտիայի դիրեկտիվների իրականացու-
մը, ուղղություն է տալիս շրջանի պարտիական, սովետական և տնտեսական
կազմակերպությունների պրակտիկ գործունեությունը։ Շրջկոմի ապարատում
կենտրոնացված են տվյալ պարտկազմակերպության լավագույն մարդկանց
մի խումբ, նրա փորձված, հեղինակավոր կադրերը։

ՍՄԿՊ XX համագումարից հետո նկատելիորեն ամրապնդվել է ռեսպուբ-
լիկայի պարտիական կազմակերպությունների շրջանային օղակը, նրա ապա-
րատը հիմնականում համալրվել է մասսաների եռանդուն, ձեռներեց կազմա-
կերպիչներով, արտադրությունը լավ իմացող մարդկանցով։ Պարտիական
շրջանային կոնֆերանսները ցույց տվեցին, որ շատ շրջկոմներ զգալի կերպով
ուժեղացրել են կազմակերպական աշխատանքը մասսաների մեջ, բարելավել
ղեկավարությունը տնտեսության նկատմամբ և ստեղծագործական մոտեցում
են ցուցաբերում հարցերի լուծման գործում։ Միաժամանակ պարզ դարձավ,
որ մի շարք շրջկոմների ու նրանց ապարատների աշխատանքի մակարդակը
դեռևս չի համապատասխանում պարտիայի կողմից առաջադրվող պա-
հանջներին։

Առանձին շրջկոմներում կազմակերպական կենդանի աշխատանքը հա-
ճախ փոխարինվում է ընդհանուր խոսակցությամբ, պակասում է գործնակա-
նությունն ու նպատակասլացությունը աշխատանքում։ Լուրջ քայլեր չեն
արվում պարտիական ղեկավարության ձևերն ու մեթոդները բարելավե-
լու, կատարելագործելու ուղղությամբ, ղեկավար որոշ աշխատողների մոտ
բացակայում է մասսաներին համոզելու, պարտիայի քաղաքականության կեն-
սագործումը օրինակելիորեն կազմակերպելու հմտությունը, ստեղծագործական
նախաձեռնությունը։ Նրանք մոռանում են, որ ղեկավարել, երբեք չի նշա-

նակում միայն կարգադրել, որոշումներ ընդունել և ցուցումներ տալ. իսկական ղեկավարությունը ենթադրում է կազմակերպական կոնկրետ աշխատանքով ապահովել առաջադրված խնդրի լուծումը, առավելապես համոզման ճանապարհով:

Ամենևին գոհացուցիչ չեն անցյալ տնտեսական տարվա արդյունքները Աշտարակի շրջանում: Դրա հիմնական պատճառը կոլտնտեսային արտադրության նկատմամբ պարտիական անբավարար ղեկավարությունն է: Պարտշրջկոմը խորը կերպով չի թափանցել կոլտնտեսությունների, ՄՏԿ-ների գործունեության մեջ, լուրջ օգնություն ցույց չի տվել պարտիական կազմակերպություններին: Պարտշրջկոմի աշխատողները, այդ թվում նաև ՄՏԿ-ների գծով շրջկոմի հրահանգչական խմբերը, անհրաժեշտ նախաձեռնություն հանդես չեն բերել գյուղատնտեսության կոնկրետ հարցերը լուծելիս: Շրջանային կոնֆերանսում լուրջ քննադատության ենթարկվեցին շրջկոմի կազմակերպական և պրոպագանդայի ու ագիտացիայի բաժինների աշխատողներն այն բանի համար, որ նրանք սերտորեն կապված չեն սկզբնական կազմակերպությունների հետ, աշխատում են տնտեսական շինարարության հարցերից կտրված:

Շրջանային կոնֆերանսներում բազմաթիվ քննադատական դիտողություններ եղան շրջկոմների ղեկավար որոշ աշխատողների ղեկավարման ոճի ու մեթոդների վերաբերյալ: Նոյեմբերյանի շրջկոմի քարտուղարները և բաժնի վարիչները քիչ են եղել տեղերում, եղած ժամանակ էլ չեն խորացել պարտիական կազմակերպությունների, կոլտնտեսությունների գործունեության մեջ. ավելին, հաճախ նրանք մոռանալով կարևոր հարցերը, զբաղվել են իրենց չվերաբերող մանր, երկրորդական հարցերով: Նման փաստեր կարելի է բերել Աղինի, Մարտունու, Ստեփանավանի շրջկոմների աշխատանքի պրակտիկայից: Կարելի է նկատել նաև առանձին դեպքեր, երբ շրջկոմի ղեկավարները կազմակերպական աշխատանքը փոխարինում են գործամոլությամբ, անտեղի կերպով միջամտելով սովետական ու տնտեսական կազմակերպությունների աշխատանքին:

Անմիտ բան է տնտեսական և պարտիական աշխատանքի անհեթեթ հակադրումը, ինչպես նաև պարտիական կազմակերպությունների ու նրանց օրգանների ֆունկցիաների շփոթումը սովետական-տնտեսական օրգանների աշխատանքի հետ: Անկասկած, պարտշրջկոմը ամբողջովին պատասխանատու է շրջանի տնտեսական և կուլտուրական շինարարության, սովետական և տնտեսական օրգանների գործունեության համար: Սակայն, դա երբեք էլ չի նշանակում, թե պարտշրջկոմը պետք է աշխատի այդ օրգանների փոխարեն, զբաղվի ամեն մի մանր, իրեն չվերաբերող գործերով: Դեռևս պարտիայի XI համագումարը ընդգծել է, որ «Պարտկազմակերպությունները ոչ մի դեպքում չպետք է միջամտեն տնտեսական օրգանների ամենօրյա ընթացիկ աշխատանքին և պարտավոր են ձեռնպահ մնալ ընդհանրապես սովետական աշխատանքի ասպարեզում վարչական կարգադրություններ անելուց: Պարտկազմակերպությունները պետք է ուղղություն տան տնտեսական օրգանների գործունեությանը, բայց ոչ մի դեպքում չպետք է աշխատեն փոխարինել կամ դիմազրկել նրանց» («ՍՄԿՊ-ն բանաձևերում», մասն I, էջ 802):

Այս ցուցումը լրիվին ուժի մեջ է նաև մեր օրերում:

ՀԿՊ Ախտայի շրջկոմի բաժինների աշխատողները ըստ մեծի մասի զբաղվում են զուտ «պարտիական» հարցերով, կտրված արտադրության կոնկ-



րետ հարցերից, իսկ շրջկոմի ՄՏԿ-ների գոտիների գծով հրահանգչական խմբերը՝ գերազանցապես տնտեսական հարցերով: Հասկանալի է, որ շրջկոմի ապարատի գործունեության նմանօրինակ «բաժանումը» գործին ոչ մի չափով չի կարող օգնել: Ավելին, երբեմն պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի ընկերները ավելորդ ժամանակ են կորցնում այնպիսի մանր հարցերի վճռման վրա, որոնք կարող են հաջողությամբ լուծվել շրջսովետի գործկոմի ու նրա համապատասխան բաժնի կողմից: Արթիկի շրջանային կոնֆերանսում խոսք եղավ այն մասին, որ շրջկոմի ՄՏԿ-ների գոտու գծով հրահանգչական խմբերի առկայության պայմաններում անհրաժեշտ է վերացնել շրջկոմի բաժինները, որով և կվերացվի զուգահեռականությունն ու դիմազրկությունը պարտիական աշխատանքում:

Այս և այլ փաստեր վկայում են այն մասին, որ անհրաժեշտ է վճռաբար բարելավել պարտիական ղեկավարության ոճն ու մեթոդները, կատարելագործել քաղկոմ-շրջկոմների ապարատների կառուցվածքը: Այդ ամբողջ աշխատանքը պետք է ընթանա պարտիական ղեկավարությունը արտադրությանն ամեն կերպ մոտեցնելու, մասսաների մեջ կազմակերպական աշխատանքը ուժեղացնելու ճանապարհով:

Այդ տեսակետից արժանի է ուշադրության Լատվիայի Կոմունիստական պարտիայի Ելգավայի քաղկոմի աշխատանքի փորձը, որը մեծ հետաքրքրություն առաջ բերեց պարտիական աշխատողների շրջանում: Քաղկոմի ապարատի գործունեության նոր, ավելի հաջող ձևերի որոնումներ կատարելիս ապարատի աշխատողները հանգեցին այն եզրակացության, որ հարկավոր է վերացնել քաղկոմի բաժինները և ղեկավարությունն իրականացնել անմիջականորեն հրահանգիչների միջոցով: Ըստ էության այդ փոփոխությունը հետապնդում է մի նպատակ՝ որպեսզի քաղկոմի ապարատի կառուցվածքը, նրա գործունեության ձևերը ամենալավագույն կերպով համապատասխանեն կյանքի կողմից թելադրվող նոր պահանջներին, զարգացնեն պարտիական աշխատողների նախաձեռնությունն ու պատասխանատվությունը: Մամուլում հրապարակված նյութերն ասում են այն մասին, որ Ելգավայի քաղկոմի ապարատի կառուցվածքի այդ փոփոխությունը տալիս է իր դրական արդյունքը: Սակայն, չի կարելի այդ փորձը նույնությամբ ընդօրինակել, պատճենահանել, առանց հաշվի առնելու տեղական պայմանները, այդ փորձի թե՛ դրական և թե՛ բացասական կողմերը:

Այդ փորձը որոշ արձագանք գտավ նաև մեր ռեսպուբլիկայում: Անցյալ տարի Երևանի պարտիական կազմակերպության Ստալինյան և Միկոյանի շրջկոմները, Կիրովականի քաղաքային կոմիտեն ելնելով իրենց տեղական կոնկրետ պայմաններից, փոփոխություններ մտցրին իրենց ապարատների կառուցվածքում:

Մինչև ապարատի վերակառուցումը, ՀԿՊ Ստալինյան շրջկոմում գործում էին կազմակերպական, արդյունաբերական և ագիտացիայի ու պրոպագանդայի բաժիններ՝ 12 հրահանգիչներով: Ներկայումս բաժինների փոխարեն ստեղծված է հրահանգչական երեք խումբ. այդ խմբերից մեկը սպասարկում է շրջանի արդյունաբերական և շինարարական ձեռնարկությունների պարտիական կազմակերպություններին, երկրորդ խումբը՝ տրանսպորտի, առևտրի ու սովետական հիմնարկների և վերջապես երրորդը՝ կուլտուր-լուսավորական հիմնարկների, դպրոցական պարտիական կազմակերպություն-

ներին։ Ամեն մի խումբ ունի իր ղեկավարը և հրահանգիչները. խմբերը կոմպլեկտավորելիս հաշվի է առնվել աշխատողների ունակությունները, գիտելիքները, պրակտիկ փորձը, ինչպես նաև տվյալ բնագավառի աշխատանքի ծավալը։ Այսպես, այն խումբը, որը զբաղվում է արդյունաբերական և շինարարական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպությունների աշխատանքի հարցերով, իր կազմում ունի 7 հրահանգիչ, իսկ կուլտուրական հիմնարկների խումբը՝ 2 հրահանգիչ։ Ինչպես կարելի է տեսնել, շրջկոմի ամեն մի խմբի ամրացված են որոշակի բնագավառի պարտիական կազմակերպություններ, ինչպես նաև ամեն մի հրահանգչի՝ որոշակի թվով սկզբնական կազմակերպություններ։ Ըստ այդ նոր կառուցվածքի, շրջկոմի առաջին քարտուղարը ղեկավարում է ապարատի ամբողջ աշխատանքը, իսկ երկրորդ և երրորդ քարտուղարներին ամրացված են այդ հրահանգչական խմբերը, որոնց միջոցով նրանք կազմակերպում և ուղղություն են տալիս շրջանի տնտեսական, կուլտուրական և պարտիական աշխատանքին։ Հրահանգչական խմբերը կազմում են իրենց աշխատանքի ամսական պլանը, յուրաքանչյուր ամիս երկու անգամ, հարկ եղած դեպքում նաև ավելի, շրջկոմի առաջին քարտուղարի մոտ հրավիրվում են ապարատի աշխատողները, ուր ամփոփվում է ամեն մի խմբի աշխատանքը և տրվում ցուցումներ։ Եթե հրահանգիչներն իրենց աշխատանքում հանդիպում են դժվարությունների, ապա այս կամ այն խնդրի լուծման, պարզաբանման համար նրանք անմիջապես դիմում են իրենց խմբի ղեկավարին և շրջկոմի համապատասխան քարտուղարին։

Ի՞նչ տվեց շրջկոմի ապարատի կառուցվածքում տեղի ունեցած փոփոխությունը։ Ամենից առաջ, յուրաքանչյուր խումբ, յուրաքանչյուր հրահանգիչ միաժամանակ, ամբողջությամբ վերցրած զբաղվում է պարտիական աշխատանքի բոլոր հարցերով՝ քաղաքական, կազմակերպական և տնտեսական աշխատանքի բոլոր բնագավառներով։ Ներկայումս ապարատի աշխատողներն իրենց աշխատանքային օրվա մեծ մասը անց են կացնում սկզբնական պարտիական կազմակերպություններում և հնարավորություն ունեն ավելի խորը թափանցելու նրանց գործունեության մեջ, ավելի մեծ օգնություն ցույց տալու, զբաղվելու կենդանի կազմակերպական աշխատանքով։ Զգալիորեն ամրապնդվեց պարտշրջկոմի կապը սկզբնական կազմակերպությունների հետ, ուժեղացվեց պարտիական ղեկավարությունը արտադրության, սովետական հիմնարկների գործունեության նկատմամբ։ Անհամեմատ բարձրացել է հրահանգչի դերը, նրա պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։

Պարտիայի Ստալինյան շրջկոմի ապարատի կառուցվածքի մեջ տեղի ունեցած փոփոխությունների մասին դրական կերպով են արտահայտվում սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարները, պարտիական ակտիվը, շրջկոմի աշխատողները։ Հայէլեկտրո գործարանի պարտկոմիտեի քարտուղար Մ. Բալայանը նշում է, որ այդ վերակառուցման հետևանքով նկատելիորեն ամրապնդվել է շրջկոմի և սկզբնական կազմակերպությունների կապը, ուժեղացել է պարտիական ղեկավարությունը արտադրության նկատմամբ։ Առաջ,— ասում է նա,— մեզ մոտ էին գալիս շրջկոմի համարյա բոլոր աշխատողները, և՛ բաժնի վարիչները, և՛ հրահանգիչները, որոնցից ամեն մեկը զբաղվում էր մեր կազմակերպության աշխատանքի



միայն մի բնագավառով, միայն մեկ հարցով. հաճախ էր պատահում, որ նրանք գալիս էին որոշ փաստեր, տվյալներ հավաքելու համար և բավարարվում էին. ընդհանուր կարգի ցուցումներով։ Նրանք չէին խորանում (և՛ ի վիճակի էլ չէին, քանի որ նրանք պետք է լինեին բազմաթիվ այլ կազմակերպություններում) մեր գործարանի արտադրական կյանքի, էկոնոմիկայի հարցերի մեջ, ճանաչել մարդկանց, հետաքրքրվել նրանց կյանքով ու աշխատանքով։ Այժմ մեր գործարանի կազմակերպությանը ամրացված է շրջկոմի միայն մեկ հրահանգիչ, որը զբաղվում է մեր աշխատանքի բոլոր հարցերով։

Կաբելի գործարանի պարտբյուրոյի քարտուղար Թ. Հարոյանը նշում է, որ շրջկոմի ապարատի կառուցվածքի փոփոխությունը վերացրել է դիմազրկությունը պարտիական աշխատանքում, հնարավոր է դարձել ավելի ճշտորեն զուգակցելու պարտիական-քաղաքական աշխատանքը տնտեսականի հետ։ Համեմատաբար ուժեղացել է շրջկոմի ղեկավարությունը գործարանի նկատմամբ, այն դարձել է ավելի կոնկրետ, անմիջական։ Շրջկոմի հրահանգիչ Ն. Մինասյանը պատմում է, որ նախկինում գնալով որևէ կազմակերպություն, ինքը զբաղվում էր միայն այն հարցով, ինչ հանձնարարվել էր բաժնի վարիչի կամ քարտուղարի կողմից, և հասկանալի էր, որ ինքը չէր կարող խորանալ արտադրության, պարտկազմակերպության աշխատանքի մեջ, ցույց տալ անհրաժեշտ օգնություն։ Նման պայմաններում հրահանգչի ինքնուրույնությունը, նախաձեռնությունը զարգացնելու հնարավորությունը քիչ էր։ Ընկ. Մինասյանը բերում է մի այսպիսի օրինակ. առաջներում նա մի քանի անգամ եղել է Մյասնիկյանի անվան կահույքի ֆաբրիկայում, բայց և այնպես նա շատ քիչ բան գիտեր տվյալ ձեռնարկության ու նրա մարդկանց մասին։ Այժմ նա սպասարկում է նաև վերոհիշյալ ֆաբրիկայի պարտկազմակերպությանը, զբաղվում նրա գործունեության բոլոր հարցերով, խորանում արտադրության հարցերի մեջ, ժամանակ է գտնում զրուցելու կոմունիստների, բանվորների հետ, որն անշուշտ օգնում է նրան ավելի լավ ծանոթանալու և որակյալ օգնություն ցույց տալու գործարանի պարտիական կազմակերպությանը, դիրեկցիային։ Հիմա հնարավոր չէ,— ասում է նա,— բավարարվել ընդհանուր «ցուցումներ» ու «դիրեկտիվներ» տալով։

ՀԿՊ Ստալինյան շրջկոմի ապարատի կառուցվածքի վերափոխությունը, անշուշտ, իր դրական արդյունքների հետ մեկտեղ ունի նաև իր թերությունները, իր մինուսները։ Բայց արդեն մի բան կարելի է հաստատ ընդգծել, որ այդ փոփոխությունը զգալիորեն նպաստել է կազմակերպական աշխատանքի բարելավմանը, պարտիական աշխատանքի աշխուժացմանը։

Կիրովականի քաղկոմի ապարատի ներկա կառուցվածքը զգալիորեն տարբերվում է Ստալինյան շրջկոմից։ Այստեղ ևս վերացվեցին նախկինում գոյություն ունեցող երեք բաժինները, սակայն դրանց փոխարեն չստեղծվեցին համապատասխան խմբեր, ինչպես այստեղ են ասում, վերացվեց քաղկոմի քարտուղարների և հրահանգիչների միջև ընկած միջանկյալ օղակը՝ բաժինները։ Նախկին բաժնի վարիչները, հրահանգիչները, պրոպագանդիստները և լեկտորը դարձել են պատասխանատու կազմակերպիչներ, որոնցից յուրաքանչյուրը սպասարկում է քաղաքի 10—15 սկզբնական կազմակերպության։ Քաղկոմի ղեկավարներն աշխատել են, որ ամեն մի կազմակերպչի ամրացվեն նույն բնույթի կազմակերպություններ, բայց իրականում քաղկոմի կազմակերպիչներից շատերը սպասարկում են տարբեր բնագավառի կազմակեր-

պությունների։ Ավելին, Քիմիական կոմբինատի պարտիական կազմակերպությանը ամրացված է ոչ թե մեկ պատասխանատու կազմակերպիչ, այլ համարյա բոլոր կազմակերպիչները սպասարկում են կոմբինատի ցեխային տարբեր կազմակերպություններին։ Ինչպես Ստալինյան շրջկոմում, այնպես էլ այստեղ, պատասխանատու կազմակերպիչները զբաղվում են իրենց ամրացված պարտկազմակերպությունների աշխատանքի բոլոր հարցերով, նրանց գործունեության բոլոր կողմերով։ Պատասխանատու կազմակերպիչը գործում է ինքնուրույն, և իր աշխատանքի ընթացքում անմիջականորեն կապվում է քաղկոմի բոլոր քարտուղարների հետ, որոնց միջև ըստ բնագավառների կատարված է աշխատանքի բաժանում։ Այսպիսով, պատասխանատու կազմակերպիչները գործ ունեն բոլոր քարտուղարների հետ և աշխատում են նրանց ցուցումներով։ Պատասխանատու կազմակերպիչները կազմում են իրենց աշխատանքի պլանը, որը և հաստատվում է ղեկավարության կողմից։ Ամեն երկուշաբթի քաղկոմի առաջին քարտուղարի մոտ հրավիրվում է խորհրդակցություն, ուր ամփոփվում են. կազմակերպիչների աշխատանքի արդյունքները և հետագա գործունեության համար նրանք ստանում են անհրաժեշտ ցուցումներ, խորհուրդներ։

Շոշափելի են Կիրովականի քաղկոմի ապարատի կառուցվածքի վերակառուցման առավելությունները, նրա նախնական արդյունքները։ Ներկայումս պատասխանատու կազմակերպիչներին ամրացված են մի քանի անգամ ավելի քիչ կազմակերպություններ, քան առաջ ունեին հրահանգիչները։ Դա, անշուշտ, հնարավորություն է տալիս ավելի լուրջ օգնություն և ղեկավարություն ցույց տալ տեղերին, հաճախակի լինելու քաղաքի բոլոր պարտկազմակերպություններում։ Պարտիական աշխատողների տեսադաշտից դուրս չի մնում ո՛չ մի սկզբնական կազմակերպություն, աշխատանքի ո՛չ մի բնագավառ։ Այժմ ամեն մի սկզբնական կազմակերպություն գործ ունի քաղկոմի միայն մեկ աշխատողի հետ, նրան են դիմում իրենց բոլոր հարցերով։ Պատասխանատու կազմակերպիչները տեղերում ինքնուրույն կերպով լուծում, ընթացք են տալիս բազմաթիվ պրակտիկ հարցերի։

Քաղկոմի պատասխանատու կազմակերպիչ Վ. Ասլամազյանը, որը մի քանի ամիս առաջ արդյունաբերական բաժնի հրահանգիչն էր, պատմում է, որ առաջ նա ի վիճակի չէր լինել արդյունաբերական, տրանսպորտի և շինարարական բազմաթիվ ձեռնարկություններում, գործարար և կոնկրետ օգնություն ցույց տալու նրանց. այդ ձեռնարկությունների գործունեության վերաբերյալ հաճախ նա ինֆորմացիաներ էր ստանում ուրիշներից, իմանում էր պարտկազմակերպությունների արձանագրություններից, հեռախոսային կապի միջոցով։ Ժամանակ էլ չկար զբաղվելու, հետաքրքրվելու, թե ինչպես էր տեղերում դրված քաղաքական, ներպարտիական աշխատանքը, ինչպես են կատարվում որոշումները, ինչով են զբաղվում կոմունիստները, քիչ հնարավորություն կար շփվելու մարդկանց հետ։ Այժմ դժվար է գլուխ պահել, մի կերպ օգնել, ղեկավարել,— ասում է նա,— քանի որ մեզ ամրացված հիմնարկ-ձեռնարկությունների ու նրանց պարտիական կազմակերպությունների ողջ գործունեության համար կրում ենք լիակատար պատասխանատվություն։

Համարյա նույն ձևով է վերափոխված ՀԿՊ Միկոյանի շրջկոմի ապարատը։

Պարտիայի Ստալինյան և Միկոյանի շրջկոմներում, ինչպես նաև Կիրովականի քաղկոմում հրահանգիչները զգալիորեն ազատվել են թղթեր գրելուց, այս կամ այն կարգի ինֆորմացիաներ հավաքելուց, տեխնիկական մանր գործերից։ Այդ, ինչպես նաև պարտիայի շարքերի ընդունելության, բողոքարկման հարցերով զբաղվում են գործերի վարիչները, պարտիական միասնական տոմսերի և պարտիական վիճակագրական սեկտորի աշխատողները։ Հասկանալի է, որ հիմա էլ հրահանգիչներից պահանջվում է բյուրոյի համար կազմել որակյալ զեկուցագրեր, որոշման նախագծեր, ընդհանրացնել եղած նյութերը և այլն։ Սակայն, դա հիմա շատ քիչ ժամանակ է խլում նրանցից։ Ճիշտ ղեկավարելու համար հարկավոր է լավ իմանալ էկոնոմիկան, պարտիական աշխատանքի պրակտիկան։ Դա ստիպում է հրահանգիչներին սովորել, ավելի շատ կարդալ, խորամուխ լինել արտադրության էկոնոմիկայի հարցերում։



Ապարատի կառուցվածքի այս փոփոխություններից հետո վերոհիշյալ պարտիական օրգանները հնարավորություն ստացան ավելի լայնորեն ներազդելու կյանքի վրա, օպերատիվ կերպով տեղերում լուծելու այս կամ այն հարցերը, մեկ կազմակերպության աշխատանքի դրական փորձը տեղափոխել մյուս կազմակերպությունը։ Այդ փոփոխություններն ունեն ևս մեկ առավելություն, այն է՝ ավելի մեծ հնարավորություն է ստեղծվել հրահանգչական կազմից պատրաստել բազմակողմանիորեն զարգացած, եռանդուն ու գործունյա պարտիական ղեկավար կադրեր։

Պարտիական ապարատի կառուցվածքում եղած այս նոր փոփոխությունները միաժամանակ մեծապես բարձրացրել է քաղկոմ-շրջկոմների քարտուղարների պատասխանատվությունը, նրանց դերը պարտիական ղեկավարության մեջ։ Այդ փոփոխությունները ավելի մեծ արդյունք կտան, եթե ամրապնդվի հրահանգչական կազմը ձեռներեց, գործարար հատկանիշներով օժտված մարդկանցով, հոգ տարվի հրահանգիչների աճման ու դաստիարակության, նրանց տնտեսագիտական ուսուցման մասին։ Միաժամանակ վերոհիշյալ քաղկոմ-շրջկոմների քարտուղարները պետք է հաշվի առնեն, որ ապարատում կատարված այդ փոփոխությունների հետևանքով որոշ չափով կարող են տուժել քաղաքային և շրջանային մասշտաբով ձեռնարկվող միջոցառումները։

Ստալինյան և Միկոյանի շրջկոմների, Կիրովականի քաղկոմի փորձը արժանի է ուսումնասիրման, ընդհանրացման։ Ինչպես կարելի է նկատել, այդ փորձերն իրարից տարբերվում են, և հասկանալի պատճառներով նրանց արդյունքներն էլ չեն կարող լինել միատեսակ։ Ներկայումս հնարավոր չէ պնդել, թե պարտիական վերոհիշյալ օրգաններից որի՞ փորձն է ավելի լավ, կատարյալ. հնարավոր է, որ ռեսպուբլիկայի այլ շրջկոմներում ապարատի կառուցվածքի փոփոխությունը կարող է այլ, ավելի հաջող լուծում ստանալ։

Պարտիական ապարատի կառուցվածքի փոփոխությունը, նրա գործունեության ձևերի բարելավումը ինքնանպատակ չէ, այն պետք է ուղղված լինի ՍՄԿՊ XX համագումարի կողմից առաջադրված խնդիրների իրականացման, տնտեսության պարտիական ղեկավարման մակարդակի հետագա բարձրացման նպատակին։ Անհրաժեշտ է ամեն կերպ ամրապնդել պարտիական ապարատը, ամրացնել այն լավագույն կադրերով, բարձրացնել նրանց նախաձեռնությունը և անձնական պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։

# ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԸ ԵՎ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ

## Ս. ՃԱՂԱՐՅԱՆ

ՍՄԿՊ XX համագումարը խնդիր դրեց՝ մեր երկրի արդյունաբերության,
գյուղատնտեսության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում հաս-
տատորեն արմատավորել գիտության, տեխնիկայի և առաջավոր փորձի նո-
րագույն նվաճումները, բարելավել ու կատարելագործել արտադրության կազ-
մակերպումը, հասնել ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման և
աշխատանքի արտադրողականության աճի, որը վճռական պայման է մեր
երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման գործում։

Վ. Ի. Լենինը խոսելով նոր հասարակարգի կառուցման գործում բանվոր-
ների հերոսական մեծ նախաձեռնության մասին՝ խնդիր էր դնում «...պաշտ-
պանել նորի բոլոր և ամեն տեսակ ծիլերը, որոնցից կյանքը կվերցնի ամենից
կենսունակները»։ Լենինը գտնում էր, որ նորի այդ ծիլերը կարևոր դեր են
խաղում աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։ Սովե-
տական ժողովուրդը մեծ նվաճումներ է ձեռք բերել մեր երկրի էկոնոմիկայի
ու կուլտուրայի զարգացման և հետագա հզոր վերելքի համար մղվող պայ-
քարում։ Այդ գործում անգնահատելի նշանակություն ունեցավ գիտության նո-
րագույն նվաճումների և առաջավոր փորձի արմատավորումը, նորի, առաջա-
վորի պրոպագանդումը և մասսաների սեփականություն դարձնելը։

Պարտիայի Իջևանի շրջանային կոմիտեն և սկզբնական կազմակերպու-
թյունները գիտության նորագույն նվաճումների և առաջավոր փորձի արմա-
տավորման ու անհրաժեշտ կազմակերպչական աշխատանքի շնորհիվ շրջանի
գյուղատնտեսության և արդյունաբերության զարգացման գործում ձեռք են
բերել զգալի հաջողություններ։ Բավական է նշել, որ 1954 թվականի համե-
մատությամբ հացահատիկի համախառն արտադրանքն ավելացել է երկու
անգամ։ Քիչ աշխատանք չի կատարվել եգիպտացորենի և գյուղատնտեսական
մյուս կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակման և այգեգոր-
ծության զարգացման ուղղությամբ։ Բոլոր գծերով կատարվել ու գերակա-
տարվել է հանրային անասնաբուծության գլխաքանակի ավելացման պլանը։
Կաթի համախառն արտադրությունը, նախորդ տարվա համեմատությամբ,
ավելացել է 25,3 տոկոսով։ Ամեն մի ոչխարից ստացվել է 2,9 կիլոգրամ
բուրդ, 1954 թվականին ստացված՝ 1,6 կիլոգրամի դիմաց։ Պետությանը
բուրդ հանձնելու պլանը կատարվել է 109,6 տոկոսով։ Անցյալ տարի ծխա-
խոտի հումքի 92 տոկոսը կազմեց առաջին և երկրորդ տեսակի։ Պետությանը
հանձնված ծխախոտի հումքի դիմաց կոլտնտեսությունները 12 միլիոն ռուբլու
դրամական եկամուտ ստացան։



Գիտության և առաջավոր փորձի ընդհանրացման և տարածման գործում
կարևոր դեր են խաղում գյուղատնտեսության առաջավորների շրջանային
հավաքները և սոցիալիստական մրցության ծավալումը։ Ամեն տարի տրադի-
ցիոն կերպով շրջանում կազմակերպվող այդ հավաքներում ամփոփվում են
նախորդ տարվա արդյունքները, խրախուսվում են աշխատանքի առաջավոր-
ները, ելնելով առաջավորների փորձից՝ արվում են կոնկրետ առաջարկու-
թյուններ, առաջ են քաշվում նոր խնդիրներ, վերցվում սոցիալիստական նոր
պարտավորություններ։ Այդ բոլորը, անշուշտ, կարևոր դեր են խաղում ար-
տադրության բարձրացման գործում։

Անցյալ տարի գյուղատնտեսության առաջավորների շրջանային հավաքը,
քննության առնելով տնտեսական տարվա արդյունքները, հանրագումարի
բերեց այն նվաճումները, որոնք ձեռք են բերել կոլտնտեսային աշխատավոր-
ները իրենց անձնազոհ և համառ աշխատանքով։

Հավաքի մասնակիցները սոցիալիստական կոնկրետ պարտավորություն-
ներ ընդունեցին և մրցության հրավիրեցին հարևան՝ Ադրբեջանական ՍՍՌ
Ղազախի շրջանի գյուղատնտեսության բնագավառի աշխատողներին։ Փորձի
փոխանակման կարգով շրջանի պատվիրակները եղան Ղազախի շրջանի կոլ-
տնտեսություններում, մոտիկից ծանոթացան բամբակի և եգիպտացորենի
քառակուսի-բնային եղանակով կատարվող ցանքի տեխնիկային։ Ադրբեյ-
ջանի «Իսկրա»-ի անվան կոլտնտեսության նախագահ, Սոցիալիստական Աշ-
խատանքի Հերոս Ջ. Յակուբովը պատմեց բերքահավաքից հետո խոզանի
վրա եգիպտացորենի ցանք կատարելու իրենց փորձի մասին և նշեց, որ դրա-
նից ստացվող կանաչ մասսան օգտագործվում է սիլոսի համար։ Պատվիրա-
կությունը եղավ նաև Տաշ Սալահլի կոլտնտեսությունում, ուսումնասիրեց կո-
վարուծական ֆերմայի աշխատանքի առաջավոր փորձը։ Եվ դա իր արդյունքը
տվեց։ Ղազախի շրջանի առաջավոր կոլտնտեսությունների փորձի հիման վրա
անցյալ տարի մեզ մոտ առաջին անգամ ՄՏ կայանը քառակուսի-բնային
եղանակով կատարեց 170 հեկտար եգիպտացորենի ցանքի և մշակության
աշխատանքները, իսկ Ն. Աղդանի կոլտնտեսությունը բերքահավաքից հետո
խոզանի վրա կատարեց 15 հեկտար եգիպտացորենի ցանք, որը հիանալի
արդյունք տվեց։

Մեծ նշանակություն ունեցավ նաև մեր մրցակից բարեկամների պատ-
վիրակության այցը մեզ։ Նրանք նույնպես քիչ բան չընդօրինակեցին մեր
կոլտնտեսությունների աշխատանքի առաջավոր փորձից։ Նրանք առանձնապես
գոհ մնացին Աչաջուր գյուղի կոլտնտեսականների աշխատանքից, որոնք ագ-
րոտեխնիկական բարձր կուլտուրայով են կատարում վարը, ցանքը և բերքա-
հավաքը։ Մինչև 1950 թվականը Աչաջրում հացահատիկային կուլտուրաների
բերքատվությունը հեկտարից 5—7 ցենտներից չէր անցնում։ Սերմացուն վա-
րակված էր մրիկով։ Չնայած եղած հնարավորություններին՝ կոլտնտեսության
վարչությունն անբավարար ուշադրություն էր դարձնում նաև այգեգործության
զարգացման վրա։ Մի քանի տարի առաջ Հայկ. ՍՍՌ Գյուղատնտեսության
մինիստրությունն այստեղ աշխատանքի ուղարկեց ագրոնոմ ընկ. Տ. Մհեր-
յանին։ Առաջին իսկ օրից պարտիական կազմակերպությունը հոգատար վե-
րաբերմունք ունեցավ նրա նկատմամբ։ Ընկ. Մհերյանը՝ բերքատվության
բարձրացման, այգեգործության զարգացման հեռանկարների և այլ հարցերի
մասին կոլտնտեսականների համար կազմակերպեց բազմաթիվ դասախոսու-

թյուններ։ Պարտիական կազմակերպության և կոլտնտեսության վարչության ձեռնարկած մի շարք միջոցառումների՝ առաջավոր փորձի մասսայականացման և արմատավորման, ցանքատարածությունների լավագույն մշակման, քիմիական, տեղական պարարտանյութերի և «ալթիաղաջ» ցորենի սերմացուի օգտագործման, բերքահավաքը սեղմ ժամկետում և անկորուստ կատարելու շնորհիվ վերջին տարիների ընթացքում պատկերը բոլորովին փոխվել է։ Այժմ Աչաջրի կոլտնտեսությունը դարձել է ռեսպուբլիկայի լավագույն սերմնաբուծական կոլտնտեսություններից մեկը և մշակում է 557 հեկտար ցորենի ցանքադաշտ։ Անցյալ տարի հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը հասավ 1958 թվականի համար սահմանված մակարդակին։ Ավելի բարձր ցուցանիշներ ունեցան ընկ. Լ. Ալիխանյանի և Հ. Ղալթախչյանի ղեկավարած բրիգադները, որոնք հեկտարից ապահովեցին 18—20 ցենտներ հացահատիկի բերք։ Կոլտնտեսությունն ունի 45 հեկտար խաղողի այգի։ Անցյալ տարի կոլտնտեսությունն իր 1,5 հեկտար տնկարանից 250 հազար ռուբլու եկամուտ ստացավ։

Առաջավորների փորձը լայն տարածում է գտել նաև անասնաբուծության մեջ։

Շրջանի պարտիական կազմակերպությունների նախաձեռնությամբ կոլտնտեսություններում սիստեմատիկ կերպով կազմակերպվում են առաջավոր անասնապահների ելույթները իրենց փորձի մասին։ Այսպես, օրինակ, Թալայի կոլտնտեսության կովաբուծական ֆերմայի վարիչ Հ. Ալիբեկյանը եղել է մի շարք կոլտնտեսությունների ֆերմաներում և անասնապահներին պատմել է իր և ֆերմայի անասնապահների աշխատանքային փորձը, որը տվել է իր դրական արդյունքը։ Անասունների լավագույն խնամքի ու կերակրման, զոոանասնաբուժական կանոնների կիրառման, ֆերմաները բարեխիղճ կադրերով կոմպլեկտավորելու և առաջավոր փորձի կիրառման շնորհիվ 1956 թվականին Ենոքավանի, Թալայի, Հախկլուի, Խաշթառակի կոլտնտեսությունները կատարեցին 1960 թվականի համար նախատեսված կաթի արտադրության առաջադրանքը։

Կաթի արտադրության ավելացման տեսակետից հատկանշական է Ջողազի կոլտնտեսության փորձը։ Եթե մի քանի տարի առաջ ֆուրաժային կովից կոլտնտեսությունը ստանում էր 600—700 կիլոգրամ կաթ, ապա անցյալ տարի ստացավ 1350 կիլոգրամ, իսկ 1957 թվականի փետրվարի 1-ի դրությամբ՝ կաթի արտադրությամբ շրջանում գրավեց երկրորդ տեղը։ Առաջավոր փորձի պրոպագանդման և անասունների ցեղի բարելավման ուղղությամբ խրախուսելի աշխատանք են կատարում զոոտեխնիկներ Ս. Վարդիկյանը, Վ. Խաչատրյանը և Ս. Դավթյանը։ Նրանց խորհրդով և կոլտնտեսությունների ձեռնարկած միջոցառումների շնորհիվ վերջին 4—5 տարիների ընթացքում բուծվում են սովետական մերինոս ցեղի ոչխարներ։ Այժմ շրջանի ոչխարների գլխաքանակի 75 տոկոսից ավելին խառնածիններ են։ Կույբիշևի կոլտնտեսությունն անցյալ տարի պետությանը հանձնեց 200 ցենտներ նուրբ և կիսանուրբ բուրդ, որի դիմաց 600.891 ռուբլու դրամական եկամուտ ստացավ։

Գիտության և առաջավոր փորձի ընդհանրացման նպատակով շրջանում կազմակերպվել է գյուղատնտեսության ղեկավար կադրերի մշտական գործող սեմինար։ Սեմինարի պարբերաբար հրավիրվող պարապմունքներին մասնակցում են կոլտնտեսությունների նախագահները, ՄՏ կայանի և կոլտնտեսու-



թյունների մասնագետները և այլն։ Սեմինարում զեկուցումներով հանդես են եկել դոկտոր-պրոֆեսոր Ա. Մարուխյանը՝ «Կոլտնտեսային արտադրության ինքնարժեքի իջեցման ուղիների մասին» թեմայով, գյուղատնտեսական գիտությունների թեկնածուներ՝ Ալ. Երիցյանը՝ «Անասնաբուծության զարգացման առաջավոր փորձը ՍՍՌՄ-ում և մեր ռեսպուբլիկայում», Ռ. Երգեսյանը՝ «Այգեգործության զարգացման հեռանկարները Իջևանի շրջանում», Մ. Գևորգյանը՝ «Գյուղատնտեսության արտադրության պլանավորումը», Հ. Ղուշչյանը՝ «Կոլտնտեսությունների և ՄՏ կայանի տնտեսական գործունեության վերլուծությունը» թեմաներով։

Աչաջրի, Ուզունթալայի, Սևքարի, Խաշթառակի, Ն. Աղդանի, Ջողազի պարտիական կազմակերպությունների նախաձեռնությամբ կոլտնտեսականների համար գյուղատնտեսական մի շարք թեմաների շուրջը կազմակերպվել են զրույց-զեկուցումներ։ Զեկուցումներով հանդես են եկել ՄՏ կայանի և կոլտնտեսությունների ագրոնոմներ, զոոտեխնիկներ և այլ մասնագետներ։

Գիտության և առաջավոր փորձի պրոպագանդումը և արմատավորումը լուրջ դեր խաղաց տնտեսապես ետ մնացող կոլտնտեսությունների արտադրության բարձրացման գործում։ Այսպես, օրինակ, Սարի գյուղի կոլտնտեսությունը կիրառելով հարևան գյուղերի առաջավոր փորձը, նույնիսկ ամենաանբարենպաստ տարիներին, զգալի չափով գերակատարել է ծխախոտի հումքի հանձնման առաջադրանքը։ Այս նույն կոլտնտեսությունում Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ Ջ. Աթաբեկյանի, Հ. Մադաթյանի, Ս. Մկրտումյանի, Ն. Ելլարյանի ծխախոտագործական օղակները հումքի հանձնման պլանը յուրաքանչյուր տարի կատարում են 150—200 տոկոսով։ Դրանց օրինակով են աշխատում Ուզունթալայի կոլտնտեսության ծխախոտի բարձր բերքի վարպետներ Ս. Ղուկասյանը, Ա. Ամիրջանյանը և ուրիշները։

Օրինակ՝ Ուզունթալայի կոլտնտեսության ընկ. Ս. Ղուկասյանի ղեկավարած բրիգադան մշակում է 16,6 հեկտար ծխախոտի պլանտացիա։ Բրիգադան 1956 թվականի հումքի պլանը կատարեց 136 տոկոսով և յուրաքանչյուր հեկտարից ստացավ 32.050 ռուբլու եկամուտ։

Հավաքներում, հրապարակվող բյուլետեններում և ցուցադրական ագիտացիայի այլ միջոցներով միշտ խրախուսվում ու ընդհանրացվում է բարձր բերքի վարպետների առաջավոր փորձը, կոնկրետ միջոցներ են ձեռնարկվում այն մյուս կոլտնտեսություններում արմատավորելու համար։ Այս նպատակով Ն. Աղդանի, Լուսաձորի, Ջողազի պարտիական կազմակերպությունները ձեռնամուխ եղան մոտիկից ուսումնասիրելու այդ փորձը, պատվիրակություններ ուղարկեցին Սարի գյուղի, Ուզունթալայի, Ռևազլուի կոլտնտեսությունները, մոտիկից ծանոթացան ծխախոտի ջերմոցային տնտեսության կազմակերպման, պլանտացիաների սածիլացման, պարարտացման, մշակության, տերևաքաղի, չորացման ու հակավորման աշխատանքներին, լսեցին բարձր բերքի վարպետների խորհուրդները։ Այդ ամենը, իրոք, կարևոր նշանակություն ունեցավ։ Անցյալ տարի Ն. Աղդանի կոլտնտեսությունը ծխախոտի հումքի հանձնման պլանը կատարեց 105 տոկոսով, Լուսաձորինը՝ 134,5 և Ջողազի կոլտնտեսությունը՝ 116 տոկոսով։ Բարձր ցուցանիշների հասան Ժ. Հարությունյանի և Հ. Գասպարյանի օղակները (Ջողազ), որոնք պետությանը հանձնեցին բացառապես բարձր տեսակի ծխախոտ, յուրաքանչյուր հեկտարից ստանալով 24.000 ռուբլու դրամական եկամուտ։ Նշված կոլտնտեսությունները

*1956 թվականին հացահատիկային կուլտուրաների ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացան 13—15 ցենտներ միջին բերք։*

*Իջևանի շրջանի կոլտնտեսություններում լայն հեռանկարներ կան խաղողի և պտղատու այգիների զարգացման համար։ Կոլտնտեսություններում մեկ հեկտարից ստացած միջին եկամուտը եթե 1954 թ. կազմել է 11.366 ռուբլի, որից 5.365 ռուբլին, կամ 47,21 տոկոսը՝ այգեգործությունից և պտղաբուծությունից, ապա 1955 թվականին այն հասել է 12.198 ռուբլու, որի մեջ այգեգործության և պտղաբուծության բաժինը կազմել է 5.636 ռուբլի։ Այգեգործությունից և պտղաբուծությունից ստացված եկամուտը ավելի բարձր էր 1956 թվականին։*

*Գիտության և առաջավոր փորձի մասսայականացման և արմատավորման տեսակետից ուշագրավ է Սարի գյուղի և Ուզունթալայի կոլտնտեսությունների փորձը։ Մոտ տասը տարի առաջ, երբ Հայկական ՍՍՌ այգեգործական-գինեգործական-պտղաբուծական ինստիտուտի ավագ գիտական աշխատող Ռ. Երգեսյանը եղավ Սարի գյուղում և հայտնեց, որ կոլտնտեսությունում պետք է խաղողի այգի տնկել, զարմանք առաջացրեց կոլտնտեսականների մեջ և հանդիպեց նրանց խիստ դիմադրությանը։ Եվ իրոք, Սարի գյուղը ջրազուրկ է։ Այդտեղ գյուղացին իր կյանքում տանձի, խնձորի ծառ չի ունեցել, ուր մնաց՝ խաղողի այգի... Սակայն, Ռ. Երգեսյանը գիտնականի իր համառությամբ կոլտնտեսականներին բացատրեց և փորձով համոզեց, որ անջրդի պայմաններում նույնպես հնարավոր է ունենալ հիանալի այգիներ։ Նրա նախաձեռնությամբ 1947 թվականին տնկվեց մեկ հեկտար խաղողի այգի, իսկ երկրորդ տարին՝ ևս երկու հեկտար։ Այդպիսի փորձեր արվեցին նաև Ուզունթալայի կոլտնտեսությունում։ Այժմ Սարի գյուղի և Ուզունթալայի կոլտնտեսություններն ունեն տասնյակ հեկտար խաղողի այգիներ։ Նրանք անջրդի պայմաններում մեկ հեկտարից 100—150 ցենտներ բերք են ստանում։ Համեմատելով Ուզունթալայի Կիրովի անվան կոլտնտեսությունում տարբեր կուլտուրաների մեկ հեկտարից ստացած եկամուտները, տեսնում ենք հետևյալ պատկերը. խաղողի այգու մեկ հեկտարից ստացած եկամուտը հացահատիկի ցանքատարածությունների մեկ հեկտարից ստացած եկամտի համեմատությամբ ավելի է 11.767 ռուբլով, պտղաբուծության համեմատությամբ՝ 10.754 ռուբլով, կարտոֆիլի՝ 8.527 ռուբլով, բանջարաբոստանային կուլտուրաների՝ 4.791 ռուբլով։ Եթե հացահատիկի ստացման վրա ծախսված մեկ աշխօրի դիմաց 1955 թվականին ստացվել է 16,4 ռուբլի եկամուտ, կարտոֆիլինը՝ 52,4, ծխախոտինը՝ 22,4 ռուբլի, բանջարաբոստանային կուլտուրաներինը՝ 70,2 ռուբլի, ապա խաղողի ստացման վրա ծախսված մեկ աշխօրի դիմաց ստացվել է 117,9 ռուբլու եկամուտ։*

*ՀԿՊ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի որոշմամբ առաջիկայում այգեգործությունը զգալի չափով պետք է ընդարձակվի ռեսպուբլիկայի հյուսիս-արևելյան շրջաններում։ Վեցերորդ հնգամյակի ընթացքում նախատեսված է Իջևանի շրջանում տնկել 300 հեկտար նոր այգի, իսկ հետագայում հնարավոր է այն հասցնել մինչև 800—1000 հեկտարի։*

*Սարի գյուղի և Ուզունթալայի կոլտնտեսությունների այգեգործության զարգացման փորձի հիման վրա ներկայումս Լալի գյուղի, Ռևազլուի, Աչաջրի, Սևքարի, Ն. Աղդանի, Լուսաձորի, Խաշթառակի, Թալայի, Գետաշենի, Ծաղկավանի պարտիական կազմակերպությունները և կոլտնտեսությունների*



*վարչությունները եռանդուն աշխատանք են կատարում այգեգործության զարգացման ուղղությամբ։*

*Գիտության և առաջավոր փորձի մասսայականացման ու արմատավորման գործում կարևոր դեր է կատարում շրջանային մամուլը։ «Իջևանի կոլտնտեսական» շրջանային թերթի էջերում հաճախակի հանդես են գալիս ՄՏ կայանի գլխավոր ագրոնոմ Մ. Աթանեսյանը, զոոտեխնիկ Վ. Վարթիկյանը, կոլտնտեսությունների նախագահներ, բարձր բերքի վարպետներ, առաջավոր անասնապահներ և ուրիշներ, որոնք մատչելիորեն պատմում են իրենց փորձը և անում կոնկրետ առաջարկություններ։ Օրինակ՝ 1957 թվականի փետրվարին գյուղատնտեսության առաջավորների շրջանային հավաքում, որտեղ քննության առնվեց ՄՏ կայանի գոտու գծով շրջկոմի քարտուղար ընկ. Ի. Էլլարյանի զեկուցումը «1956 թվականի տնտեսական տարվա արդյունքների և 1957 թվականի խնդիրների մասին», Տ. Մհերյանը, Մ. Աթանեսյանը հարց բարձրացրին, որ շրջանի ցածրադիր գոտու կոլտնտեսություններում անհրաժեշտ է զարգացնել առվույտը, իսկ միջին գոտու կոլտնտեսություններում ցանել կտավհատ։ Նրանք առաջարկեցին ցածրադիր կոլտնտեսություններում վերականգնել «զարդա» ցորենի տեսակը, որը բարձր բերք է տալիս։ «Իջևանի կոլտնտեսական»-ը արձագանքեց այս և նման մի շարք այլ կարևոր առաջարկությունների, որոնք հավանության արժանացան շրջանի աշխատավորության կողմից։ «Իջևանի կոլտնտեսական»-ը հաճախակի է լուսաբանում սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը, խրախուսում է առաջավորներին, բացահայտում գոյություն ունեցող թերությունները։*

*Վեցերորդ հնգամյա պլանի համաձայն, Իջևանի շրջանում հացահատիկի արտադրությունը 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ պետք է ավելանա մոտ 1,5 անգամ, միսինը՝ 2,1, կաթինը՝ 2, բրդինը՝ 1,8, ձվինը՝ 2 անգամ, ոռոգելի տարածությունները պետք է ընդարձակվեն ավելի քան 1000 հեկտարով։ Այդ ամենը կարելի է հաջողությամբ լուծել առաջին հերթին գիտության և առաջավոր փորձի ուսումնասիրման և արմատավորման միջոցով։*

*Սակայն, դժբախտաբար, ո՛չ բոլոր պարտիական կազմակերպություններն են, որ անհրաժեշտ ուշադրություն են դարձնում առաջավոր փորձի տարածմանը և արմատավորմանը։ Օրինակ, Վ. Աղդանի և Խաշթառակի կոլտնտեսությունները գտնվում են հողակլիմայական միևնույն պայմաններում։ Եթե Խաշթառակի կոլտնտեսությունը 55 հեկտար կարտոֆիլի ցանքատարածության վրա յուրաքանչյուր հեկտարից ստացել է 112 ցենտներ, իսկ Ա. Մովսիսյանի, Կ. Փարսադանյանի օղակները ստացել են 160—175 ցենտներ կարտոֆիլի միջին բերք, ապա Վ. Աղդանի կոլտնտեսությունը հեկտարից ստացել է 53 ցենտներ կարտոֆիլ։ Եթե Խաշթառակի կոլտնտեսությունը ֆուրաժային կովից ստացել է 1314 կիլոգրամ կաթ, ապա Վ. Աղդանի կոլտնտեսությունն ստացել է 955 կիլոգրամ։ Գիտության և առաջավոր փորձի ընդհանրացման ու արմատավորման գործին անբավարար ուշադրություն են դարձնում նաև Սևքարի, Ծաղկավանի, Շամախյանի, Գոշի, Փոլադի պարտիական կազմակերպությունները։*

*Գիտության և առաջավոր փորձի արմատավորման գործում լուրջ խնդիր-*

ներ ունի նաև ՄՏ կայանը։ Ճիշտ է, այս ուղղությամբ վերջին տարիների ըն-
թացքում քիչ աշխատանք չի կատարվել, սակայն, մինչև այժմ ՄՏ կայանի
մեխանիզատորները չեն կարողացել լուծել ծխախոտի, եգիպտացորենի, կար-
տոֆիլի միջշարային մշակության, բնական խոտհարքների հնձի մեքենայաց-
ման հարցը։ Ո՛չ բոլոր մեխանիզատորներն են, որ լավ են տիրապետում
իրենց գործի տեխնիկային, հողի մշակության եղանակներին, որի հետևանքով
երբեմն ցածր է լինում գյուղատնտեսական մեքենաների արտադրողակա-
նությունը։

***

Գիտության և առաջավոր փորձի ուսումնասիրումը և արմատավորումը
կարևոր նշանակություն ունի նաև արդյունաբերության մեջ, որը շրջանի էկո-
նոմիկայում լուրջ տեղ ունի։ Իջևանի և Սևքարի անտառային արդյունաբե-
րության տնտեսությունները, Իջևանի փայտամշակման գործարանը, ծխախո-
տի ֆերմենտացիոն գործարանը, Դիլիջանի կահույքի ֆաբրիկան, տեղարդ-
կոմբինատները, Իջևանգէսը, հանքային ջրերի գործարանը, Դիլիջանի ու
Իջևանի անտառային տնտեսությունները և մի շարք արտելներ երկրին տալիս
են շուրջ 65 միլիոն ռուբլու արտադրանք։ Այդ ձեռնարկություններից շատերը
հագեցված են հայրենական, ինչպես նաև արտասահմանյան երկրներից
ստացված մի շարք բարդ սարքավորումներով և տեխնիկայով։

Իջևանի փայտամշակման գործարանը երկրին տալիս է մոտ 10,5 միլիոն
ռուբլու արտադրանք։ Գործարանի կոլեկտիվն անցյալ տարի պլանը կատա-
րեց 106,7 տոկոսով։ Գործարանն արտադրում է հիանալի ֆաներա, որը կազ-
մում է Միության մեջ արտադրվող ամբողջ ֆաներայի 12.տոկոսը, պարկետ,
Ռոստովի Սելմաշգործարանի կոմբայնների արտադրության համար մի շարք
կարևոր մասեր, կահույք։

Գործարանը, որն արտադրում է 3 միլիոն 206 հազար քառակուսի մետր
ֆաներա, մատակարարում է Սարատովի, Ստալինգրադի, Մոսկվայի, Լենին-
գրադի կահույքի ֆաբրիկաներին։ Ֆաներայի ցեխի վարիչ ընկ. Կ. Ճաղար-
յանը, որը 1955 թվականի իր արտադրական պրակտիկան անց է կացրել
Լենինգրադի ցուցադրական անտառային կոմբինատում, շատ բան է ընդօրի-
նակել այնտեղից։ Նրա ռացիոնալիզատորական առաջարկությամբ ֆաներայի
դազգահի արտադրողականությունը բարձրացել է կրկնակի չափով։ Կտրող
դանակի փոխելը, եթե առաջ կատարվում էր 6—7 ժամվա ընթացքում, ապա
այժմ կատարվում է 45—50 րոպեում։

Գործարանն արտադրում է նաև պարկետ, որի տարեկան պլանը կազմում
է 15.000 քառակուսի մետր։

Սակայն արտադրվող պարկետի մի մասը մինչև անցյալ տարի ցածրո-
րակ էր։ Գործարանի պարտիական կազմակերպությունը քննության առնելով
այդ հարցը՝ որոշում ընդունեց ուսումնասիրել և արմատավորել պարկետի
արտադրության Միության առաջավոր գործարանների փորձը։ Այդ նպատակով
1956 թվականի սկզբներին ցեխի վարիչ Ա. Իսախանյանը, հաստոցների վար-
պետներ՝ Վ. Դավթյանը, Ս. Իսրայելյանը մեկ ամիս եղան Մայկոպի պարկետի
արտադրության կոմբինատում, մոտիկից ծանոթացան պարկետի արտադրու-
թյան տեխնիկային։ Հետագայում, Մայկոպի կոմբինատի փորձի հիման վրա,
նրանց առաջարկությամբ տեղադրվեցին նոր ձևի կտրող դազգահներ, կա-



տարվեցին այլ տեխնիկական փոփոխություններ, որի շնորհիվ արտադրանքի
որակը բարձրացավ։ Դրա շնորհիվ գործարանը նախատեսված 3 միլիոն
50.000 ռուբլու դիմաց անցյալ տարի 3 միլիոն 670.000 ռուբլի օգուտ
ունեցավ։

Շրջանի խոշոր արտադրական ձեռնարկություններից է նաև Իջևանի ան-
տառային արդյունաբերության տնտեսությունը, որը հագեցված է հարուստ
տեխնիկայով։ Սակայն, եղած տեխնիկան լիովին չէր օգտագործվում,
տնտեսությունն ամեն տարի թերակատարում էր իր տարեկան պլանները։
Պարտիական կազմակերպությունը դեռ անցյալ տարվա սկզբին անդրադար-
ձավ այդ հարցին։ Կազմակերպությունը մի շարք գործնական միջոցառում-
ների հետ միասին որոշում ընդունեց՝ լայնորեն արմատավորել Միության
առաջավոր անտառային արդյունաբերության ձեռնարկությունների աշխա-
տանքի փորձը։ Գլխավոր մեխանիկ Լ. Բաղալյանը, ինժեներ Ա. Կրյուչկով-
սկին, մեխանիկ Ս. Սարհատյանը գործուղվեցին Լենինգրադ՝ երեք ամսյա
դասընթացներում սովորելու։ Նրանց վերադարձից հետո արտադրության մեջ
զգալի փոփոխություններ կատարվեցին։ Առանց արտադրությունից կտրվելու,
հենց արտադրության պրոցեսում պատրաստվեցին 12 էլեկտրասղոցավարներ։
Անտառում ճանապարհաշինարարության համար գործի դրվեց կոմպրեսորը,
որը փոխարինում էր 100—120 մարդու, և բուլդոզեր մեքենաները։ Անտառի
ռելեֆի թեք պայմանների պատճառով տրակտորները հաճախակի շարքից
դուրս էին գալիս։ Մեխանիկ Գ. Ամիրյանի առաջարկությամբ տրակտորների
վրա դրվեցին հատուկ հարմարանքներ, որի շնորհիվ մեծ չափով բարձրացավ
տրակտորների դիմացկունությունը։ Մեքենայացվեց նաև վառելափայտի չար-
դումը և գերանի բարձումը։ Այս բոլորի շնորհիվ աշխատանքի արտադրողա-
կանությունը բարձրացավ։ Իջևանի անտառային արդյունաբերության տնտե-
սությունը 1956 թվականին իր տարեկան պլանը համախառն արտադրանքի
գծով կատարեց 105,4 տոկոսով։

Իջևանի անտառային արդյունաբերության տնտեսության կոլեկտիվը,
ամփոփելով 1956 թվականի արդյունքները, կոչ է արել ռեսպուբլիկայի ան-
տառային արդյունաբերության բոլոր ձեռնարկությունների աշխատողներին՝
ի պատիվ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարե-
դարձի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը, մոբիլիզացնել բոլոր
ռեզերվները և հնարավորությունները՝ 1957 թվականի պլանները ժամկետից
մեկ ամիս շուտ կատարելու համար։

Պաշտպանելով արտադրության առաջավորների և նորարարների նախա-
ձեռնությունը, արմատավորելով գիտության և առաջավոր փորձի նորագույն
նվաճումները, Իջևանի շրջանի պարտիական կազմակերպությունները ձգտում
են պատվով կատարելու իրենց առջև դրված խնդիրները։

# ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ԱՆՀԱՄԱՉԱՓ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

*Վ. ԱՂՈՒՋՈՒՄՅԱՆ*

*Կապիտալիզմը արտադրության միջոցների մասնավոր սեփականության
վրա հիմնված շահագործողական վերջին արտադրաեղանակն է։ Այն հանդի-
սանում է արտադրողական ուժերի ու արտադրական հարաբերությունների
զարգացման նոր, ավելի բարձր աստիճան՝ նախորդ ֆորմացիաների համե-
մատությամբ. կապիտալիզմը ամենազարգացած, մասնավոր ապրանքային
արտադրությունն է, որտեղ ապրանք են արտադրության բոլոր միջոց-
ները, արդյունքները և աշխատուժը։ Համապարփակ ապրանքայնությունը և
ծավալուն առք ու վաճառքը օրգանապես բխում են կապիտալիզմի էությունից.
նա անհրաժեշտ պայման է հավելյալ արժեքի յուրացման համար։ Հավելյալ
արժեքի օրենքի գործողությունից բխում է կապիտալիզմի հիմնական հակա-
սությունը՝ հակասությունն արտադրության հասարակական բնույթի և յու-
րացման մասնավոր կապիտալիստական եղանակի միջև։ Սրա կոնկրետ ար-
տահայտության ձևերից մեկն էլ այն հակասությունն է, որ գոյություն ունի
կապիտալիստական առանձին ձեռնարկությունների կազմակերպվածության և
ամբողջ ժողովրդական տնտեսության անարխիկ բնույթի միջև։ Կապիտալիս-
տական ապրանքային արտադրության պայմաններում նոր ուժով ու ծավալով
գործող արժեքի օրենքը, որն ունի համապարփակ բնույթ և տարերայնորեն
կարգավորում է արտադրողական ուժերի տեղաբաշխումը կապիտալիստական
էկոնոմիկայում, միաժամանակ արտադրության անարխիայի ու կոնկուրեն-
ցիայի ելակետն է։*

*Կապիտալիստական էկոնոմիկայում համաչափ զարգացում լինել չի կա-
րող, որովհետև այն հիմնված է արտադրության միջոցների մասնավոր կապի-
տալիստական սեփականության վրա։ Կապիտալիստական էկոնոմիկան իր
զարգացման ընթացքում անցել է երկու մեծ փուլեր՝ մինչմոնոպոլիստական
կապիտալիզմի շրջան, որն ընդգրկում է կապիտալիզմի սկզբից մինչև 19-րդ
դարի վերջին երրորդը և մոնոպոլիստական կապիտալիզմի կամ իմպերիա-
լիզմի ժամանակաշրջան։ Կապիտալիզմի անհամաչափ զարգացման մասին
խոսել են դեռևս Մարքսն ու Էնգելսը, որոնք ապրել ու գործել են արդյունա-
բերական կապիտալիզմի պրոգրեսի ժամանակաշրջանում։ Նշելով, որ դիս-
պրոպորցիան ու անհամաչափությունը հատկանշական է կապիտալիստական
էկոնոմիկայի համար, որը զարգանում է ցիկլերով, պարբերաբար կրկնվող
ճգնաժամերով և օրըստօրե սրվող անտագոնիստական հակասություններով,
մարքսիզմի հիմնադիրները հանգեցին այն եզրակացության, որ պատմության*



*պրոգրեսիվ ընթացքը անհրաժեշտորեն տանում է դեպի կապիտալիզմի ան-
կումը և սոցիալիզմի հաղթանակը։ Սոցիալիստական ռևոլյուցիայի հանճարեղ
առաջնորդ Վ. Ի. Լենինը ելակետ ունենալով Մարքսի-Էնգելսի սկզբունքային
դրույթները, տվեց մոնոպոլիստական կապիտալիզմի հիմնավորված ու անգե-
րազանցելի վերլուծությունը և այդ հիման վրա մշակեց սոցիալիստական ռևո-
լյուցիայի իր ամբողջական թեորիան։ Վ. Ի. Լենինը նշում է, որ կապիտա-
լիզմը մինչև իմպերիալիզմ ունեցել է համեմատաբար սահուն զարգացում,
որի հետևանքով հնարավոր է դարձել կապիտալիստորեն վաղ զարգացած եր-
կրների երկար ժամանակով առաջ անցումը մյուս երկրներից։ Այստեղից էլ
պարզ է, որ այդ ժամանակաշրջանում ավելի ակնհայտ է եղել տնտեսություն-
ների զարգացման մակարդակների տարբերությունը զարգացած ու ետամնաց
երկրների միջև։ Այդ բացատրվում է նրանով, որ կապիտալիզմը դեռ նոր էր
ծավալվում ու հաղթանակում ֆեոդալիզմին, արտադրությունը դեռ մանրատ-
ված էր, բնորոշ ու տիրապետող էր ազատ մրցակցությունը, չկար մոնոպոլիա
և դեռ գոյություն ունեին չգրավված տերիտորիաներ, որոնց հաշվին ծավալ-
վում ու ընդարձակվում էին կապիտալիստորեն զարգացած երկրները՝ առանց
համաշխարհային մասշտաբով ռազմական ընդհարումների։ Այսպես, օրինակ,
հայտնի է, որ Անգլիան 18-րդ դարի արդյունաբերական հեղաշրջման հետե-
վանքով ամենից վաղ ու արագ զարգացավ և ինչպես ընդունված է ասել, դար-
ձավ աշխարհի «ֆաբրիկան»։ Հայտնի է, որ Անգլիան ընդհուպ մինչև 20-րդ
դարի սկիզբը հանդիսանում էր ամենամեծ գաղութատեր երկիրը և քարոզում
էր ազատ առևտրի գաղափարը։ Անգլիայի արդյունաբերության արտադրանքը
մինչև 1860 թվականը ավելի շատ էր, քան Ֆրանսիայի, Գերմանիայի ու
ԱՄՆ-ի արդյունաբերության արտադրանքը միասին վերցրած։ Մինչև 1880
թվականը Անգլիան իր արդյունաբերական արտադրանքի մակարդակով աշ-
խարհում գրավում էր առաջին տեղը, որից հետո հերթականորեն գալիս էին
Ֆրանսիան, Գերմանիան և ապա՝ Ամերիկայի Միացյալ Նահանգները։*

*Ելակետ ունենալով մարքսիստական այն դրույթը, որ կապիտալիզմը ար-
տադրության միջոցների մասնավոր սեփականություն է ու արտադրության
անարխիա զարգացման բարձր աստիճանում, Լենինը գրում է. «Կապիտալիզմի
օրով անհնարին է առանձին տնտեսությունների և առանձին պետությունների
տնտեսական զարգացման համաչափ աճումը։ Կապիտալիզմի օրով, ժամա-
նակ առ ժամանակ, խախտված հավասարակշռությունը վերականգնելու այլ
միջոցներ անհնարին են, քան ճգնաժամերն արդյունաբերության մեջ, պատե-
րազմները քաղաքականության մեջ» (Երկեր, հատ. 21, էջ 434)։*

*Կապիտալիզմի անհամաչափ զարգացումը հատուկ խորություն, սրություն
ու նշանակություն է ստանում իմպերիալիզմի ժամանակաշրջանում։ Իմպե-
րիալիզմը, լինելով կապիտալիզմի զարգացման բարձրագույն ստադիան,
հանդիսանում է նրա բոլոր առանձնահատկությունների շարունակությունը,
երբ նոր ձևով և ավելի սուր են արտահայտվում բուրժուական հասարակարգի
հակասությունները։ Կապիտալիզմի ժամանակ առանձին ձեռնարկություն-
ների, արդյունաբերական առանձին ճյուղերի, առանձին երկրների զարգաց-
ման անհամաչափությունն ու թռիչքաձևությունը դառնում են անխուսափելի։*

*Իմպերիալիզմի օրով կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենքը՝ հա-
վելյալ արժեքի օրենքը արտահայտվում է մոնոպոլ բարձրագույն շահույթի
կոնկրետ ձևով, որին ծառայում է ամբողջ տնտեսական ու քաղաքական մե-*

խանիզմը։ Ահա այս պայմաններումն է, որ տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափությունը դառնում է կապիտալիզմի անպայման օրենքը և սոցիալիզմի հաղթանակը սկզբնապես մի քանի կամ նույնիսկ մեկ առանձին վերցրած կապիտալիստական երկրում՝ դառնում է օրինաչափ անհրաժեշտություն։ Իմպերիալիզմի ժամանակ աշխարհը բաժանված է, և այն վերաբաժանելու հարցը որոշվում է ուժով։ Իսկ ուժերի փոխհարաբերությունը փոփոխվում է տնտեսական զարգացման ընթացքի հետ, անհամաչափ զարգացման օրենքի հիման վրա։ Եթե մինչև 1880 թվականը Անգլիան հանդիսանում էր աշխարհի «ֆաբրիկան», ապա հետագա ժամանակաշրջանում իրադրությունը փոխվեց։ ԱՄՆ-ը 1870 թ. արդյունաբերության արտադրանքի ծավալով գերազանցել էր Ֆրանսիային, 1880 թվականին՝ Անգլիային, իսկ Գերմանիան գերազանցել էր Ֆրանսիային։ 1871 թվականից հետո Գերմանիան Անգլիայից 3—4 անգամով ավելի արագ թափով ուժեղացավ, իսկ նույն ժամանակաշրջանում Ճապոնիան Ռուսաստանից 10 անգամով ավելի արագ ուժեղացավ։

Այսպիսի թռիչքաձև անհամաչափ զարգացումը նախ հետևանք է այն բանի, որ աշխարհի բաժանումն ավարտված է, կապիտալը թափանցել է բոլոր անկյունները և մոնոպոլիայի տիրապետման պայմաններում ոմանց զարգացումը արագ է տեղի ունենում, իսկ ոմանցն էլ՝ դանդաղ, և երկրորդ, տեխնիկայի բարձր զարգացման ներկա մակարդակը հնարավոր է դարձնում ետ մնացող երկրների արագ առաջընթացը, և նրանք կարճ ժամանակում առաջ են անցնում այսպես կոչված՝ առաջավոր երկրներից։ Այս բանին նպաստում է նաև այն, որ ավելի դյուրին ու շահավետ է առաջավոր տեխնիկայի հիման վրա նոր առաջընթացը, քան թե մասսայաբար հին տեխնիկայով զինված կապիտալիստական արտադրության վերափոխումն ու նոր տեխնիկայով հագեցումը, որը զգալի կորուստներ է պատճառում սեփականատերերին. հանրահայտ ճշմարտություն է, որ կապիտալիստները նոր տեխնիկան գործադրում են այն ժամանակ, երբ նա ոչ միայն փոխհատուցում է շարքից դուրս եկած, բարոյապես մաշված արտադրամիջոցների արժեքը, այլև ապահովում է բարձրագույն շահույթներ։ Հակառակ պարագայում տեխնիկական պրոգրեսի համար ստեղծվում են բազմաթիվ արհեստական արգելքներ, ընդհուպ մինչև նոր գյուտերի պատենտները մահուդի տակ թաքցնելը։

Կապիտալիստական երկրների արդյունաբերության զանազան ճյուղերի զարգացման անհամաչափությունը երևում է ներքոհիշյալ աղյուսակից. տվյալները բերված են տոկոսներով, ըստ որում 1913 թվականի տվյալներում չեն արտահայտված Ռուսաստանի ցուցանիշները, իսկ մնացած տարեթվերում չկան ժողովրդական դեմոկրատիայի երկրների տվյալները.

| Ճյուղեր | 1913 թ. | 1929 թ. | 1939 թ. | 1948 թ. |
|---|---|---|---|---|
| Արհեստական մետաքս ու թել | 100 | 1218 | 6237 | 6339 |
| Ալյումին | 100 | 420 | 961 | 1757 |
| Նավթ | 100 | 429 | 570 | 1000 |
| Չուգուն | 100 | 126 | 114 | 135 |
| Բամբակ | 100 | 106 | 115 | 115 |
| Ածուխ | 100 | 103 | 94 | 99 |



Աղյուսակից երևում է, որ

1. Արտադրության տարբեր ճյուղեր անհամաչափ են զարգանում. 1948 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, արհեստական մետաքսի ու թելի արտադրությունը զարգացել է ավելի քան 63 անգամով, իսկ ածխի արտադրությունը դոփել է նույն մակարդակի վրա։

2. Ավելի արագ են զարգանում արտադրության նոր ու շահավետ ճյուղերը. ալյումինի արտադրանքը նույն ժամանակամիջոցում աճել է 17,5 անգամով, իսկ չուգունի արտադրանքը՝ 35 տոկոսով։

3. Արագ են աճում նաև ռազմաստրատեգիական առաջնահերթ նշանակություն ունեցող ճյուղերը. նավթի արդյունահանությունը՝ 10 անգամով, իսկ բամբակի արտադրությունը՝ ընդամենը 15 տոկոսով։ Նույն օրինաչափությունը հանդես է գալիս կապիտալիստական էկոնոմիկայի զարգացման վերջին շրջանում, որը երևում է հետևյալ աղյուսակից.

| Արտադրանքի տեսակները | Միլիոն տոննաներով 1951 թ. | Միլիոն տոննաներով 1955 թ. | 1955 թ. տոկոսներով 1951 թ. համեմատութ |
|---|---|---|---|
| Ածուխ | 1150 | 1097 | 95,2 |
| Նավթ | 542 | 683 | 124,2 |
| Չուգուն | 121 | 142 | 117,4 |
| Պողպատ | 170 | 202 | 119 |
| Ալյումին | 1,6 | 2,6 | 162,5 |

Իմպերիալիզմի ժամանակ անհամաչափ զարգացման սրումը և ուժերի փոխհարաբերության տեղաշարժերը երևում են համաշխարհային արտադրության մեջ տարբեր երկրների տեսակարար կշռի փոփոխություններում։ Վերցնենք պողպատի և ալյումինի համաշխարհային արտադրանքում տարբեր երկրների արտադրանքի տեսակարար կշիռը տոկոսներով.

Պ ո ղ պ ա տ

| Տարիներ | ԱՄՆ | Անգլիա | Գերմանիա | Ճապոնիա | Կանադա | Այլք |
|---|---|---|---|---|---|---|
| 1913 | 41,5 | 10,1 | 24,7 | 0,3 | — | 23,4 |
| 1939 | 40,2 | 11,2 | 19,9 | 5,6 | — | 23,1 |
| 1946 | 63,7 | 13,6 | 3,6 | 0,6 | — | 19,1 |
| 1950 | 57,2 | 10,8 | 9,1 | 3,1 | — | 19,8 |
| **Ա լ յ ո ւ մ ի ն** | | | | | | |
| 1913 | 32,5 | 11,8 | 1,5 | — | 9,2 | 45 |
| 1939 | 23,4 | 4,0 | 30,8 | — | 11,9 | 29,9 |
| 1946 | 53,8 | 4,6 | 0,6 | — | 25,5 | 16,1 |
| 1950 | 51,1 | 2,4 | 2,2 | — | 28,2 | 16,1 |

Աղյուսակի վերլուծումը ցույց է տալիս, որ պողպատի համաշխարհային արտադրության մեջ 1913—46 թթ. ԱՄՆ-ի արտադրանքի տեսակարար կշիռը ավելացել է 22,7 տոկոսով, իսկ 1946—50 թթ. ընթացքում պակասել է 6,5 տոկոսով։ Անգլիան փաստորեն դոփել է իր տեղում։ Գերմանիան երկու համաշխարհային պատերազմներում պարտվելու հետևանքով ապրել է անկում, սակայն, 1950 թվականին, 1946 թվականի համեմատությամբ, աճել է արագ— 5,5 տոկոսով և իր գրաված տեսակարար կշռով շատ քիչ է ետ մնում Անգլիայից (1946 և 1950 թթ. տվյալները վերաբերում են միայն Արևմտյան Գերմա-

նիային)։ Ակնհայտ է, որ արագ աճ ունի Ճապոնիան, որի պողպատի արտա-
դրանքի տեսակարար կշիռը համաշխարհային կապիտալիստական արտա-
դրության մեջ 1950 թվականին 1946 թվականի համեմատությամբ աճել է 5
անգամով և մոտեցել է նախապատերազմյան մակարդակին։ Ակնհայտ է նաև,
որ պողպատի համաշխարհային կապիտալիստական արտադրանքում ԱՄՆ-ը
ունի բացարձակ տիրապետող դիրք։ Ալյումինի համաշխարհային կապիտա-
լիստական արտադրանքում նույն ժամանակամիջոցում ԱՄՆ-ի արտադրանքի
տեսակարար կշիռը աճել է 21,3 տոկոսով, Կանադայինը՝ 19 տոկոսով, իսկ
1946—1950 թվականների ընթացքում ԱՄՆ-ի արտադրանքի տեսակարար
կշիռը միջազգային արտադրանքում պակասել է 2,7 տոկոսով։ Անգլիայի ալ-
յումինի արտադրանքի տեսակարար կշիռը համաշխարհային կապիտալիստա-
կան արտադրանքում 1913 թվականի համեմատությամբ 1946 թվականին ըն-
կել է 7,2 տոկոսով, 1950 թվականին՝ 9,4 տոկոսով, իսկ դրան հակադիր՝
Արևմտյան Գերմանիայի ալյումինի արտադրության տեսակարար կշիռը հա-
մաշխարհային արտադրանքում 1946 թվականի 0,6 տոկոսից, 1950 թվակա-
նին հասել է 2,2 տոկոսի, ավելանալով 3,5 անգամով։ Այստեղ ևս երևում է
ալյումինի համաշխարհային կապիտալիստական արտադրանքում ԱՄՆ-ի և
Կանադայի թելադրող դերը։

Պարզ երևում է, որ Գերմանիայի ու Ճապոնիայի արտադրանքի տե-
սակարար կշիռը համաշխարհային արտադրանքում երկրորդ համաշխարհային
պատերազմի նախօրյակին զգալի բարձր է եղել, և նրանք հանդիսացել են
ԱՄՆ-ի ու Անգլիայի վտանգավոր հակառակորդները վաճառահանման շուկա-
ների ու կապիտալի արտահանման սֆերաների համար մղվող պայքարում։
Ինչպես երևում է աղյուսակից, Գերմանիայի ու Ճապոնիայի արտադրանքի
տեսակարար կշիռը 1947 թվականին նորից սկսել է արագորեն բարձրանալ։

Վերոհիշյալ փաստերը ցույց են տալիս, որ կապիտալիստական ոչ մի
երկրում, տնտեսության ոչ մի ճյուղում համաչափ զարգացում չկա և չի կարող
լինել, որ կապիտալիզմը չի կարող այլ կերպ զարգանալ, քան թռիչքներով,
զիգզագներով, մերթ արագընթաց քայլելով առաջ, մերթ նախկին մակարդակից
ժամանակավորապես ցած ընկնելով։

Կապիտալիստական տարբեր երկրների զարգացման անհամաչափու-
թյունը բացահայտելու համար վերցնենք ածխի, չուգունի և պողպատի արտա-
դրանքի աճի ցուցանիշները 1850 թվականից մինչև 1955 թվականը կապիտա-
լիստական չորս մեծ երկրներում. արտադրանքը աղյուսակում բերված է մի-
լիոն տոններով։

| Տարիներ | ԱՄՆ | | | Անգլիա | | | Ֆրանսիա | | | Գերմանիա | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | արտադրանքը | | | արտադրանքը | | | արտադրանքը | | | արտադրանքը | | |
| 1850 | 6,3 | 0,6 | 0,7 | 49 | 2,2 | 0,2 | 4,4 | 0,4 | 0,08 | 6,7 | 0,2 | 0,2 |
| 1900 | 240,8 | 13,8 | 10,2 | 225 | 9,0 | 4,9 | 33,4 | 2,7 | 1,6 | 149,8 | 8,5 | 6,6 |
| 1913 | 508,9 | 31,0 | 31,3 | 287 | 10,3 | 7,7 | 40,8 | 5,2 | 4,7 | 277,3 | 19,3 | 18,3 |
| 1937 | 451,2 | 37,2 | 51,4 | 244 | 8,6 | 13,2 | 45,3 | 7,9 | 7,9 | 173,0 | 12,6 | 14,5 |
| 1953 | 442 | 68,8 | 101,2 | 227 | 11,4 | 17,9 | 54,5 | 8,7 | 10,0 | 209,0 | 11,7 | 15,4 |
| 1955 | 446 | 70,2 | 105,7 | 225 | 12,7 | 20,1 | 57,4 | 11,0 | 12,6 | 221,1 | 16,5 | 21,4 |

Ամերիկայի Միացյալ Նահանգները 1937 թ. արտադրել են 177,6 միլիոն
տոննա նավթ, 132 հազար տոննա ալյումին, 4805 հազար ավտոմոբիլ, իսկ



1955 թ. 333 միլիոն տոննա նավթ, 1431 հազար տոննա ալյումին, 9169 հա-
զար ավտոմոբիլ։ Գերմանական Ֆեդերատիվ Ռեսպուբլիկան 1936 թ. ար-
տադրել է 190 հազար, իսկ 1955 թ. 846 հազար ավտոմոբիլ։ Աղյուսակից ու
բերված տվյալներից ակնբախ երևում է անհամաչափ զարգացման սրումն ու
խորացումը կապիտալիստական երկրների էկոնոմիկայում։ 1850 թվականից
մինչև 1955 թվականը ԱՄՆ-ում ածխի արտադրանքն աճել է ավելի քան 70
անգամով, չուգունինը՝ 117, պողպատինը՝ 151 անգամով։ Նույն ժամանակամի-
ջոցում Անգլիայի ածխի արտադրանքն աճել է 4,6 անգամով, չուգունինը՝ 6,
իսկ պողպատինը՝ ավելի քան 100 անգամով. Ֆրանսիայի ածխի արտադրանքը
նույն ժամանակամիջոցում աճել է 13 անգամով, չուգունինը՝ 13, իսկ պող-
պատինը՝ 157 անգամով։ Գերմանիայի ածխի արտադրանքը 1850-ից մինչև
1913 թ. աճել է ավելի քան 41 անգամով, չուգունինը՝ 96,5, իսկ պողպատինը՝
107 անգամով։ Աղյուսակում Գերմանիայի տվյալները 1937 թ. այս կողմ ընդ-
գրկում է Գերմանական Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի տերիտորիան և այդ է
պատճառը, որ 1937 թ. արտադրանքը 1913 թ. համեմատությամբ արտա-
հայտվում է ցածր ցուցանիշներով։ Հետաքրքրական է, որ 1955 թվականին
1937 թ. համեմատությամբ, Ամերիկայում և Անգլիայում ածխի արտադրանքն
ընկել է, իսկ Ֆրանսիայում աճել է մոտավորապես 28 տոկոսով, Գերմանա-
կան Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում՝ 30 տոկոսով։ Ավտոմոբիլների արտա-
դրանքը 1955 թ. 1937 թ. համեմատությամբ ԱՄՆ-ում մոտավորապես կրկնա-
պատկվել է, իսկ Գերմանական Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում աճել է 4,5
անգամով։ Միակ կապիտալիստական երկիրը, որտեղ 1955 թ. արտադրու-
թյունը լայնացել ու արագ աճել է տնտեսության բոլոր ճյուղերում, հանդի-
սանում է Արևմտյան Գերմանիան։

Վերոհիշյալ տվյալները ցույց են տալիս, որ հետամնաց նոր զարգացող
երկրները բարձր տեմպերի հետևանքով կարճ ժամանակում հասնում ու անց-
նում են նախկին զարգացած երկրներից, և զարգացումը տեղի է ունենում
անհամաչափ ու թռիչքաձև։ Միաժամանակ պետք է նշել, որ գնալով կապի-
տալիստական արտադրության աճի տեմպերը իջնում են։ Այսպես, օրինակ,
եթե 1900—1913 թվականներին ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրանքի
տարեկան միջին աճը կազմում էր 4,9 տոկոս, իսկ Ֆրանսիայինը՝ 3,3 տոկոս,
ապա 1929—1952 թվականներին տարեկան միջին աճը կազմում էր՝ ԱՄՆ-ում
3 տոկոս, Անգլիայում՝ 1,9 տոկոս, իսկ Ֆրանսիայում՝ 0,5 տոկոս։

Կապիտալիզմի անհամաչափ զարգացման հետևանքով օրինաչափ է
դառնում թշնամական հակադիր խմբավորումների պարբերաբար առաջա-
ցումը և զինված ընդհարումը այդ խմբավորումների միջև, հանուն մոնոպո-
լիստական գերշահույթների, հանուն աշխարհի վերաբաժանման։

Կապիտալիստական տնտեսության անհամաչափ զարգացումը ծնում է
ռազմական ուժերի անհամաչափություն, ավելի է սրվում պայքարը գաղութ-
ների համար, ստրատեգիական հումքի աղբյուրների ու կապիտալի արտա-
հանման ոլորտների համար։ Թուլանում է կապիտալիզմի ընդհանուր ճակատը
և ստեղծվում են նպաստավոր պայմաններ իմպերիալիզմի թույլ օղակի ճեղք-
ման ու սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար։

Կապիտալիզմի տնտեսական հիմնական օրենքի ավելի խոր ու սուր գոր-
ծելու հետևանքով կապիտալիզմը թևակոխեց իր սիստեմի ընդհանուր ճգնա-
ժամը, որի սկիզբը եղավ 1914—1918 թթ. իմպերիալիստական պատերազմը։

*Ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ համաշխարհային պատերազմները լինելով կապիտալիստական զարգացման անհամաչափության ծնունդ, իրենց հերթին սրեցին ու խորացրին այդ անհամաչափությունը։ Հայտնի է, որ երկրորդ համաշխարհային պատերազմում ջախջախվեցին միջազգային ֆաշիզմը և ճապոնական միլիտարիզմը, զգալիորեն վնասվեց Ֆրանսիան ու թուլացավ Անգլիան, դրա փոխարեն ամրացան և ուժեղացան ԱՄՆ-ի դիրքերը։*

*Արդյունաբերական արտադրանքի ծավալը կապիտալիստական երկրներում, 1929 թվականի համեմատությամբ, տոկոսներով ներկայացնում է հետևյալ պատկերը.*

| | 1929 թ. | 1937 թ. | 1943 թ. | 1946 թ. | 1949 թ. | 1955 թ. |
|---|---|---|---|---|---|---|
| Բոլոր կապիտալիստական երկրներում . . . . . . . | 100 | 104 | — | 107 | 130 | 193 |
| Այդ թվում՝ | | | | | | |
| ԱՄՆ . . . . . . . . . . . | 100 | 103 | 215 | 153 | 164 | 234 |
| Անգլիա . . . . . . . . . . | 100 | 124 | — | 118 | 144 | 181 |
| Ֆրանսիա . . . . . . . . . | 100 | 82 | — | 63 | 92 | 125 |
| Իտալիա . . . , . . . . . | 100 | 99 | — | 72 | 108 | 194 |
| Արևմտյան Գերմանիա . . | 100 | 114 | — | 35 | 93 | 213 |
| Ճապոնիա . . . . . . . . | 100 | 169 | 231 | 51 | 101 | 239 |

*Ինչպես երևում է աղյուսակից, 1937 թվականին 1929 թվականի մակարդակը գերազանցել են Անգլիան, Ճապոնիան և Արևմտյան Գերմանիան։ Իտալիան ու Ֆրանսիան դեռ չեն հասել 1929 թվականի մակարդակին, իսկ ԱՄՆ-ը աճ է տվել ընդամենը 3 տոկոս։ 1943 թվականին, պատերազմի թեժ պահին ու նրա հաշվին բուռն վերելք է ապրել ԱՄՆ-ի և Ճապոնիայի արտադրությունը։ 1946 թվականին Ֆրանսիայի, Իտալիայի, Արևմտյան Գերմանիայի ու Ճապոնիայի արտադրությունն անկում է ապրել, իսկ ԱՄՆ-ը և Անգլիան ունեն վերելք, սակայն պատերազմն ավարտվելու կապակցությամբ նրանց աճի տեմպերն իջել են։ 1949 թվականին Ֆրանսիան և Արևմտյան Գերմանիան դեռ չէին հասել 1929 թվականի մակարդակին, իսկ Ճապոնիան դոփում էր 1929 թվականի մակարդակի վրա։ Դրությունը զգալիորեն փոխվել է 1955 թվականին։ Եթե 1955 թվականին, 1946 թվականի համեմատությամբ արդյունաբերական արտադրանքի ծավալը ԱՄՆ-ում աճել է 81 տոկոսով, Անգլիայում՝ 63 տոկոսով, Ֆրանսիայում՝ 62 տոկոսով, ապա նույն ժամանակամիջոցում արդյունաբերության արտադրանքի ծավալն աճել է՝ Իտալիայում 122 տոկոսով, Գերմանական Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում՝ 178 տոկոսով, Ճապոնիայում՝ 177 տոկոսով։ Ակներև է, որ բարձր տեմպերով է աճում Ճապոնիայի, Արևմտյան Գերմանիայի, ԱՄՆ-ի արտադրությունը և հարաբերականորեն ետ են մնում Ֆրանսիան, Անգլիան ու Իտալիան։ Ակնհայտ է անհամաչափ զարգացումն իր բոլոր հետևանքներով։ «Կապիտալիստական աշխարհի իրադրությունը,— գրում է ընկեր Խրուշչևը,— բնութագրվում է խոր հակասությունների աճով։ Ուժեղանում է հակասությունը արտադրության հասարակական բնույթի և յուրացման մասնավոր կապիտալիստական ձևի միջև, արտադրության աճի և վճարունակ պահանջարկի կրճատման միջև, մի բան, որ տանում է դեպի տնտեսական ճգնաժամեր։ Աճում են հակասությունները կապիտալիստական*



*պետությունների միջև, սրվում է նրանց պայքարը վաճառահանման շուկաների և ազդեցության ոլորտների համար։ Աճում ու խորանում են սոցիալական հակասությունները, ուժեղանում է բանվոր դասակարգի, ժողովրդական լայն մասսաների պայքարը իրենց կենսական իրավունքների և շահերի համար։ Այսպիսով, կապիտալիզմը անշեղորեն գնում է դեպի տնտեսական ու սոցիալական նոր ցնցումներ» (Ն. Ս. Խրուշչև, ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետվու-*
*թյունը պարտիայի XX համագումարին, էջ 21, 1956 թ.)։*

*Կապիտալիզմի անհամաչափ զարգացումն արտահայտվում է նաև նրանով, որ կարևոր ստրատեգիական հումքի պաշարները ոչ միայն անհավասար են տարածված երկրի տարբեր վայրերում, այլև մի խումբ մեծ տերություններ իրենց հսկողությունը սահմանելով այդ պաշարների վրա՝ մյուս երկրներին զրկում են այդ հումքից, արգելակելով նրանց արդյունաբերական զարգացումը և դրանով իսկ սրելով կապիտալիստական պետությունների ներհակությունները։*

*Այսպես, 1950—1953 թթ. կապիտալիստական աշխարհում հայտնագործված նավթի պաշարների 79,3 տոկոսը գտնվում էր ԱՄՆ-ի, Անգլիայի ու Ֆրանսիայի ձեռքում, որից միայն ԱՄՆ-ինը՝ 60,1 տոկոսը, երկաթահանքերի 90,2 տոկոսը, ածխի 91,7 տոկոսը, որից ԱՄՆ-ինը՝ 83,1 տոկոսը, մոլիբդենի 99,9 տոկոսը ամբողջովին ԱՄՆ-ինն է, պղնձի 83,9 տոկոսը, որից ԱՄՆ-ինը՝ 60 տոկոսը, ցինկի 75,4 տոկոսը, որից ԱՄՆ-ինը՝ 55,1 տոկոսը և այլն։ Եթե 1948 թվականի արտադրանքի ծավալը ընդունենք 100 տոկոս, ապա 1955 թվականին ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրանքը կկազմի 134 տոկոս, իսկ Ճապոնիայինը՝ 297 տոկոս, այլ կերպ ասած՝ անհամաչափ ու թռիչքաձև զարգացման հետևանքով Արևմտյան Գերմանիան, Ճապոնիան ու Իտալիան արագորեն հասնում են Անգլիային, Ֆրանսիային ու ԱՄՆ-ին և դառնում նրանց մրցակից ախոյանը շուկաների համար մղվող պայքարում։ Այսպիսի զարգացման հետևանքով ԱՄՆ-ի արտադրանքի տեսակարար կշիռը կապիտալիստական երկրների արտադրանքում, նույն ժամանակամիջոցում ընկել է 5,8 տոկոսով, Անգլիայինը՝ 1 տոկոսով, իսկ դրան հակառակ՝ Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկայի արտադրանքի տեսակարար կշիռը համաշխարհային արտադրանքում, նույն ժամանակամիջոցում աճել է 5,1 տոկոսով, իսկ Ճապոնիայինը՝ 1,5 տոկոսով։ Այդ նույն օրինաչափությունն է նկատվում արդյունաբերական ապրանքների համաշխարհային էքսպորտում, որտեղ Անգլիայի էքսպորտի տեսակարար կշիռը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ ընկել է 5,9 տոկոսով, ԱՄՆ-ինը՝ 2,1 տոկոսով, իսկ Արևմտյան Գերմանիայի էքսպորտի տեսակարար կշիռը համաշխարհային էքսպորտում, նույն ժամանակամիջոցում, աճել է 7,9 տոկոսով։*

*Կապիտալիզմի անհամաչափ զարգացումը հատկապես երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ընկած ժամանակամիջոցում սրվում ու խորանում է նաև կապիտալիստական երկրների էկոնոմիկայի միակողմանի զարգացման՝ միլիտարիզացիայի հետևանքով։ Այդ գծով էլ տիպիկ է ԱՄՆ-ի վիճակը. եթե ԱՄՆ-ի ծանր արդյունաբերության հիմնական ճյուղերի արտադրանքում 1950 թվականին ռազմական արտադրանքը կազմել է 16,6 տոկոս, ապա 1954 թվականին նույն ճյուղերում ռազմական արտադրանքը կազմել է 39 տոկոս, ԱՄՆ-ի ամբողջ մշակող արդյունաբերության մեջ ռազմական արտադրանքը 1950 թվականին կազմել է 8,3 տոկոսը, իսկ 1954 թվականին՝*

20,4 տոկոսը։ ԱՄՆ-ի ռազմական ծախսերը 1939 թվականի համեմատությամբ, 1953 թվականին աճել են 53 տոկոսով և այժմ կլանում են պետական բյուջեի երեք քառորդից ավելին։

Անգլո-ամերիկյան իմպերիալիստների կողմից սոցիալիզմի երկրների մեկուսացման առևտրական քաղաքականության հետևանքով հետպատերազմյան շրջանում առաջացան երկու համաշխարհային շուկաներ՝ սոցիալիստական, որը գնալով աճում է սոցիալիզմ կառուցող երկրների էկոնոմիկայի հզոր վերելքի հիման վրա և կապիտալիստական, որի ոլորտը գնալով նեղանում է։

Ժողովրդական դեմոկրատիայի ու սոցիալիզմի երկրների հետ 1951 թվականին, 1937 թվականի համեմատությամբ ԱՄՆ-ի ապրանքաշրջանառությունը կրճատվեց 10 անգամ, Անգլիայինը՝ 6 անգամ, Ֆրանսիայինը՝ 4 անգամ։ Աչքի է ընկնում նաև դիսպրոպորցիան արտաքին առևտրում՝ արտահանման և ներմուծման միջև. 1946—54 թվականներին ԱՄՆ-ի տարեկան միջին էքսպորտը եղել է 13,5 միլիարդ դոլարի, իսկ ներմուծումը՝ 8,5 միլիարդ դոլարի։ Վերջին 8 տարում ԱՄՆ-ի արտահանումը Արևմտյան Եվրոպա, ներմուծումից գերազանցել է 21,6 միլիարդ դոլարով. ճիշտ հակառակ պատկեր ուներ Արևմտյան Եվրոպայի երկրների արտահանման և ներմուծման վիճակը։ Իսկ այդ հանգամանքը արգելակում է տվյալ երկրների էկոնոմիկայի զարգացումը, որի հետևանքով ԱՄՆ-ին կցորդ դարձած երկրներից ոսկու պաշարները հոսում են դեպի Ամերիկա։ Եթե սրան ավելացնենք սարկացուցիչ անսքող դեմպինգը, մաքսատուրքը և Արևմտյան ու Արևելյան Եվրոպայի պատմականորեն ստեղծված բազմակողմանի կապերի խզման այն գիծը, որ վարում են ԱՄՆ-ի ու Անգլիայի իմպերիալիստները, ապա պարզ կդառնա, որ այս բոլորի հետևանքով զարգացման անհամաչափությունը խորանում է և կապիտալիստական հակասությունները սրվում են։

Սոցիալիզմի ու ժողովրդական դեմոկրատիայի երկրների արդյունաբերական արտադրանքի զարգացման տեմպերը երեք և ավելի անգամ բարձր են կապիտալիստականից։ Բացի այդ, սոցիալիստական ինդուստրացման ակընհայտ հաջողությունները հնարավոր դարձրին, որ սոցիալիզմի ճամբարի երկրները համաշխարհային առևտրում հանդես գան օրըստօրե աճող մասշտաբներով, որի հետևանքով և վերացավ իմպերիալիստական երկրների մենաշնորհային վիճակը նաև միջազգային շուկայում։

Այս ամենն անկասկած իրենց ներգործությունն են ունենում կապիտալիստական երկրների տնտեսական ու քաղաքական անհամաչափ զարգացման սրման ու ներհակությունների խորացման վրա։

Կապիտալիստական երկրների տնտեսական ու քաղաքական անհամաչափ զարգացման սրման լուրջ ֆակտոր է նաև իմպերիալիզմի գաղութային սիստեմի արագ փլուզումը։ Չինաստանում հաղթանակեց ռևոլյուցիան, անկախ երկրներ դարձան Հնդկաստանը, Ինդոնեզիան, Եգիպտոսը, Սիրիան, Լիբանանը, Սուդանը և այլն։ Լայն ծավալ է ստանում անկախության ու ազատության համար մղվող ժողովրդական պայքարը մյուս կախյալ ու գաղութային երկրներում։ Այս ամենը թուլացնում է իմպերիալիզմի համաշխարհային դիրքերը, սրում կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական անհամաչափ զարգացումը, ուժեղանում է պայքարը շուկաների ու կապիտալի արտահանման սֆերաների վերաբաժանման համար։



Լենինյան ուսմունքը իմպերիալիզմի տնտեսական ու քաղաքական օրինաչափությունների, այդ թվում նաև կապիտալիզմի անհամաչափ զարգացման օրենքի մասին՝ մարքսիզմի ստեղծագործական զարգացումն է պատմական նոր պայմաններում, որը կապիտալիզմից սոցիալիզմին անցման նոր ուղիներ նշեց։ Ահա թե ինչու բուրժուական ու մանր բուրժուական իդեոլոգիայի ներկայացուցիչները, կապիտալիզմի ջատագովները ընդհանրապես պայքարելով մարքսիզմ-լենինիզմի դեմ, հատուկ ջանասիրությամբ ձգտել են ժխտել կապիտալիզմի անհամաչափ զարգացման և մի երկրում սոցիալիզմի հաղթանակի լենինյան ուսմունքը։ Լենինը իր «Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա» հանճարեղ աշխատության մեջ վճռական հակահարված տվեց Կաուցկուն ու Հիլֆերդինգին. «Կաուցկու ամենաանբովանդակ զրույցներն ուլտրաիմպերիալիզմի մասին,— գրում է Լենինը,— ի միջի այլոց, խրախուսում են այն խորապես սխալ ու իմպերիալիզմի ջատագովների ջրաղացին ջուր ածող միտքը, թե իբր ֆինանսական կապիտալի տիրապետությունը թուլացնում է համաշխարհային տնտեսության ներսում եղած անհամաչափություններն ու հակասությունները, այնինչ իրապես այն ուժեղացնում է այդ անհամաչափություններն ու հակասությունները» (հատ. 22, էջ 362)։

Հասկանալի է, որ մեծ Լենինի այդ դիպուկ եզրակացությունը վերաբերում է նաև այսպես կոչված՝ «կազմակերպված կապիտալիզմի» տեսության բոլոր մեծ ու փոքր մունետիկներին։ Կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական անհամաչափ զարգացման օրենքի և նրա ուժեղացման ժխտումը՝ նշանակում է իմպերիալիզմի հակասությունների սրման անխուսափելի բացասում, իմպերիալիզմի ֆրոնտի թուլացման բացասում, կապիտալիզմի շղթայի թույլ օղակում ճեղքման հնարավորության և մեկ առանձին վերցրած երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության բացասում։

Այս ամենը ուղի է հարթում «ուլտրաիմպերիալիզմի», «կազմակերպված կապիտալիզմի» ժամանակակից «կարգավորված կապիտալիզմի» կեղծ տեսությունների համար և ռևոլյուցիան փոխարինում է վատթարագույն ռեֆորմիզմով։ Ահա թե ինչու Լենինի ռևոլյուցիոն և անձնվեր հետևորդները հետևողականորեն մերկացրել ու մերկացնում են կապիտալիզմի անհամաչափ զարգացումը ժխտող բոլոր փորձերը՝ հակապարտիական զանազան հոսանքների ու գրուպների դեմ մղվող հետևողական պայքարում։ Լենինիզմի դրոշակակիրը՝ ՍՄԿՊ-ն անաղարտ պահելով և պատմական նոր պայմաններում մշակելով ու զարգացնելով իմպերիալիզմի էպոխայում կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական անհամաչափ զարգացման լենինյան դրույթը, այդ հիման վրա սահմանելով արդի ժամանակաշրջանի կապիտալիզմի զարգացման օրինաչափությունները, որոշում է միջազգային ռևոլյուցիոն շարժման զարգացման և ՍՍՌՄ արտաքին քաղաքականության արմատական խնդիրները։ Այդ տեսակետից անգնահատելի է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի պատմական որոշումների տեսական ու պրակտիկ նշանակությունը։

# „ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ"*)

Հայպետհրատի հրատարակությամբ ռուսերեն լեզվով լույս է տեսել Հ. Թումանյանի աշխատությունը՝ նվիրված Հայաստանի տնտեսական զարգացման ուսումնասիրությանը։ Աշխատության առաջին մասում հետազոտվում է Հայաստանի էկոնոմիկան՝ Ռուսաստանի հետ նրա միացումից մինչև սովետական իշխանության հաստատումը, իսկ երկրորդ մասում՝ ռեսպուբլիկայի էկոնոմիկան սովետական ժամանակաշրջանում։

Տվյալ աշխատության լույս ընծայումը պետք է համարել շատ անհրաժեշտ, քանի որ մեր տնտեսագիտական գրականության մեջ մինչև այժմ չկա մի ամբողջական կապիտալ աշխատություն՝ նվիրված Հայաստանի ինչպես նախասովետական, այնպես էլ սովետական ժամանակաշրջանի էկոնոմիկայի զարգացման ուսումնասիրությանը։ Գրախոսվող աշխատության հեղինակը Հայաստանի էկոնոմիկայի ուսումնասիրությամբ զբաղվել է երկար տարիներ, այդ գործում ներդնելով քրտնաջան աշխատանք ու եռանդ, որի արդյունքներն ընդհանրացված են վերոհիշյալ աշխատության մեջ։

Մենագրության առաջին մասը գրելիս Հ. Թումանյանը նորից վերամշակել է իր ավելի վաղ լույս տեսած «Հայաստանի էկոնոմիկան XIX դ. և XX դ. սկզբում» աշխատությունը, հաշվի է առել այդ գրքի վերաբերյալ արված քննադատական դիտողությունները։ Վերանայված է նաև ամբողջ աշխատության շարադրանքի սխեման, կրճատված ու հանված են որոշ գլուխներ և ավելացված են նոր, բովանդակությամբ բավական հետաքրքիր գլուխներ։

Հայաստանի նախասովետական ժամանակաշրջանի էկոնոմիկայի ուսումնասիրությունը կատարված է ըստ առանձին էտապների, դրանցից յուրաքանչյուրին հատկացնելով հատուկ բաժին։ Ներածական բաժնում քննություն է առնվում Հայաստանի էկոնոմիկայի վիճակը Ռուսաստանի հետ նրա միացման նախօրյակին և ապա չորս բաժիններում հետազոտվում է էկոնոմիկայի զարգացումը հաջորդ ժամանակաշրջաններում, այն է՝ նախառեֆորմյան շրջանից մինչև սովետական իշխանության հաստատումը։

Ինչպես հայտնի է, ժամանակակից Հայկական ՍՍՌ տերիտորիայի զգալի մասը մի քանի հարյուրամյակ շարունակ գտնվում էր Իրանի տիրապետության տակ։ Աշխատության առանձին բաժնում հեղինակը քննություն է առնում Հայաստանի սոցիալ-տնտեսական պայմանները իրանական կառավարիչների իշխանության ժամանակաշրջանում, տալիս է երկրի էկոնոմիկայի բնութագիրը, հայ ժողովրդի տնտեսական ծանր կացությունը, նրա կենսական ուժերի հյուծումը և կուլտուրայի անկումը։

Հայաստանի միացումը Ռուսաստանին պրոգրեսիվ պատմական մի ակտ էր և, ինչպես ճիշտ կերպով նշում է հեղինակը, վիթխարի նշանակություն ունեցավ հայ ժողովրդի հետագա պատմության, երկրի քաղաքական, տնտեսական ու կուլտուրական զարգացման համար։

Հայաստանի էկոնոմիկայի նախառեֆորմյան ժամանակաշրջանի զարգացման հետազոտությունը սերտորեն շաղկապված է այն միջոցառումների հետ, որ ցարական ինքնակալությունն անց է կացրել Անդրկովկասի վարչա-քաղաքական վերակազմության և նրա տնտեսական յուրացման ուղղությամբ։ Իրանական լծից Հայաստանի ազատագրմանը հաջորդած քառասուն տարիների ընթացքում, ինչպես երևում է աշխատության մեջ բերված տվյալներից, երկրի էկոնոմիկան սկսեց աստիճանաբար վերականգնվել ու զարգանալ. հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունն ավելի քան կրկնապատկվեց, տեխնիկական կուլտուրաներինը՝ գրեթե եռապատկվեց, զգալիորեն աճեց անասունների գլխաքանակը, ավելացավ ամբողջ գյուղատնտեսության արտադրանքը։ Աշխուժացավ առևտուրը, առաջացան նոր քաղաքներ ու բնակավայրեր, ամենուրեք սկսեցին զարգանալ արհեստները, զգալիորեն ավելացավ բնակչության թիվը, այդ թվում՝ Թյուրքիայից ու Իրանի ներգաղթած հայերի հաշվին։

Ժողովրդական տնտեսության զարգացմանը զուգորդում էր աշխատանքի հասարակական բաժանման աճումը, որը XIX դարի 50—60-ական թվականներին հանգեցրեց ապրանքային արտադրության զարգացման և բնատնտեսության քայքայման։ Առաջին բաժինը, որ նվիրված է Հայաստանի նախառեֆորմյան ժամանակաշրջանի էկոնոմիկայի ուսումնասիրությանը, ավարտվում է այն պրոցեսների հետազոտությամբ, որոնք կապված էին Ռուսաստանում 1861 թվականի գյուղացիական ռեֆորմից հետո ռևոլյուցիոն-դեմոկրատական շարժման առաջացման հետ։

Մեծ հետաքրքրությամբ է կարդացվում աշխատության առաջին մասի երկրորդ բաժինը, որտեղ հետազոտվում է Հայաստանի տնտեսական զարգացումը կապիտալիզմի ժամանակաշրջանում։ Այս ամբողջ բաժինը գրված է խնամքով և լավ վերլուծված նյութի հիման վրա։

Ելնելով Վ. Ի. Լենինի այն բնորոշումից, թե շուկայի գոյացման պրոցեսը կապիտալիզմի համար ունի երկու կողմ, այն է՝ կապիտալիզմի զարգացումը խորությամբ և նրա զարգացումը լայնությամբ, հեղինակն իր աշխատության մեջ բավական մանրամասնորեն հետազոտում է այդ զարգացման նշանակությունն Անդրկովկասի համար։ Հենց այդ զարգացման հետևանքով էլ Անդրկովկասի էկոնոմիկան սերտորեն շաղկապվում է կայսրության էկոնոմիկայի հետ և ներքաշվում համաշխարհային ապրանքաշրջանառության ոլորտը։ Դրանով իսկ պայմաններ են ստեղծվում Անդրկովկասում կապիտալիզմի զարգացման համար։

Կապիտալիզմի զարգացման շահերը պահանջում էին Հայաստանում անցկացնել ագրարային ռեֆորմ։ Այս հարցի հետազոտությանն է նվիրված մի հատուկ գլուխ, որտեղ վերլուծվում է 1870 թվականին Հայաստանում անցկացված գյուղացիական ռեֆորմը։ Հեղինակի այն հետևությունները, թե 1870 թվականի ռեֆորմն է՛լ ավելի վատացրեց աշխատավոր գյուղացիության դրությունը, թե այդ ռեֆորմը չէր կարող էապես ազդել երկրի տնտեսական կյանքի վրա, ճիշտ են և բավական համոզիչ կերպով հիմնավորված։ Կարևոր է նաև ընդգծել, որ եսդնման կանոնավոր սիստեմի բացակայության պատճառով 1870 թվականի ռեֆորմը չէր կարող լուծել մի այնպիսի կարևոր հարց, ինչպիսին վարելահողի եսդնման հարցն էր, որի հետևանքով մասնատիրական գյուղացիները Հայաստանում ընդհուպ մինչև 1912 թվականը ֆեոդալական կախման մեջ էին կուլակներից ու բեկերից։

Հ. Թումանյանի հաշվումները ցույց են տալիս, որ գյուղացիական ռեֆորմի անցկացման հետևանքով գյուղացիական բոլոր տնտեսությունների 98,7 տոկոսը իրենց տրամադրության տակ ունեին բոլոր պիտանի հողերի միայն 32 տոկոսը, իսկ գանձարանը, կուլակները, կալվածատերերն ու վանքերը՝ 68 տոկոսը։ Հողազուրկ և սակավահող գյուղացիներն ստիպված էին լինում մասնավոր հողատերերից հողը վարձակալել չափազանց ստրկական պայմաններով, մի բան, որ է՛լ ավելի սաստկացրեց գյուղացիների շահագործումը կալվածատերերի կողմից։ Դա հասցրեց գյուղացիության շերտավորմանն ու քայքայմանը։

Աշխատության մեջ հատուկ ուշադրություն է հատկացված գյուղացիության շերտավորման ու քայքայման հետազոտությանը։ Հայտնի է, որ Վ. Ի. Լենինը գյուղացիության քայքայման պրոցեսներն ուսումնասիրելիս մեծ նշանակություն էր տալիս գյուղացիական տնտեսությունների բյուջեների վերլուծությանը։ Ղեկավարվելով այդ վերլուծության լենինյան մեթոդներով՝ մենագրության հեղինակն առաջին անգամ ըստ սոցիալական առանձին խմբերի մշակել և վերլուծել է Հայաստանի գյուղացիական տնտեսությունների բյուջեները։

Գյուղացիության քայքայման հետևանքով գյուղում տեղի ունեցած սոցիալ-տնտեսական տեղաշարժերը գյուղատնտեսությանը տվեցին ապրանքա-կապիտալիստական բնույթ, տեղի ունեցավ գյուղատնտեսության մասնագիտացում, և այն սկսեց զարգանալ առևտրական հողագործության ուղիով։ Այս բոլոր պրոցեսները հանգամանորեն վերլուծված են աշխատության մեջ։

Արդյունաբերության զարգացման ընթացքի վրա անմիջական ազդեցություն գործեց ռուսական կապիտալիզմի հակասական բնույթը։ Վարելով գաղութային քաղաքականություն, ցարիզմը Հայաստանում, որպես կայսրության ծայրամաս, արհեստականորեն կասեցնում էր արդյունաբերության զարգացումը։ Միևնույն ժամանակ կապիտալիզմի վերջնական ձևավորումը Ռուսաստանում հանգեցրեց նրան, որ Հայաստանում ևս զարգացավ արդյունաբերությունը, իսկ դա պրոգրեսիվ նշանակություն ունեցավ երկրի հասարակական-տնտեսական զարգացման և նրա էկոնոմիկայի ազգային մեկուսացածության վերացման համար։ Վերոհիշյալ պատճառներով Հայաստանի արդյունաբերական զարգացումը, դատելով աշխատության մեջ եղած նյութերից, տեղի էր ունենում միակողմանի և բնավ չէր համապատասխանում նրա պոտենցիալ հնարավորություններին։ Այդ մասին համոզիչ կերպով խոսում է արդյունաբերության ճյուղային ստրուկտուրայի այն վերլուծությունը, որ տվել է հեղինակը և որից երևում է, որ կապիտալիզմի զարգացման ժամանակաշրջանում Հայաստանում արդյունաբերության փոքրիշատե զարգացած ճյուղերն էին պղնձի և գինու-կոնյակի արդյունաբերությունը։

Այնուհետև, անցնելով Հայաստանի էկոնոմիկայի ուսումնասիրությանը իմպերիալիզմի

---

*) О. Е. Туманян. — „Экономическое развитие Армении", часть I, 1954 г., стр. 370, часть II, 1956 г, стр. 308. Армгиз, Ереван.

ժամանակաշրջանում, հեղինակը ցույց է տալիս, թե ինչպես Ռուսաստանում իմպերիալիզմի ռազմա-ֆեոդալական բնույթը անմիջական ներգործություն է ունեցել ծայրամասերի էկոնոմիկայի զարգացման ընթացքի վրա։ Արտադրողական ուժերի տեղաբաշխման անհամաչափության խորացման և խիստ սրման ընդհանուր ֆոնի վրա մոնոպոլիստական կապիտալն իր ոլորտի մեջ էր առնում ծայրամասերի, այդ թվում նաև Հայաստանի էկոնոմիկան։

XX դարի սկզբում, տեղական ու ռուսական կապիտալի զարգացման հետ մեկտեղ, Հայաստանի պղնձահանքային արդյունաբերության մեջ է թափանցում օտարերկրյա կապիտալը, որը գիշատիչ մեթոդներով շահագործման է ենթարկում երկրի բնական ռեսուրսները։ 1900—1913 թթ. ժամանակաշրջանում պղնձարդյունաբերության մեջ տեղի է ունենում արտադրության համակենտրոնացում, իսկ պղնձի արտադրությունն այդ նույն ժամանակամիջոցում 67,9 հազար փթից աճում, հասնում է 337,4 հազար փթի։ Աշխատության մեջ բերված այդ նույն տվյալներից հետևում է, որ 1913 թվականին Հայաստանը տվել է ամբողջ Ռուսաստանում արտադրվող պղնձի 16,6 տոկոսը։ Հետազոտվող ժամանակաշրջանում զգալիորեն աճեց նաև գինու-կոնյակի արդյունաբերությունը, որտեղ թափանցել էր ռուսական կապիտալը։ Կապիտալիզմի զարգացումն ուղեկցվում էր բանվորների թվի աճով և նրանց շահագործման ուժեղացումով։

Հաջորդ գլուխներում բնութագրվում է էկոնոմիկայի վիճակը առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակից մինչև 1917 թվականի հոկտեմբերը։

Մենագրության առաջին մասն ավարտվում է Հայաստանի էկոնոմիկայի ուսումնասիրությամբ՝ Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո մինչև սովետական իշխանության հաստատումը։ 1917 թվականի հոկտեմբերից հետո Անդրկովկասի բուրժուա-նացիոնալիստական պարտիաներին՝ իմպերիալիստական պետությունների ակտիվ օժանդակությամբ հաջողվում է Անդրկովկասը ժամանակավորապես անջատել Սովետական Ռուսաստանից։ Անդրկովկասում կազմակերպվում է հակասովետական կոալիցիան, որը, սակայն, շուտով տրոհվում է այսպես կոչված՝ «անկախ» ռեսպուբլիկաների։

Հայաստանում իշխանությունն անցնում է դաշնակների ձեռքը։ Կարճ ժամանակամիջոցում նրանք քայքայեցին երկրի ամբողջ էկոնոմիկան, իսկ սովի ու համաճարակների հետևանքով երկիրը կորցրեց իր բնակչության մեկ երրորդը։ Հայաստանին փրկություն բերեց սովետական իշխանությունը, որը հայ ժողովրդի պատմության մեջ բացեց մի նոր, երջանիկ դարաշրջան։

Գրախոսվող աշխատության առաջին մասը զերծ չէ թերություններից։ Իրանական տիրապետության շրջանի Հայաստանի էկոնոմիկայի վերլուծությունը տեղ-տեղ կատարված է թռուցիկ և բավականաչափ լրիվ չէ։ Հեղինակը մեծ նյութ է ունեցել իր տրամադրության տակ և առանձին հարցեր կարող էր ավելի խոր հետազոտել։ Հատկապես անհրաժեշտ էր մանրամասնորեն կանգ առնել դրամական այն ծանր հարկերի ու բնահարկերի, ամեն տեսակ գանձումների վրա, որ իրանական կառավարիչները վերցնում էին հայ ժողովրդից և մանավանդ աշխատավոր գյուղացիությունից։ Հեղինակը պետք է տար նաև արհեստի առանձին տեսակների ծավալուն բնութագիրը և ավելի խոր կերպով վերլուծեր ժողովրդական կրթության վիճակը։ Մասնավորապես ժողովրդական կրթության վերաբերյալ հեղինակը սահմանափակվել է միայն հայտարարությամբ, թե «կուլտուրան անկման հասավ», թե «երկրում կային մի քանի եկեղեցական-ծխական դպրոցներ» և թե «չնչին բացառությամբ ժողովուրդն անգրագետ էր»։

Ցարիզմի նախառեֆորմյան շրջանի ագրարային քաղաքականության վերլուծության մեջ հեղինակի մոտ կան որոշ հակասական հետևություններ։ Հ. Թումանյանը գրում է, որ առաջին պահին ինքնակալությունը հողային հարաբերությունները որևէ արմատական փոփոխության չենթարկեց և փաստորեն օրինականացրեց բեկերի, աղալարների ու մյուլքադարների իրավունքը հողի նկատմամբ։ Բայց այնուհետև, խոսելով 1841 թվականին անցկացված հողատիրության ռեֆորմի մասին, նա չի կարողացել հիմնավորել, թե ինչու ինքնակալությունը կանգնեց նրանցից հողը վերցնելու ուղու վրա։ Աշխատությունից ստացվում է այնպիսի տպավորություն, թե «...արտոնյալ դասերի կողմից գյուղացիներին կողոպտելը» և «...գյուղացիների շահագործման դաժան մեթոդները» (էջ 38) ինքնակալությանը հարկադրեցին հրատարակել 1841 թվականի օրենքը։ Կասկածից դուրս է, որ ոչ թե գյուղացիների նկատմամբ ունեցած մարդասիրությունն է դրդել ցարիզմին ռեֆորմներ կատարելու, այլ որ այստեղ դեր են խաղացել ավելի խոր տնտեսական-քաղաքական գործոններ, որոնք, ցավոք սրտի, աշխատության մեջ չեն բացահայտված ու վերլուծված։

Գյուղացիության քայքայմանը վերաբերող գլուխներում վաշխառուական կապիտալի հարցերը գրեթե չեն վերլուծված։ Մինչդեռ հայտնի է, որ հայ գյուղում, առանձնապես տեխնիկական կուլտուրաներ մշակող շրջաններում, վաշխառությունը խիստ տարածված էր, որը



խարխլելով գյուղացիական տնտեսության հիմքերը, արագացրեց գյուղացիության շերտավորման և քայքայման պրոցեսը։

Հիմնականում ճիշտ գնահատելով 1870 թվականի ռեֆորմի էությունը, այնուամենայնիվ, հեղինակը տեղ-տեղ իր հետևությունները պատշաճ փաստարկումներով չի ամրապնդում, որը որոշ չափով իջեցնում է տվյալ հարցի հետազոտության որակը։ Այնուհետև, հեղինակն անպայման պետք է տար գյուղացիական ռեֆորմի վերաբերյալ եղած կարծիքների, հայացքների վերլուծությունը։

Իմպերիալիզմի ժամանակաշրջանում Հայաստանի էկոնոմիկային նվիրված բաժնում շարադրանքի ձգձգվածություն է նկատվում գրեթե բոլոր գլուխների ներածական մասում, որտեղ շոշափվում են հանրածանոթ ընդհանուր դրույթներ, մի բան, որ առանձնապես նկատելի է տասնմեկերորդ գլխում։

Առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին Հայաստանի տնտեսության որոշ ճյուղերի բնութագրությունը սեղմ է տրված։ Այսպես, Հայաստանի արդյունաբերությանը հատկացված է սոսկ մի էջ, որտեղ բերված են միայն տվյալներ համախառն արտադրանքի արժեքի և արդյունաբերության մեջ զբաղված բանվորների թվի վերաբերյալ։ Մի շարք այնպիսի ցուցանիշներ, ինչպես արդյունաբերության առանձին ճյուղերի նատուրալ արտադրանքը, արդյունաբերական ձեռնարկությունների կարողությունը, նրանց հիմնական ֆոնդերի արժեքը, արդյունաբերության առանձին ճյուղերի աշխարհագրական տեղաբաշխումը, դուրս են մնացել հեղինակի տեսադաշտից։ Հ. Թումանյանին պետք է կշտամբել նաև այն բանում, որ խոսելով Հայաստանի կուլտուրական հետամնացության մասին, նա իր աշխատության մեջ ոչ մի տվյալ չի բերում երկրի լուսավորության, արվեստի և առողջապահության վիճակի մասին։

Առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին Հայաստանի էկոնոմիկան լիովին բնութագրելու համար պետք էր հետազոտել նաև Հայաստանի առևտրական կապերը ինչպես կայսրության, այնպես էլ արտասահմանի հետ և տալ Հայաստան ներմուծվող ու արտահանվող ապրանքների ստրուկտուրայի վերլուծությունը. դա հնարավորություն կտար լուսաբանել ցարիզմի գաղութային քաղաքականության հետ կապված մի շարք հարցեր։

⁂

Գրախոսվող աշխատության երկրորդ մասում հեղինակը քննության է առնում ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգացումը սովետական իշխանության հաստատումից մինչև հինգերորդ հնգամյակը ներառյալ։ Վերջում ամփոփվում է Հայկական ՍՍՌ 35-ամյա տնտեսական ու կուլտուրական շինարարության արդյունքները և համառոտակի տրվում է նրա էկոնոմիկայի զարգացումը վեցերորդ հնգամյակում։

Շնորհիվ շարադրանքի հաջող սխեմայի և մեծ քանակությամբ նյութերի մանրակրկիտ վերլուծության՝ աշխատությունը հետաքրքրությամբ է կարդացվում. Նրանում ցույց են տրված այն վիթխարի հաջողությունները, որ հայ ժողովուրդը ձեռք է բերել իր էկոնոմիկայի վերելքի, կուլտուրայի ծաղկման և աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման բնագավառում։

Հայաստանի ժողովրդական տնտեսությունը հետազոտված է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի քաղաքականության հետ անմիջականորեն շաղկապված, Հայկական ՍՍՌ էկոնոմիկայի ու ՍՍՌՄ էկոնոմիկայի միասնության մեջ։

Առաջին երեք գլուխներում քննության է առնըվում Հայաստանի էկոնոմիկան մինչև Հայրենական Մեծ պատերազմը, չորրորդ գլխում վերլուծվում է ռեսպուբլիկայի էկոնոմիկան Հայրենական պատերազմի ու չորրորդ հնգամյակի ժամանակաշրջանում, և վերջապես, վերջին գլուխը նվիրված է էկոնոմիկայի զարգացմանը հինգերորդ հնգամյակում։

Երկրում սովետական իշխանության հաստատումով հայ ժողովուրդն անցավ խաղաղ ստեղծագործական աշխատանքի։ Հայաստանի էկոնոմիկայի վերականգնման ու զարգացման գործում հսկայական դեր խաղաց Կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականությունը։ Առաջին գլխում, հետազոտելով էկոնոմիկայի զարգացումը վերականգնման ժամանակաշրջանում, հեղինակը կանգ է առել այն ռևոլյուցիոն միջոցառումների վրա, որոնք իրագործվել են Հայաստանում պրոլետարիատի դիկտատուրայի օրգաններ ստեղծելու և տնտեսության հրամանատարական բարձունքներին տիրելու համար (հողի, խոշոր արդյունաբերության, բանկերի, տրանսպորտի, կապի ազգայնացում և այլն)։ Տնտեսական փլուզումն ու պարենային ճգնաժամը լիկվիդացնելու գործում Սովետական Ռուսաստանը Վ. Ի. Լենինի ցուցումով մեծ օգնություն ցույց տվեց Հայաստանին։

ԱՍՖՍՌ և ՍՍՌՄ կազմվելու շնորհիվ արագ թափով զարգանում է ժողովրդական տնտեսությունը, ընդ որում արդյունաբերության բնագավառում վերականգնման պրոցեսն ուղեկցվում է արդյունաբերության նոր ճյուղերի ստեղծումով, իսկ գյուղատնտեսության վերականգնումը իրականացվում է լենինյան կոոպերատիվ պլանի

*սկզբունքների հիման վրա։ Հայաստանում ամենուրեք ծավալվում է նաև կուլտուրական շինարարությունը։ Ժողովրդական տնտեսության վերականգնումը, ինչպես ցույց է տրված աշխատության մեջ, հիմնականում ավարտվեց 1925 թվականին։*

*Աշխատության երկրորդ գլուխը նվիրված է Հայաստանի էկոնոմիկայի վերլուծմանը ինդուստրացման ժամանակաշրջանում, մինչև գյուղատնտեսության կոլեկտիվացման ավարտումը։ ՍՍՌՄ սոցիալիստական ինդուստրացման պլանի բաղկացուցիչ մասն էր կազմում ազգային ռեսպուբլիկաների արդյունաբերության զարգացումը, այդ բազայի վրա բանվորական, տեխնիկական կադրերի ստեղծումը և ազգային կուլտուրայի վերելքը։*

*Ուսումնասիրվող ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը զարգանում էր արագ թափով, իսկ առաջին հնգամյա պլանի հաջող կատարման հետևանքով երկրի էկոնոմիկայում տեղի ունեցան ստրուկտուրային էական տեղաշարժեր։ Մի շարք հիդրոէլեկտրակայանների շինարարությունն ու գործարկումը ամուր բազա ստեղծեց արդյունաբերության նոր ճյուղերի (քիմիական, շինարարական, սնունդհամի, տեքստիլ և այլն) կազմակերպման համար։ Առաջին հնգամյակի տարիներին շարք մտան խոշոր արդյունաբերության ավելի քան 100 ձեռնարկություն, իսկ արդյունաբերության համախառն արտադրանքի արժեքը հնգամյակի ընթացքում 28,2 միլիոն ռուբլուց հասավ 111 միլիոն ռուբլու (1926—1927 թթ. անփոփոխ գներով)։*

*Կարևոր է նաև ընդգծել, որ նախկին ծայրամասերի տնտեսության հետամնացության վերացումը հետապնդող լենինյան ազգային քաղաքականությանը համապատասխան՝ Հայաստանի արդյունաբերության արտադրանքի աճման տեմպերն ավելի բարձր էին, քան ամբողջությամբ վերցրած ՍՍՌՄ-ի տեմպերը։ Այսպես, եթե առաջին հնգամյակի ընթացքում ՍՍՌՄ արդյունաբերության արտադրանքն ամբողջությամբ վերցրած աճեց երկու անգամ, ապա Հայաստանում աճեց 4,5 անգամ։*

*Որոշակի տեղաշարժեր կատարվեցին արդյունաբերության ճյուղային ստրուկտուրայում, որոշ չափով բարձրացավ արտադրության միջոցների արտադրության տեսակարար կշիռը։*

*Հայաստանի ինդուստրիալ զարգացման պրոցեսներն էական փոփոխություններ առաջ բերին արդյունաբերության ու գյուղատնտեսության համամասնության մեջ։ Ժողովրդական տնտեսության համախառն արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ արդյունաբերության տեսակարար կշիռը հնգամյակի սկզբում եղած 27,9 տոկոսից հնգամյակի վերջում հասավ 62,4 տոկոսի։*

*Գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման ուղղությամբ պարտիայի ու կառավարության ձեռնարկած միջոցառումների կենսագործումը նշանավորվեց նրանով, որ կոլտնտեսային կարգը հաղթեց, գյուղատնտեսությունը տեխնիկապես զինվեց և գյուղատնտեսական արտադրությունն աճեց։ Գյուղատնտեսության հաջողությունների հետ մեկտեղ աշխատության մեջ մատնանշված են նաև նրա մի քանի ճյուղերում տեղ գտած թերությունները։*

*Այնուհետև, աշխատության մեջ քննության են առնվում սոցիալ-կուլտուրական շինարարության և աշխատավորների նյութական մակարդակի բարձրացման հարցերը։ Էկոնոմիկայի անշեղ վերելքը բազա հանդիսացավ՝ ուսումնասիրվող ժամանակաշրջանի վերջում գործազրկությունը քաղաքում և աղքատությունը գյուղում լիկվիդացնելու համար։*

*Աշխատության երրորդ գլխում քննության է առնվում էկոնոմիկայի զարգացումը հաջորդ հնգամյակների ընթացքում։ Համապատասխան նյութի վերլուծության հիման վրա հեղինակը տալիս է Հայաստանի էկոնոմիկայի վիճակի պատկերը Հայրենական պատերազմի նախօրյակին։ Նախապատերազմյան հնգամյակների տարիներին արդյունաբերության համախառն արտադրանքն աճեց 18 անգամ, այդ թվում ծանր արդյունաբերության պրոդուկցիան՝ 24,4 անգամ։ Արտադրության միջոցների արտադրության առավել զարգացման հետևանքով ծանր արդյունաբերության տեսակարար կշիռը 1928 թվականի 26,8 տոկոսից 1940 թվականին հասավ 36,4 տոկոսի։*

*Արմատական փոփոխություններ տեղի ունեցան գյուղատնտեսության սոցիալական ու արտադրական ստրուկտուրայում և նրա նյութատեխնիկական բազայում։ Սակայն, գյուղատնտեսության արտադրանքի համեմատությամբ արդյունաբերության արտադրանքի ավելի արագ զարգացման հետևանքով Հայրենական պատերազմի սկզբին ռեսպուբլիկայի ընդհանուր արտադրանքի մեջ արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը կազմում էր 80 տոկոս։*

*Հաջորդ, չորրորդ գլխում նախ վերլուծման է ենթարկվում էկոնոմիկայի վիճակը Հայրենական պատերազմի տարիներին, ցույց է տրվում, թե ինչպես ժողովրդական տնտեսությունը փոխադրվեց ռազմական ռելսերի վրա և թե ինչպես տնտեսության սոցիալիստական սիստեմի շնորհիվ շարունակում էր զարգանալ ռեսպուբլիկայի էկոնոմիկան։*

*Այնուհետև, հետազոտվում է ժողովրդական*



*տնտեսության զարգացումը հետպատերազմյան հնգամյակներին և վերլուծվում են այն տեղաշարժերը, որոնք տեղի են ունեցել հնգամյա պլանների կատարման հետևանքով։ Հինգերորդ հնգամյակի տարիներին, ինչպես ցույց է տրված աշխատության մեջ, շարունակվում էր Հայկական ՍՍՌ-ի հետագա ինդուստրացումը։ Աշխատության մեջ լավ վերլուծված է ռեսպուբլիկայում արտադրության միջոցների արտադրության առավելագույն աճը՝ ինչպես արդյունաբերության նոր ճյուղերի ստեղծման, այնպես էլ եղած ճյուղերի կարողությունների ընդլայնման միջոցով։ Դա հասցրեց հասարակական արտադրության երկու ստորաբաժանումների միջև եղած համամասնության փոփոխմանը և «Ա» խմբի տեսակարար կշռի բարձրացմանը ռեսպուբլիկայի արդյունաբերության ընդհանուր արտադրանքի մեջ։ Աշխատության մեջ բերված տվյալներից երևում է, որ եթե հինգերորդ հնգամյակի չորս տարվա ընթացքում ռեսպուբլիկայի արդյունաբերական ամբողջ պրոդուկցիան ավելացել է 80 տոկոսով, ապա ծանր արդյունաբերության պրոդուկցիան աճել է 2,5 անգամ։*

*Հինգերորդ հնգամյակը նշանավորվեց նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի զարգացման գործում ձեռք բերված նոր հաջողություններով։ Աշխատության մեջ ցույց է տրված, թե գյուղատնտեսության աշխատավորներն ինչպես էին պայքարում գյուղատնտեսական արտադրության վերելքի, կոլտնտեսությունների ամրացման ու եկամուտների ավելացման նպատակով պարտիայի ու կառավարության ձեռնարկած միջոցառումների կենսագործման համար։*

*Հինգերորդ հնգամյակի տարիներին աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակն անշեղորեն բարձրանում էր։*

*Աշխատության վերջում ամփոփելով սովետական ժամանակաշրջանի Հայաստանի էկոնոմիկայի հետազոտության արդյունքները՝ հեղինակը համառոտակի կանգ է առնում ժողովրդական տնտեսության զարգացման վրա վեցերորդ հնգամյակում։*

*Անցնելով աշխատության երկրորդ մասին վերաբերող քննադատական դիտողություններին՝ ամենից առաջ անհրաժեշտ է նշել, որ ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի զարգացումը վերլուծելիս հեղինակին չի հաջողվել բոլոր գլուխներում անհրաժեշտ համամասնություն պահպանել։ Դրա հետևանքով մի շարք գլուխներում տնտեսության որոշ ճյուղերի վերլուծությունը կատարված է թռուցիկ և ո՛չ բոլոր ցուցանիշներով։ Այս տեսակետից աչքի է ընկնում չորրորդ գլուխը, որտեղ ռեսպուբլիկայի էկոնոմիկայի վիճակը Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում և նրա զարգացումը հետպատերազմյան առաջին հնգամյակում տրված է սեղմ և բավականաչափ խոր չի հետազոտված։*

*Աշխատության հեղինակը պատշաճ ուշադրություն չի դարձրել կապիտալ շինարարության հարցերին։ Աշխատության մեջ կապիտալ ներդրումների վերլուծությունը սերտորեն չի շաղկապված ժողովրդական տնտեսության ճյուղերի հետ, իսկ երկու գլխում հեղինակը գրեթե քննության չի առել կապիտալ ներդրումների հարցերը։ Այսպես, առաջին և հինգերորդ գլուխներում անհրաժեշտ էր վերլուծման ենթարկել կապիտալ ներդրումները և ցույց տալ այն հսկայական դերը, որ նրանք խաղացին ռեսպուբլիկայի էկոնոմիկայի վերականգնման ու զարգացման գործում։ Կապիտալ ներդրումներն ուսումնասիրելիս հեղինակը հիմնականում սահմանափակվել է նրանով, որ տվյալներ է բերել այդ ներդրումների չափերի մասին ըստ տնտեսության ճյուղերի, չտալով դրանց ներճյուղային բաշխումն ու վերլուծությունը։ Այս ամենը խոսում է այն մասին, որ կապիտալ շինարարության հարցերը և նրանց ակտիվ դերը սոցիալիստական ընդլայնված վերարտադրության գործում պատշաճ գիտական խորությամբ չեն լուսաբանված։*

*Հեղինակին չի հաջողվել նաև խոր կերպով հետազոտել այն հարցերի կոմպլեքսը, որոնք կապված են ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերի, նրանց դինամիկայի և այն էական ստրուկտուրային փոփոխությունների հետ, որ նրանք կրել են ուսումնասիրվող ժաժամանակաշրջանում։ Ընդ որում հիմնական ֆոնդերի հետազոտությունը կատարված է առանց այն կապելու կապիտալ ներդրումների հետ։ Աշխատությունը շատ կշահեր, եթե այնտեղ վերլուծման ենթարկվեին արդյունաբերության ու գյուղատնտեսության հիմնական ֆոնդերի ստրուկտուրան, նրանց դինամիկան ըստ ուսումնասիրվող ժամանակաշրջանների, թեկուզ և առանձին ձեռնարկությունների գծով ուսումնասիրվեին արտադրական կարողությունների օգտագործման հարցերը և բացահայտվեին չօգտագործված ռեզերվները։*

*Բայց եթե անհրաժեշտ նյութերի բացակայության պատճառով նման հետազոտությունն անցյալ ժամանակաշրջանների վերաբերմամբ կապված է դժվարությունների հետ, ապա հեղինակը, համենայն դեպս, այդ հարցերը պետք է վերլուծեր վերջին ժամանակաշրջանների, թեկուզ հինգերորդ հնգամյակի տարիների կապակցությամբ։*

*Ամբողջ աշխատության մեջ քիչ տեղ է հատկացված տրանսպորտի էկոնոմիկային և նրա առանձին տեսակների զարգացմանը։ Մինչդեռ*

ժողովրդական տնտեսության այդ ճյուղի զարգացմանը պետք էր պատշաճ ուշադրություն հատկացվեր և տնտեսական վերլուծման ենթարկվեին երկաթուղային, ավտոմոբիլային, օդային և տրանսպորտի այլ տեսակների շահագործման ցուցանիշները։ Հարկավոր էր համառոտակի կանգ առնել նաև կապի զարգացման վրա։

Արդյունաբերության ու գյուղատնտեսության արտադրանքի աճը վերլուծելիս հեղինակին ամեն տեղ չէ, որ հաջողվել է ցույց տալ, թե արտադրական-տնտեսական ի՛նչ գործոնների հաշվին է տեղի ունեցել այդ աճը։

Աշխատության մեջ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության ցուցանիշների բացակայության պատճառով երրորդ գլխում վերլուծված չեն գյուղատնտեսական արտադրանքի ավելացման վրա բերքատվության և մթերատվության բարձրացման ունեցած ազդեցության հարցերը։ Սեղմ է տրված արդյունաբերության կոոպերացման ու մասնագիտացման հարցերը, ինչպես և արդյունաբերության աշխատանքի որակական այնպիսի ցուցանիշների վերլուծությունը, ինչպիսիք են արտադրանքի ինքնարժեքի իջեցումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, եկամտաբերության ավելացումը և այլն։

Հեղինակը ռեսպուբլիկայի ապրանքաշրջանառության աճի վերլուծությունը ճիշտ կերպով շաղկապում է աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման հետ։ Բայց դրա հետ միասին նա պետք է վերլուծեր այն արմատական փոփոխությունները, որ քաղաքի ու գյուղի աշխատավորների պահանջմունքների աճման կապակցությամբ տեղի են ունեցել ապրանքաշրջանառության ստրուկտուրայում։

Անտարակույս, ռեսպուբլիկայի տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառում մեծ դեր է խաղացել բյուջետային սիստեմը, և աշխատության գրեթե բոլոր գլուխներում քննության են առնվել պետական բյուջեի վերաբերյալ համապատասխան ցուցանիշները։ Բայց, ինչպես հայտնի է, միութենական ռեսպուբլիկաների, այդ թվում Հայկական ՍՍՌ-ի պետական բյուջեները տերիտորիալ տեսակետից լրիվ չեն արտացոլում եկամուտներն ու ծախսերը, որովհետև դրանց մի մասն իրականացվում է միութենական բյուջեով։ Ահա ինչու, խոսելով ժողովրդական տնտեսության և սոցիալ-կուլտուրական միջոցառումների վրա ռեսպուբլիկայի պետական բյուջեի կատարած ծախսումների ուղղության մասին՝ հեղինակը պետք է վերապահություն աներ այդ տվյալների ոչ լրիվ լինելու մասին, իսկ ավելի լավ կլիներ, եթե դրանց վերաբերյալ համապատասխան թվեր բերեր։

Ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգացումը հինգերորդ հնգամյակում լրիվ չի ընդհանրացված։ Տնտեսության առանձին ճյուղերի զարգացումը վերլուծելիս հեղինակն օգտագործել է հինգերորդ հնգամյակի միայն չորս տարվա արդյունքները։ Բայց, քանի որ գիրքը տպագրության է հանձնվել 1956 թվականին և արդեն պաշտոնական հրապարակված տվյալներ կային հինգերորդ հնգամյակում Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման արդյունքների մասին, հեղինակը պետք է օգտագործեր դրանք իր հետազոտության համար։

Մեր կարծիքով գրախոսվող աշխատության երկու մասերում կան որոշ անհարկի կրկնություններ, ինչպես նաև բոլորովին անհրաժեշտություն չկար ամեն մի գլխից հետո տալ «համառոտ եզրակացություններ»։ Հեղինակը, դժբախտաբար պահանջվածից ավելի, գրքում շոշափում է զուտ պատմագրական նշանակություն ունեցող հարցեր՝ ի հաշիվ տնտեսագիտական մի շարք վերլուծությունների։

Նշված թերությունների մի մասը կարող էր հեշտությամբ վերացվել, եթե գրախոսվող աշխատության երկու մասերի խմբագիրներն ավելի ուշադիր խմբագրեին դրանք։

Վերոհիշյալ քննադատական դիտողությունները աշխատությանը չեն զրկում այն անտարակուսելի արժանիքներից, որ ունի նա։

Հ. Թումանյանին հաջողվել է թեորիական պատշաճ մակարդակով հետազոտել Հայաստանի տնտեսական զարգացումը նախասովետական և սովետական ժամանակաշրջաններում։ Մի ամբողջ շարք հետազոտություններ, հատկապես Հայաստանի նախասովետական ժամանակաշրջանի էկոնոմիկային վերաբերող հետազոտությունները, հեղինակը կատարել է արխիվային նյութերի հիման վրա, և առաջին անգամ դրանց գիտահրապարակումը մամուլում, անկասկած, գիտական մեծ հետաքրքրություն է ներկայացնում։

Հայպետհրատը օգտակար գործ է արել՝ հրատարակելով տվյալ աշխատությունը։ Մեր ընտեսագիտական գրականությունը հարստացավ մի լուրջ աշխատությամբ, որը սովետական ընթերցողներին հնարավորություն կտա ծանոթանալու Հայկական ՍՍՌ-ի էկոնոմիկայի հետ։

Դ. ՇԱՔԱՐՅԱՆ

# ՆՈՐ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆ ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ՄԱՍԻՆ

Հրապարակի վրա է Ս. Ղալթախչյանի «Ս. Գ. Շահումյանի պայքարը լենինիզմի թեորիայի ու տակտիկայի համար» գիրքը*), որը լույս է տեսել ռուսերեն լեզվով Մոսկվայում։

Այս գրքում հեղինակը հանգամանորեն վերլուծում է Ստ. Շահումյանի թեորիական խոշոր ժառանգությունը և համոզիչ կերպով ցույց է տալիս, որ Շահումյանը ոչ միայն ականավոր պարտիական ու պետական պրակտիկ գործիչ է եղել, այլև՝ պարտիայի խոշոր տեսաբան։ Ի մի բերելով փաստական նյութերը՝ նա կարողացել է լուսաբանել Շահումյանի վճռական պայքարը գիտական կոմունիզմի գաղափարների հաղթանակի համար, և ցույց տալ, որ նա ոչ միայն պրոպագանդել, այլև Անդրկովկասի պայմաններում ստեղծագործաբար կիրառել է մարքսիզմ-լենինիզմի թեորիական դրույթները։ Ամբողջ մենագրության միջով կարմիր թելի պես անցնում է այն միտքը, որ նրա ամբողջ կյանքն ու ռևոլյուցիոն գործունեությունը անխզելիորեն կապված է ցարիզմի ու կապիտալիզմի դեմ լենինյան պարտիայի մղած հերոսական պայքարի հետ։

Գրախոսվող աշխատության առաջին գլուխը նվիրված է Ստ. Շահումյանի ռևոլյուցիոն գործունեության վաղ շրջանին։ Հեղինակը ընդհանուր գծերով լուսաբանել է XIX դ. վերջի ու XX դ. սկզբների հայ իրականության սոցիալ-տնտեսական գոյավիճակը, հասարակական-քաղաքական հոսանքները։ Նա ցույց է տվել, որ Անդրկովկասում կապիտալիզմի զարգացման հետ մեկտեղ սրվել էր դասակարգային հակասությունները, աճում էր երկրամասի աշխատավորության ռևոլյուցիոն շարժումները։ XIX դարի վերջում Անդրկովկասում առաջացած մարքսիստական խմբերն ու խմբակները առաջին քայլերն էին անում երկրամասում մարքսիզմը տարածելու, բանվորական շարժումը գիտական սոցիալիզմի հետ միացնելու ուղղությամբ։

1902 թվականին Շահումյանի ակտիվ մասնակցությամբ Թիֆլիսում կազմակերպվեց առաջին հայկական մարքսիստական կազմակերպությունը՝ «Հայ սոցիալ-դեմոկրատների Միությունը»։ «Հայ սոցիալ-դեմոկրատների Միության» հրապարակած Մանիֆեստում, որը Վ. Ի. Լենինի բարձր գնահատականին է արժանացել, ասված էր, որ անհրաժեշտ է պրոլետարիատի մեջ դասակարգային ինքնագիտակցություն զարգացնել, Ռուսաստանի բոլոր ազգությունների պրոլետարներին համախմբել մեկ միասնական ինտերնացիոնալ դրոշի ներքո, բանվորական շարժումը միացնել գիտական սոցիալիզմի հետ։ Մանիֆեստում ընդգծվում էր, որ պրոլետարիատի ազատագրությունը կապիտալիզմի կապանքներից անհնարին է ռեֆորմների ճանապարհով, և միայն սոցիալական ռևոլյուցիան կարող է վերացնել շահագործման ու ճնշման վրա հիմնըված գոյություն ունեցող կարգը։

Հեղինակը նշում է, որ այդ տարիներին Շահումյանը շատ մեծ աշխատանք կատարեց մարքսիզմի հիմնադիրների աշխատությունների մասսայականացման ուղղությամբ։ Մասնավորապես արտասահմանում, Բեռլինի համալսարանում ուսանելիս, Շահումյանը թարգմանում է հայերեն Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «Կոմունիստական պարտիայի մանիֆեստը», Կ. Մարքսի «Վարձու աշխատանքը և կապիտալը», ՌՍԴԲՊ Ծրագիրը և այլն։ 1903 թվականի գարնանը Շվեյցարիայում տեղի ունեցավ Ստ. Շահումյանի հանդիպումը Վ. Ի. Լենինի հետ. Ս. Ղալթախչյանը միանգամայն իրավացի ընդգծում է, որ այդ հանդիպումը կարևորագույն նշանակություն ունեցավ Շահումյանի հետագա ամբողջ գործունեության համար։ ՌՍԴԲՊ II համագումարից հետո վճռականորեն կանգնելով բոլշևիկ-լենինյանների կողմը՝ նա անհաշտ պայքար է մղել մենշևիկների և բանվորական շարժման մեջ օպորտունիզմի բոլոր տարատեսակների դեմ։

Աշխատության երկրորդ գլխում տրված է սոցիալիզմի թեորիական հիմունքների պաշտպանությունն ու պրոպագանդան Ստ. Շահումյանի կողմից, նրա վճռական պայքարը հայկական նացիոնալիստական պարտիաների, և հատկապես «դաշնակցություն» պարտիայի իդե-

*) С. Т. Калтахчян.—„Борьба С. Г. Шаумяна за теорию и тактику ленинизма“, Госполитиздат, Москва, 1956 г. стр. 222.

ողոգների հակագիտական, հակառևոլյուցիոն «թեորիական» ձեռնածությունների դեմ։ Այնուհետև, գրքում համոզիչ կերպով ցույց է տրվում, թե ինչպես նա մերկացրել է մախիզմի փիլիսոփայության արատավորությունն ու ռեակցիոնությունը, որի նպատակն էր մթագնել աշխատավորների գիտակցությունը, պրոլետարիատին շեղել իր ազատագրական պայքարի ճիշտ ճանապարհից։ Իր աշխատություններում Շահումյանը մերկացրել է հասարակության զարգացման հակագիտական ու ռեակցիոն կոնցեպցիաները, քննադատել է հայ բուրժուական պատմագրության մեջ տիրապետող կղերական-ֆատալիստական, սուբյեկտիվիստական թեորիաներն ու սկզբունքները, որոնք հայ ժողովրդի պատմությունը հանգեցրել են թագավորների, զորավարների, իշխանների գործունեության փառաբանմանը։ Ցույց տալով հասարակության պատմական զարգացման այդ բացատրության արատավորությունն ու գիտականորեն անհիմն լինելը, պրոպագանդելով ու հիմնավորելով մարքսիստական դրույթները պատմության մեջ ժողովրդական մասսաների խաղացած վճռական դերի մասին, Ստ. Շահումյանը հայ պրոլետարիատին զինում էր պատմական պրոցեսի ճիշտ ըմբռնմամբ, իր ուժի և պատմական միսիայի գիտակցությամբ, ընդգծում էր, որ պատմությունն ստեղծում է ոչ թե «... առանձին հերոսների մենամարտությունը, այլ հենց սոցիալ-դեմոկրատական գիտակցության լույսով սպառազինվող բանվորական մասսաների պայքարը» (Ստ. Շահումյան, «Ընտիր երկեր», 1902—1918 թթ., Երևան, 1948 թ., էջ 261)։

Շահումյանի աշխատություններում կարևորագույն տեղ է գրավում դասակարգային պայքարի և ռևոլյուցիայի մարքսիստական դրույթների պրոպագանդան։ Գրախոսվող գրքում մանրամասնորեն վերլուծվում են Շահումյանի մի շարք տեսական աշխատությունները, որոնց մեջ նա մարքսիստական դիրքերից քննարկում է դասակարգերի ծագման հարցերը, դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի թեորիական դրույթները ստեղծագործաբար կիրառելով բանվոր դասակարգի դասակարգային պայքարի ու սոցիալիստական ռևոլյուցիայի կոնկրետ խնդիրների նկատմամբ, ապացուցում է կոմունիզմի հաղթանակի օրինաչափությունն ու անխուսափելիությունը։ Իր «Էվոլյուցիոնիզմն ու ռևոլյուցիոնիզմը հասարակական գիտության մեջ» փայլուն հոդվածում Շահումյանը վճռական քննադատության է ենթարկում միջազգային օպորտունիզմի լիդերներից մեկին՝ Բեռնշտայնին և բուրժուական գիտնական Զոմբարտին, որոնք ժխտելով պրոլետարական ռևոլյուցիան, տիրող կարգերի դեմ ռևոլյուցիոն պայքարի անհրաժեշտությունը, բանվոր դասակարգին մղում էին բուրժուական ռեֆորմների ուղին։

1905—1907 թվականների ռուսական ռևոլյուցիայի ժամանակաշրջանում բոլշևիկների լենինյան թեորիայի ու տակտիկայի իրականացման համար Ստ. Շահումյանի մղած պայքարին է նվիրված աշխատության երրորդ գլուխը։ Այստեղ հեղինակին հաջողվել է ցույց տալ, թե ինչպես ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին Շահումյանը ամենաակտիվ գործունեություն է ծավալել, դրսևորելով բանվորների ու գյուղացիների քաղաքական ղեկավարի երևելի հատկություններ և ականավոր տեսաբանի ու հրապարակախոսի մեծ տաղանդ։

Ս. Ղալթախչյանը գրում է, թե ինչպես պաշտպանելով լենինյան տակտիկան գյուղացիության նկատմամբ, Շահումյանը պրոպագանդում էր այն գաղափարը, որ ռևոլյուցիայի հաղթանակի անհրաժեշտ պայմաններից մեկն է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը։ Վճռականորեն քննադատելով մենշևիկների դիրքը, որոնք ժխտում էին գյուղացիության ռևոլյուցիոն հնարավորությունները, նա պարզաբանում էր, որ ցարիզմի լծի տակ տնքացող Ռուսաստանի բազմաչարչար գյուղացիությունը պրոլետարիատի միակ հավատարիմ դաշնակիցն է բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ։ Այնինչ, ռուսական բուրժուազիան, ձգտելով պահպանել ցարիզմը՝ որպես բանվորների ու գյուղացիների ռևոլյուցիոն շարժման դեմ ուղղված մարակ, հանդես եկավ որպես հակառևոլյուցիոն, ռեակցիոն ուժ։

Հեղինակը մանրամասնորեն անդրադառնում է ռեակցիայի տարիներին Շահումյանի գործունեությանը, երբ նա փոխադրվելով Բաքու, Անդրկովկասի բոլշևիկների մյուս ղեկավարների հետ միասին վճռական պայքար էր մղում իրականացնելու լենինյան ցուցումները՝ բանվոր դասակարգին, բոլոր աշխատավորներին համախմբելով բոլշևիկների պարտիայի դրոշի ներքո։

Ստ. Շահումյանը հատուկ նշանակություն էր տալիս բուրժուական նացիոնալիզմի դեմ մղվող պայքարին, ազգային հարցի վերաբերյալ կոմունիստական պարտիայի թեորիայի ու ծրագրի պաշտպանությանը, պրոպագանդային ու հիմնավորմանը։ Գրքում վերլուծվում է այն ներդրումը, որ արել է Շահումյանը ազգային հարցի հիմնական պրոբլեմները պարտիայի կողմից մշակելու գործում։ Իրավացի կերպով հեղինակը նշում է, որ ազգային հարցում Ստ. Շահումյանի հայեցակետի ձևավորման գործում կարևոր նշանակություն ունեցավ նրա նամակագրությունը Վ. Ի. Լենինի հետ, որի ընթացքում այլ հարցերի հետ մեկտեղ քննարկվել են պար-



տիայի ծրագրային հիմնական պրոբլեմները ազգային հարցի մասին։ Շահումյանի գրչին են պատկանում այդ հարցի մասին մի շարք տեսական աշխատություններ։ Հեղինակը ցույց է տալիս, որ «Ազգային հարցը և սոցիալ-դեմոկրատիան» աշխատության մեջ (1906 թ.) Շահումյանը մարքսիստական դիրքերից հետազոտել է ազգի ծագման և էության, ազգային շարժումների հարցերը, վճռականորեն մերկացրել բուրժուա-նացիոնալիստական սոցիոլոգիայի հակագիտական բնույթը։ Բուրժուական նացիոնալիզմի դեմ մղած պայքարում խոշոր նշանակություն է ունեցել նրա «Կուլտուրական-ազգային ավտոնոմիայի մասին» աշխատությունը (1914 թ.), որ ուղղված էր հայ մոլի նացիոնալիստներից մեկի՝ Դ. Անանունու դեմ։

Գրախոսվող գրքում ընդգծվում է, որ Ստ. Շահումյանը պաշտպանելով ազգերի ինքնորոշման իրավունքը, Անդրկովկասի բազմազգ պրոլետարիատին կոչ էր անում ավելի սերտ համախմբվել ռուս պրոլետարիատի հետ, որովհետև միայն Ռուսաստանի բոլոր ազգերի պրոլետարների միությունն ու միասնական պայքարը Անդրկովկասի ժողովուրդներին կարող էր հասցնել ազգային ու սոցիալական ազատագրության։

Մի ամբողջական գլուխ է նվիրված Շահումյանի կողմից լենինյան թեորիայի, ստրատեգիայի ու տակտիկայի պաշտպանությանը՝ պրոլետարիատի դիկտատուրայի համար բոլշևիկների մղած պայքարի ժամանակաշրջանում։ Ընթերցողի առջև կանգնում է ականավոր ռևոլյուցիոների բեղուն գործունեության պատկերը փետրվարյան բուրժուական-դեմոկրատական ռևոլյուցիայից հետո։ Այդ ժամանակաշրջանի իր բազմաթիվ հոդվածներում ու ելույթներում Շահումյանը վճռականորեն մերկացրել է ժամանակավոր կառավարության հակառևոլյուցիոն էությունը, պայքարել բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստականի վերաճելու լենինյան թեորիայի կենսագործման համար։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մի նոր դարաշրջան բացեց մարդկության պատմության մեջ։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ալիքներն արագորեն տարածվեցին և հասան նաև Անդրկովկաս, աշխատավորների մեջ ռևոլյուցիոն նոր վերելք առաջացրին։ Անդրկովկասի բոլշևիկները Ստ. Շահումյանի գլխավորությամբ ղեկավարում էին երկրամասի ժողովուրդների պայքարը հանուն Անդրկովկասում Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի։

Գրքի վերջին գլուխը նվիրված է Շահումյանի այն պայքարին, որ նա մղել է Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայից հետո լենինիզմի հաղթանակի համար։ Այստեղ հեղինակը վերլուծում է Անդրկովկասի պրոլետարիատի պայքարի այն առանձնահատկությունները, որոնք բխում էին երկրամասի սոցիալ-տնտեսական իրավիճակից, նրա բնակչության բազմազգ կազմից, բուրժուա-նացիոնալիստական պարտիաների հակառևոլյուցիոն ակտիվ գործունեությունից, որոնք ձգտում էին Անդրկովկասն անջատել Սովետական Ռուսաստանից։ Հեղինակը անդրադարձել է այդ ժամանակաշրջանում Ստ. Շահումյանի այն բազմաթիվ հոդվածներին, ելույթներին, որոնցով նա կոչ էր անում տապալել հակառևոլյուցիոն բուրժուա-նացիոնալիստական պարտիաների տիրապետությունը, ցույց տալով, որ այդ պարտիաների հակաժողովրդական քաղաքականության նպատակն է Անդրկովկասը դարձնել ռևոլյուցիայի դեմ Արևմուտքի իմպերիալիստների պլացդարմը։

Ս. Ղալթախչյանը ցույց է տալիս, թե ինչպես Ստ. Շահումյանը և Բաքվի բոլշևիկները պայքարում էին մի շարք սոցիալիստական միջոցառումների իրականացման, աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության համար, մերկացնում էին էսեռների, մենշևիկների ու դաշնակների այն պահանջի հակառևոլյուցիոն դավաճանական էությունը, երբ նրանք, որպես թե թյուրքերի արշավանքը կասեցնելու համար, խնդիր էին դնում անգլիացիներին Բաքու հրավիրել։ Վ. Ի. Լենինը բարձր է գնահատել Բաքվի բոլշևիկների անհաշտ պայքարը անգլիացիներին հրավիրելու դեմ։ «Անգլո-ֆրանսիական իմպերիալիստների հետ որևէ համաձայնություն կընքելուց վճռականորեն հրաժարվելը,— ասում էր նա,— Բաքվի ընկերների միակ ճիշտ քայլն է, քանի որ չի կարելի նրանց հրավիրել, առանց ինքնուրույն սոցիալիստական իշխանությունը, թեկուզ և կտրված տերիտորիայում, վերածելու իմպերիալիստական պատերազմի ստրուկի» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 28, էջ 9)։

Անկասկած Ս. Ղալթախչյանի «Ս. Գ. Շահումյանի պայքարը լենինիզմի թեորիայի ու տակտիկայի համար» գիրքը, որը քրտնաջան ու բարեխիղճ աշխատանքի արդյունք է, արժանի է ուշադրության։ Սակայն, դժբախտաբար, այս արժեքավոր գիրքը զուրկ չէ առանձին թերություններից, անճշտություններից։

Ամենից առաջ, ցանկալի կլիներ, որ հեղինակը ավելի հստակ բնութագրեր XIX դարի վերջի և XX դ. սկզբի հայ հասարակական-քաղաքական հոսանքները, պարտիաները, կազմակերպություններն ու խմբերը, ցույց տար նրանց պատմական տեղը։

Իր աշխատության 131-րդ էջում Ղալթախչյանը գրում է, թե 1913—1914 թվականներին Վ. Ի. Լենինի հետ ունեցած նամակագրություններում Ստ. Շահումյանը ֆեդերացիան դիտում էր որպես Ռուսաստանի պետական կառուցված-

քի նպատակահարմար ձև: Մեզ թվում է, որ պետական ֆեդերացիայի նկատմամբ Շահումյանի վերաբերմունքի այսպիսի լուսաբանումը ճիշտ չէ: Շահումյանի ամբողջ գրական ժառանգության ուշադիր ուսումնասիրությունը հանգեցնում է այն հետևության, որ նա երբեք ֆեդերալիզմի սկզբունքային կողմնակից չի եղել, այլ կանգնած է եղել այն տեսակետի վրա, որ պարտիան կարող է ֆեդերացիա թույլ տալ միայն առանձին, բացառիկ դեպքերում: Դրա մասին Շահումյանը պարզ ու որոշ գրում է 1914 թվականի ապրիլի 30-ին Վ. Ի. Լենինին ուղղած իր նամակում:

Աշխատության վեցերորդ գլխում (էջեր՝ 163, 168) հարևանցիորեն խոսվում է 1917 թվականի վերջում Անդրկովկասում առկա ռևոլյուցիոն իրադրության և պարտիայի Թիֆլիսի Կոմիտեի սխալների մասին, որը չկարողացավ օգտվել այդ իրադրությունից: Սա շատ խիստ կարևոր հարց է: Մեր կարծիքով լավ կլիներ, եթե ընդհանուր հայտարարության փոխարեն հեղինակը մանրամասն կանգ առներ այդ հարցի վրա և, համենայն դեպս, մանրամասն լուսաբաներ Շահումյանի տեսակետն այս հարցի մասին:

Դժբախտաբար, հեղինակն իր աշխատության մեջ չի օգտագործել Շահումյանի կողմից Վ. Ի. Լենինին ուղղված մի շարք անչափ հետաքրքիր նամակներ, որոնք Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարությունը Վ. Ի. Լենինի Կրակովյան արխիվի նյութերի հետ հանձնել է ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-Լենինիզմի ինստիտուտին:

Գրքում ամենևին չի հիշատակվում Ստ. Շահումյանի «Մեր տարաձայնությունները» վերնագրով ռեֆերատը, որ նա գրել է Բեռլինում եղած տարիներին, և որը մեզ չի հասել, սակայն դրա մասին հիշատակված են Շահումյանի մասին եղած մի շարք հուշերում: Ոչինչ չի ասված նաև այն մասին, որ Ստ. Շահումյանը կարճ ժամանակով եղել է «Պրավդա»-ի խմբագիրը (1913 թ.):

Բացի սրանցից, գրքում կան և մի շարք անճշտություններ: Օրինակ, 16-րդ էջում հեղինակը նշում է, թե «Հայ սոցիալ-դեմոկրատների» Մանիֆեստը գրել է Ստ. Շահումյանը, մինչդեռ հայտնի է, որ այդ մանիֆեստի կազմելուն, բացի Շահումյանից, մասնակցել են նաև Բ. Կնունցը, Ս. Խանոյանը, Ա. Զուրաբյանը և ուրիշները: 215-րդ էջում նշվում է, թե անգլիացիների ներկայացուցիչները Բաքու են ժամանել օգոստոսի 8-ին և 17-ին, փոխանակ ասելու 4-ին և 17-ին և այլն:

Վերոհիշյալ աննշան թերությունները չեն նսեմացնում աշխատության անհերքելի արժանիքները:

Ս. Ղալթախչյանի այս գիրքը մի նոր քայլ է Ստ. Շահումյանի գիտական-տեսական ժառանգության ուսումնասիրության գործում:

Յու. ՄԽԱՎՅԱՆ



# ՔԱՂԱՔԱՅԻՆ ԹԵՐԹԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԽՆԴԻՐԸ

Կիրովականը (նախկին աննշան գյուղաքաղաք Ղարաքիլիսան) աճում ու զարգանում է աննախընթաց տեմպերով: Անտառապատ լեռների լանջերում փռվել է տուֆակերտ, կանաչի մեջ թաղված սոցիալիստական նոր քաղաքը, որի սահմաններն արդեն մոտենում են Ծղանով և Խնձորուտ գյուղերին: Բարեկարգ ու գեղեցիկ է ռևոլյուցիայի արիուն Կիրովի անվան քաղաքը՝ սովետահայ ճարտարապետական մտքի իր գրավիչ կառույցներով: Նա դարձել է ռեսպուբլիկայի ինդուստրիալ և կուլտուրական մեծ կենտրոններից մեկը. միայն վերջին տասնամյակում այստեղ ստեղծվել են արդյունաբերական բազմաթիվ խոշոր օջախներ, կառուցվել են հարյուրավոր հասարակական և բնակելի գեղեցիկ շենքեր, բացվել են լայնարձակ նոր փողոցներ:

Կիրովականը փայտամածների մեջ է: Քաղաքի տարբեր մասերում կառուցվում են արդյունաբերական, կոմունալ ու կենցաղային նոր բազմահարկ շենքեր: Միայն մեկ տարում, անցած 1956 թվականին պետական միջոցներով կառուցվել ու շահագործման է հանձնվել մոտ 5700 քառ. մետր բնակելի տարածություն, ասֆալտապատվել ու բարեկարգվել է ավելի քան 120 հազար քառակուսի մետր մայթ ու փողոց, ծաղկապատվել ու կանաչապատվել է 11 հեկտար տարածություն: Այստեղ մեծ ծավալ է ստացել նաև անհատական բնակարանային շինարարությունը. երկու տարում իրենց սեփական նորակառույց բնակարանները փոխադրվեցին 290 քաղաքացի, կառուցման ընթացքի մեջ է 800 տուն: 1956 թվականին շահագործման հանձնըվեց երկաթ-բետոնի հավաքովի կոնստրուկցիաների գործարանը, իր գործունեությունն սկսեց համամիութենական «Ավտոմատիկա» գիտահետազոտական ինստիտուտը, բացվեցին առողջապահական, կուլտուրական և առևտրական մի շարք նոր օբյեկտներ:

Շինարարական աշխատանքները նոր թափով են ծավալվում նաև այս տարի: 1957 թվականին ավելի շատ բնակարաններ են կառուցվելու, քաղաքի բարեկարգման նպատակների համար ավելի շատ միջոցներ են ծախսվելու: Եվ այդ ամենը արվում է աշխատավորների, նրանց աճող կարիքների ու պահանջների առավել բավարարման համար:

Մտահոգված քաղաքի բարեկարգման ու շենացման, նրա բնակչության կուլտուրական, կոմունալ-կենցաղային սպասարկման գործի լավագույն կազմակերպման հարցերով, ՀԿՊ Կիրովականի քաղաքային կոմիտեի և աշխատավորների դեպուտատների քաղսովետի օրգան «Կայծ» թերթը իր էջերում պարբերաբար արծարծում է այդ հարցերը, տպագրելով բազմաթիվ հոդվածներ, թղթակցություններ, ինֆորմացիաներ: Նա իր ընթերցողներին իրազեկ է պահում աշխատավորների կյանքի ու կենցաղի հետագա բարելավման վերաբերյալ ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կենսագործման՝ ընթացքին, տեղական կյանքից վերցված կոնկրետ օրինակներով ու փաստերով պատմում է ժողովրդի կենսական կարիքների ու պահանջների նկատմամբ պարտիայի ու կառավարության մեծագույն հոգատարության մասին:

«Մեր քաղաքի առօրյան» վերնագրի տակ «Կայծ»-ը հետաքրքրական ինֆորմացիաներ է տպագրում քաղաքի բարեկարգման, բնակարանային շինարարության, բնակչության կոմունալ-կենցաղային սպասարկման, կուլտուրական առևտրի կազմակերպման հարցերի վերաբերյալ: Նա իր նյութերով պատմում է քաղաքաշինության առաջավորների աշխատանքի փորձի մասին, խրախուսում բարեկարգման ուղղությամբ ձեռնարկվող նախաձեռնությունը: Այդ տեսակետից հաջող են գրված «Հարազատ քաղաքի բարեկարգման համար» ընդհանուր խորագրով էջը, ուր պատմվում է, թե կիրակնօրյակների միջոցով ինչպես են բարեկարգվում ու կանաչապատվում արդյունաբերական և բնակելի շենքերի շրջակայքը, ինչպես նաև «Մաքուր պահել, կանաչազարդել քաղաքը», «Հաճելի է այստեղ ճաշել», «Լայն թափ բարեկարգման աշխատանքներին» հոդվածները և այլն: Լավ է կարգացվում «Նոր բնակարաններում» ռեպորտաժը՝ լուսանկարներով: Դժբախտաբար նման նյութեր դեռևս քիչ են երևում թերթի էջերում:

Բնակարանային շինարարության, բարեկարգման, աշխատավորների կոմունալ-կենցաղային աճող պահանջների բավարարման ուղղությամբ կան լուրջ թերություններ, վրիպումներ. անցյալ տարի քաղաքի բնակչությունը կառուցողնե-

թերթը զբաղվել է պարբերաբար, բազմաթիվ առաջնորդողներ ու հոդվածներ է տպագրել, սակայն արդյունքներն այնքան էլ փայլուն չեն։

Թերակատարվել են բնակարանային շինարարության պլանները, չնայած թերթը բազմիցս քննադատության է ենթարկել «Հայքիմարդշինի» տեղամասի և № 7 շինտրեստի աշխատանքը։ Քննադատական քիչ նյութեր չեն տպագրվել նաև Քիմիական կոմբինատի կուլտուրայի պալատի շինարարության ձգձգման մասին, բայց այդպես էլ մինչև օրս այն չի հանձնվել շահագործման։ Թերթի օպերատիվությունը նրա կազմակերպչական նախաձեռնության մեջ է։ Որևէ խնդրի մասին խոսելն ու տպագրելը գործի սկիզբն է միայն։ Թերթը չպիտի թույլ տա, որ իր բարձրացրած հարցերը, մանավանդ նրանցից ամենաէականները, մնան չլուծված։ Այդ դեպքում մենք կունենայինք ավելի դրական արդյունքներ, ավելի մեծ նվաճումներ։

Պետք է նշել, որ «Կայծ»-ը քիչ է զբաղվել անհատական բնակարանային շինարարության հարցերով։ Տարվա ընթացքում մի երկու փոքր թղթակցություն է տպագրել, որ քիմիագործները կառուցում են անհատական բնակարաններ, ստանում են վարկ, շինանյութեր, հողամաս և այլն։

Պարտիան այժմ խիստ մեծ կարևորություն է տալիս բանվորների ու ծառայողների նախաձեռնությանը՝ բնակարանային շինարարության ծավալման ասպարեզում։

Քիմկոմբինատը այդ ուղղությամբ լավ փորձ ունի և մեծ հաջողություններ։ ՍՍՌՄ Քիմիական արդյունաբերության մինիստրությունն անհատական ու կոոպերատիվ բնակարանային շինարարության համար կոմբինատին 1956 թվականին բաց էր թողել 750 հազար ռուբլի վարկ։ Քիմկոմբինատի վարչությունը 1956 թվականին անհատական բնակարան կառուցողներին բաց է թողել 500 խորանարդ մետր շինանյութ, 4000 խոր. մետր տուֆ, 70 տոննա տանիքի թիթեղ, 9000 սարոշիֆեր, փոխադրական միջոցներ և այլն։

Կարևորն այստեղ այն է, որ Քիմկոմբինատի դիրեկցիան, պարտիական և պրոֆմիութենական կազմակերպությունները բնակարանային շինարարության մեջ են ներգրավել բանվորներին և ծառայողներին, շինարարական օգտավետ գործի մեջ են դրել նրանց խնայողություններն ու անձնական անմիջական աշխատանքը։ «Կայծ»-ը անհրաժեշտ կարևորություն չտալով անհատական բնակշինարարությանը՝ չի լուսաբանել նրա ընթացքը, Քիմկոմբինատի փորձը դեռ օրինակ չի դարձել մյուս ձեռնարկությունների համար։

Այժմ ՍՍՌՄ բազմաթիվ քաղաքներում խոշոր գործարանների ու հանքերի բանվոր-ծառայողներն ակտիվորեն լծվել են բնակարանային շինարարության գործին։ Գործարաններն իրենց մնացուկներից նոր շինանյութեր են ստեղծում, բանվորներն իրենց ազատ ժամերին իրենց համար կառուցվող շենքի վրա են աշխատում, պետական միջոցներով կառուցվող շենքերից բացի, շատ շենքեր են կառուցվում ձեռնարկությունների բանվոր-ծառայողների սեփական ուժերով։ Այդ տեսակետից լավ է թերթի այս տարվա համարներից մեկում զետեղված Մոսկվայի մարզի գործարաններից մեկի դիրեկտորի՝ «Սեփական ուժերով» հոդվածը, ուր խոսվում է անհատական բնակարանային շինարարության իրենց փորձի մասին։

Թերթն իր էջերում լայն տեղ պետք է տա բնակարանային շինարարության և բարեկարգման աշխատանքներում բանվորների ու ծառայողների նախաձեռնության, նրանց նյութական ու աշխատանքային մասնակցության, այդ գործի համար տեղական լրացուցիչ միջոցների, ռեզերվների հայտաբերման, կառուցողական աշխատանքների ինդուստրացման հարցերին։ Մեր կարծիքով հարկ կլինի զբաղվել այն հարցով, թե անհատական բնակարանային շինարարության այն ձևը, որն այժմ կիրառվում է Կիրովականում, գուցե անհրաժեշտ լինի փոխարինել աշխատավորների կողմից միացյալ ուժերով խոշոր շենքերի կառուցմամբ։

Կիրովականի քաղաքային թերթը սկսել է ավելի մոտիկից, ավելի ուշադիր կերպով լուսաբանել քաղաքի բարեկարգման, բնակարանային շինարարության և բնակչության կոմունալ-կենցաղային բարելավման հարցերը։ Թերթի կատարած աշխատանքը արժանի է խրախուսանքի և ուշադրության։

Կյանքը նոր խնդիրներ է առաջադրում աշխատավորների կոմունալ-կենցաղային, կուլտուրական սպասարկման գործի բարելավման, նրանց կենսական պահանջների բավարարման ուղղությամբ։ «Կայծ» թերթը պետք է կարողանա իր էջերում ժամանակին ու խելացի կերպով բարձրացնել այդ հարցերը, դրանով իսկ օգնել Կիրովականի պարտիական, սովետական և տնտեսական կազմակերպություններին՝ առավել չափով բավարարում տալու բնակչության կենսական պահանջներին։

---



# ԴԻՍԿՈՒՍԻԱ ԱՐԺԵՔԻ ՕՐԵՆՔԻ ԵՎ ԳՆԱԳՈՅԱՑՄԱՆ ՀԱՐՑԻ ՄԱՍԻՆ

Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Տնտեսագիտության ինստիտուտի Գիտական խորհրդի ընդլայնված նիստում վերջերս քննարկվեց տնտեսագիտական գիտությունների թեկնածու Մ. Ադոնցի զեկուցումը՝ նվիրված «Արժեքի օրենքի և գնագոյացման հարցերը ՍՍՌՄ-ում» թեմային։

Քննարկմանը մասնակցեցին Երևանի բարձրագույն ուսումնական հաստատությունների մարքսիզմ-լենինիզմի և քաղաքատնտեսության ամբիոնների դասախոսներ, գիտահետազոտական ինստիտուտների գիտաշխատողներ, Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պետական Պլանային Հանձնաժողովի, Կենտրոնական վիճակագրական Վարչության աշխատակիցներ և այլ կազմակերպությունների տնտեսագետներ։

Գիտությունների Ակադեմիայի Տնտեսագիտության ինստիտուտի դիրեկտոր ընկ. Ա. Մարուխյանն իր ներածական խոսքում նշեց, որ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը մի շարք հարցեր բարձրացրեց, որոնք խոշոր նշանակություն ունեն մարքսլենինյան տնտեսագիտական տեսության հետագա զարգացման համար, և որոնց ճիշտ ըմբռնումը դրականորեն կանդրադառնա սոցիալիստական էկոնոմիկայի հետագա զարգացման վրա։

Այդ հարցերից մեկը արտադրության սոցիալիստական պլանավորման, գների սահմանման բնագավառում արժեքի օրենքը օգտագործելու հարցն է։

Ահա դրա համար մենք գտնում ենք, որ արժեքի օրենքի գործողության ոլորտը ճիշտ բնորոշելը սոցիալիստական արդյունաբերության զարգացման համար գործնական խոշոր նշանակություն ունի։ Մանավորապես մեծ է նրա նշանակությունը ժողովրդական տնտեսության պլանավորման ու գների քաղաքականության հարցերում։ Հայտնի է, որ այդ հարցը երկար ժամանակ քննարկվել է, բայց անհրաժեշտ պարզություն չի ստացել։ Եղել են դեպքեր, երբ արժեքի օրենքը արհամարհվել է կամ գերագնահատվել, շատ դեպքերում գները սխալ սահմանելու հետևանքով անհամամասնություն է առաջացել առանձին մթերքների գների միջև և մեծ վնաս հասցվել ժողովրդական տնտեսության զարգացմանը։

Ընկ. Մ. Ադոնցն իր զեկուցման մեջ նշեց, որ մինչև վերջերս մեր տնտեսագիտական գրականության մեջ հստակ մեկնաբանություն չեն ստացել ապրանքային արտադրության և արժեքի օրենքի հետ կապված մի շարք հարցեր, որոնք բացասաբար են անդրադարձել տնտեսական շինարարության պրակտիկայում՝ արժեքային կատեգորիաների ճիշտ օգտագործման վրա։ Որոշ տնտեսագետներ թերագնահատում էին արժեքային կատեգորիաների դերը և ընդհակառակը՝ գերագնահատում նատուրալ ցուցանիշների նշանակությունը տնտեսության զարգացման գործում։

Այսպիսով, արհեստականորեն սահմանափակվում էր ապրանքային արտադրության և արժեքի օրենքի գործողության ոլորտը, արժեքի օրենքը սոցիալիզմի պայմաններում համարում էին միայն շրջանառության օրենք և գտնում էին, որ փողն ընդհանուր արժեքի դեր է կատարում միայն անձնական սպառման առարկաների արտադրության և իրացման բնագավառում։

Վերլուծելով ապրանքային տնտեսության և արժեքի օրենքի վերաբերյալ մեզ մոտ մինչև օրս տիրապետող այն տեսակետը, ըստ որի սոցիալիզմի շրջանում արտադրության միջոցները ապրանք չեն հանդիսանում, այլ միայն պահպանում են ապրանքների սոսկ արտաքին թաղանթը, և որ սոցիալիզմի ժամանակ ապրանքային արտադրության ոլորտը սահմանափակվում է միայն անձնական սպառման առարկաների արտադրությամբ, զեկուցողն ասում է, որ եթե սոցիալիստական վերարտադրությունը մեկ միասնական պրոցես է, որն անժխտելի է, ապա պարզ է, որ արտադրության բոլոր ճյուղերում էլ պետք է գոյություն ունենան ծախսված հասարակական աշխատանքի չափակցման ու արտահայտման մեկ միասնական ձև, որը տվյալ դեպքում

հանդիսանում է աբստրակտ աշխատանքը, արժեքը և նրա ձևերը։

Քանի որ սոցիալիստական հասարակարգում արտադրության միջոցներն ունեն սպառողական արժեք և արժեք, հետևապես նրանք ապրանք են հանդիսանում ո՛չ միայն արտաքին ձևի տեսակետից, այլև ըստ էության։ Պնդել, որ կարող է գոյություն ունենալ արժեք առանց ապրանքի, նշանակում է մեղանչել մարքս-լենինյան քաղաքատնտեսության դեմ։

Սոցիալիստական հասարակարգում արժեքի օրենքը գործում է թե շրջանառության և թե արտադրության ոլորտներում։ Այդ օրենքը որոշ սահմաններում կարգավորիչի դեր է կատարում շրջանառության ոլորտում, ամենից առաջ հանդիսանում է գների գլխավոր կարգավորիչը, իսկ դա նշանակում է, որ տարբեր ապրանքների գները սահմանվում են՝ հաշվի առնելով նրանց արժեքը։ Եթե մենք ասում ենք, որ գները կարգավորվում են արժեքի օրենքի հիման վրա, ապա դա դեռ չի նշանակում, որ մեզ մոտ գնագոյացումը կատարվում է տարերայնորեն։

Բացի արժեքի օրենքից, գնագոյացման հարցում նկատի է առնվում նաև սոցիալիզմի մնացած օրենքների պահանջները, մասնավորապես սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի և ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման օրենքի պահանջները։

Զեկուցումից հետո բացվեց մտքերի լայն փոխանակություն, որին մասնակցեցին 20 տնտեսագետ։ Տնտեսական գիտությունների թեկնածու Գ. Սահակյանն իր ելույթում ասում է, որ համաձայն չէ այն ընկերների հետ, որոնք պնդում են, որ արտադրության միջոցները և ապրանք են։ Ընկ. Սահակյանը առաջ է քաշում այն հարցը, որ եթե աշխատանքի արդյունքը սոցիալիզմի պայմաններում վերածվում է ապրանքի, դրա հիմնական հատկանիշը հանդիսանում է ո՛չ թե սեփականության երկու ձևերի առկայությունը, այլև սոցիալիստական արտադրական հարաբերությունների յուրահատուկ բնույթը։ Նա ասում է, որ աշխատավարձը սերտ կերպով կապված է արժեքի օրենքի հետ և նրա մեծությունը որոշելիս պետությունը գիտակցաբեն օգտագործում է արժեքի օրենքի մեխանիզմը։

Տնտեսական գիտությունների թեկնածու Վ. Թումանյանը իր ելույթում խոսելով ապրանքային արտադրության մասին, հայտնում է այն կարծիքը, որ առաջին և երկրորդ ստորաբաժանման աշխատանքի ոչ բոլոր արդյունքներն են, որ վեր են ածվում ապրանքի, այլ դրանցից, թե մեկի և թե մյուսի, միայն մի մասը։

Տնտեսական գիտությունների թեկնածու Գ. Իսահակյանը ասում է, որ որոշ տնտեսագետներ այն կարծիքին են, որ ապրանքային տնտեսության անհրաժեշտությունը սոցիալիզմի ժամանակ պայմանավորված է սեփականության երկու ձևերի գոյությամբ։ Ուրիշ տնտեսագետներ, ինչպես Կրոնրոդը, այն կարծիքին է, որ ապրանքային տնտեսության անհրաժեշտությունը բխում է հասարակական աշխատանքի սոցիալիստական ոչ միատարր լինելուց։ Ինչպես տեսնում ենք, այս հարցերում չկա պարզորոշություն։ Ընկ. Իսահակյանը վերլուծելով այդ երկու դրույթները, եզրակացնում է, որ այդ երկու տեսակետները ոչ միայն իրար հակասող տեսություններ են, այլ միմյանց լրացնող դրույթներ են։

Տնտեսական գիտությունների թեկնածու Մ. Գարագաշն իր ելույթում ասում է, որ եթե մենք ազատվենք ցիտատաբանությունից, կարող ենք ասել, որ սոցիալիստական հասարակարգում ապրանքային արտադրությունը մնում է, սակայն արմատապես փոխվում է նրա ձևը և բովանդակությունը, արժեքի օրենքը գործում է աշխատավարձը որոշելիս, ինչպես նաև արտադրության և սպառման ոլորտներում, և որքան ավելի լավ տիրապետենք այդ հարցին, այնքան մենք օգնած կլինենք գործին

Պրոֆեսոր Հ. Թումանյանը նշում է, որ արժեքի օրենքը և գնագոյացման հարցը տարբեր հարցեր չեն, այլ նույն հարցի տարբեր կողմերն են։ Գների կարգավորիչը ինչպես այլ հասարակարգերում, այնպես էլ սոցիալիստական հասարակարգում հանդիսանում է արժեքի օրենքը։ Նա առարկում է ընկ. Ադոնցին այն հարցում, որ սպառման առարկաների արժեքի գումարը հավասար է նրանց գների գումարին և այդ առթիվ բերում է համապատասխան փաստարկումներ։

Տնտեսական գիտությունների թեկնածու Ս. Հարությունյանը իր ելույթում նշում է, որ սոցիալիզմի ժամանակ աշխատանքի արտադրանքը դառնում է ապրանք շնորհիվ այն բանի, որ հասարակության անդամի մասնակցությունը անմիջական արտադրանքի ստեղծման գործում չափվում է աբստրակտ աշխատանքի միջոցով, որը ներկա պայմաններում չի կարելի արտահայտել այլ կերպ, քան արժեքի և փողի ձևով։

Արտադրության և շրջանառության կարգավորիչը անմիջականորեն պլանաչափ զարգացման օրենքն է։

Տնտեսական գիտությունների թեկնածու Ս. Իսահակյանը, վերլուծելով ապրանքային արտադրության առկայության հարցը, նշում է, որ դրա գոյության գլխավոր պատճառը սոցիալիզմի պայմաններում աշխատանքի սոցիալ-տնտեսական ոչ միատարր լինելն է։



Սոցիալիստական արտադրահարաբերությունների պայմաններում, երբ գոյություն ունի աշխատանքի հնուց եկող բաժանումը և արտադրության տեխնիկայի տարբեր մակարդակներով պայմանավորվող աշխատանքի ոչ միատարրությունը, յուրաքանչյուրն ստանում է ազգային եկամտից բաժին ըստ իր աշխատանքի քանակի և որակի. այդ բաժինը նա կարող է ստանալ միայն դրամով։ Այդ պատճառով անհրաժեշտ է դառնում ապրանքային արտադրությունը սոցիալիզմի ժամանակ։

Ընկ. Ա. Եղիազարյանը իր ելույթում նշում է, որ սոցիալիստական էկոնոմիկայի և նրա օրինաչափությունների վերլուծությունը չի կարելի սահմանափակել միայն սոցիալիստական արտադրական հարաբերությունների վերացական սահմանումներով։ Դրա համար անհրաժեշտ է ուսումնասիրել, թե իրականում ինչպիսի ձևեր են ընդունում սոցիալիստական արտադրական հարաբերությունները։

Վերլուծելով ապրանքի, արժեքի և փողի բովանդակությունը և նրանց դերն ու նշանակությունը ապրանքային պարզ արտադրության ժամանակ, կապիտալիստական և սոցիալիստական հասարակության մեջ, ընկ. Եղիազարյանը ընդգծում է, որ սոցիալիստական հասարակության ղեկավար ուժը — Կոմունիստական պարտիան հաշվի է առնում արժեքի օրենքը որպես պատմական անհրաժեշտություն և օգտագործում է այն սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման գործում։

Տնտեսագիտական գիտությունների թեկնածու ընկ. Ս. Բաղալյանն ասում է, որ արտադրության հիմնական միջոցները սոցիալիստական հասարակության պայմաններում ըստ էության ապրանք լինել չեն կարող, քանի որ այստեղ արդյունքներն արտադրվում են մեկ արտադրողի կողմից և մնում են որպես նրա, այսինքն՝ այդ արտադրողի սեփականությունը։

Տնտեսական գիտությունների թեկնածու Ա. Ջրաղացպանյանն ասաց, որ ինքը համաձայն չէ զեկուցողի մի շարք դրույթների հետ։ Նա գտնում է, որ տրամաբանորեն, ընդունելով սոցիալիստական երկու ձևերը, մենք պետք է հանգենք հասարակական արտադրության առաջին ստորաբաժանման մեջ ապրանքի կատեգորիայի ժխտմանը։

Այսպիսով, նա եզրակացնում է, որ ապրանքային արտադրության և ապրանքափողային հարաբերությունների անհրաժեշտությունը պետք է բացատրել միմիայն սոցիալիզմի ժամանակ աշխատանքի բնույթով, նրա ոչ միատարրությամբ, կոնկրետ և աբստրակտ աշխատանքի առկայությամբ։

Պրոֆ. Զ. Բաշինջաղյանը կանգ է առնում երկու հարցի վրա. ա) ապրանքային արտադրության առանձնահատկությունները ՍՍՌՄ-ում և բ) արտադրության հիմնական միջոցների բնույթը մեր տնտեսության մեջ։

Բացահայտելով առաջին հարցի էությունը, նա գտնում է, որ չի կարելի ապրանքային արտադրության գոյության պատճառները համարել միայն սոցիալիստական սեփականության երկու ձևերի առկայությունը, այդ լրիվ չի լինի։ Այդ բնորոշումը կարող է ծառայել մեզ որպես հիմք, որին պետք է համակցել աշխատանքի ոչ միատարրությունը մեր հասարակության մեջ։ Ուրեմն, երկրորդ պատճառը չի կարելի համահավասար գործոն համարել առաջինի նկատմամբ, այլ վերջինս, այսինքն՝ աշխատանքի ոչ միատարրությունը կարող է ծառայել միայն որպես ստորադաս ֆակտոր, որպես միջանկյալ օղակ։

Այս երկու պատճառների այսպիսի համադրությունը միայն կարող է հիմք ծառայել մեզ ապրանքային արտադրության գոյության անհրաժեշտությունը ցույց տալու համար։

Երկրորդ հարցի վերաբերյալ պրոֆ. Զ. Բաշինջաղյանը գտնում է, որ համոզեցուցիչ չեն այն ընկերների դրույթները, որոնք գտնում են, որ արտադրության միջոցները ապրանք են։

Ընկ. Վ. Աղուզումցյանը իր ելույթն ամբողջությամբ նվիրում է սոցիալիստական հասարակության ապրանքային արտադրության ու նրա գործողության ոլորտի հարցերին։ Ընկ. Վ. Աղուզումցյանը, ինչպես նաև նրանից առաջ ելույթ ունեցողներից մի քանիսը այն կարծիքն են պաշտպանում, որ արտադրության միջոցները ապրանք չեն։

Տնտեսական գիտությունների թեկնածու Վ. Ղազանչյանն իր ելույթում հանգամանորեն վերլուծելով հիմնական ֆոնդերի հետ կապված մի շարք տնտեսական ֆակտորներ, որոնցից հիմնականը նա համարում է ամորտիզացիաների հարցը, նշում է, որ այդ հարցի իր ուսումնասիրությունները ցույց են տվել, որ վերջին հաշվով արտադրության միջոցները կրում են արժեքային բնույթ և ճիշտ է այն կարծիքը, որ դրանք պետք է համարել ապրանք։

Ելույթների առթիվ պատասխան խոսք ասաց ընկ. Մ. Ադոնցը։ Դիսկուսիայի արդյունքները ամփոփեց պրոֆ. Ս. Մարությանը։

Գին 2 ռ. 50 կ.